# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

# Հ. ԱԼԻՇԱՆԻ



Ի յիշատակ Քսանեւհինգամեայ յոբելինի Աբբայութեան եւ Արքեպիսկոպոսութեան Տեառն Տեառն Իգնատիոս Վ.Ի Կիւրեղ ընդհանրական Աբբայի Ուխտիս՝ Նուիրէ

ՏՆՍՁՈՒԹԻՒՆ ՏՊԱՐԱՆԻՍ

# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

# Հ. ԱԼԻՇԱՆԻ







ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1902

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





Ա. Ռ.

# ՆՈՐԸՆԾԱՅ ԱՐՔԱՀԱՅՐ

## ԳԵՐՅԱՐԳՈՅ ՏԷՐ ԻԳՆԱՏԻՈՍ ԿԻՒՐԵՂԵԱՆ

## ՆՈՒԱԳ*

*Ով յերփին երփին ճառագայթից ցընծաւէտ՝*
*Որ զքեզ Հանդրին շուշափառէ 'նդ զոռ Պոնտոս,*
*Այլ ընդ յուշիկ յուսոյն հրանամ լար յաւէտ՝*
*Որով զազգ ազգ սըրտից զօդէ Տէր Քրիստոս.*

*Այն որ երբեմն առ մեծութեան թեկնածուս*
*Ցիշր օրինակ եւ յիշր անուն յարացոյց՝*
*Ըզքոյանունն մանուկն եբարձ յինքեան ուս,*
*Նոյն մեզ ըզքեզ նորափըթիթ Հայր կացոյց.*

*Զ'ի զերուեալ զըգուանս զըրկացըն տոգոր՝*
*Պէսպէս շնորհաց ամբարելով ի քեզ փայլ,*
*Անդրադարձի նշուլես յորդիսըդ յորդոր.*

*Եւ յ'առ այս Տուն ակընկառոյցն արդ աշխարհ՝*
*Որ հըմայէ Պետրի շաւիղս այլեւայլ,*
*Դու՝ զՆախահօրդ եւ զՓրկչին ցոյց հետ խոնարհ.*

Ի Ս. Ղազար 6. Օղոստոս 1876 — Հ. Ղ. Մ. ԱԼԻՇԱՆ

* Գտանք իր անտիպ բանաստեղծութեանց մէջ:

*Ո՜վ դու հանուրց յաղթական երգահանից դարուց նոր·*
*Բիւրք բիւրուց գան ամ յամէ, այլ ո՜րքան ծով մարդկութեան*
*Վերընթացի եւ գիջի, եւ ի խորան անդ ազգաց*
*Համօրէն ոչ գտցեն միտք մի հաւասարք քոյ մըտաց.*

Լորտ Պայրըն

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

ՓՈՔՐԻԿ հատորիս առաջին մասին մէջ կը ներկայացընենք Հ. Ալիշանի կենսագրութիւնը պարզ պատմական ոճով. երկրորդին մէջ ակնարկ մը կու տանք իր գրական գործունէութեան։ Կը փութանք ըսելու որ գործս՝ հոյակապ հանճարին ծովածաւալ վաստակոց ուսումնասիրութիւնը չէ. այլ ժողովրդական գրութիւն մը Նահապետին սիրելի Հայկակներուն եւ հայրենասէր հասարակութեան համար պատրաստուած։

Հ. Ս. ԵՐԵՄ.





«Ծեր Նահապետիդ՝ տո՛ւր կակուղ հողիկ
Որ զքեզ պինդ֊սիրեց, հայո՛ց աշխարհիկ»։

# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

# Հ. Ղ. Մ. ԱԼԻՇԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ

---

## ԱՇԱԿԵՐՏՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՔԱՀԱՆԱՅՈՒԹԻՒՆԸ



*Հ*ԱՅՐ ԱԼԻՇԱՆԻ *մանկական անունն է Քերովբէ. ծներ է ի Կոստանդնուպոլիս 1820ի Յուլիս 18ին։ Հօրը անունն է Պետրոս**, *իսկ մօրը՝ Թագուհի։ Ծնողաց ձեռքը եղած տան, անտարակոյս ապագային մէջ տեսած մեծ զարգացումին համեմատ՝ մանկութեան հասակին մէջ ունեցած է տաղանդին յարակից նշանաւոր դէպքեր, հետաքրքրական վարք մը, որ դժբախտաբար մեզ համար մութ են։*

*Բայց Հանճարի մը կեանքը և կենցաղը, ոչ այնքան պատանեկան անորոշ վիճակին մէջ գտնուած տանն ուշա-*

* Իր անձնական օրագրութեան մէջ կը յիշէ 1827. դեկտ. 27ին իր Հօր՝ Եւդոկիա աքսորուիլը. ուսկից կը վերադառնայ ի Կ. Պոլիս 7 յունվար 1850։

գրաւ կ'ըլլայ, որքան երբ նա կը սկսի տաղանդը մշակելու տաղարեղին մէջ ոտնակոխել։ Որով մեզ համար, ոչ մանուկն Քերոբէ, այլ Մխիթարեան ուսանողն Ալիշան քննութեան և պատմութեան նիւթ կ'ըլլայ։ Մենք կը խոստովանինք, որ Հայր Ալիշանի ոչ արշալոյսին, այլ վերջալոյսին ժամանակակից ըլլալով, կարող չենք իր պատանեկութեան որոշ պատմութիւնն գրել։ Այդ կարող էր կատարել իր ժամանակակից Հայրերէն մին, մանաւանդ անոր մանկութեան դաստիարակը. սակայն դժբաղդաբար կատարուած չէ։ Մենք բաղդատելով իր դաստիարակին Վ. Հ. Անդրէաս Ծովիկեանի վարքը* իրեն մեզի ծանօթ կենցաղավարութեան հետ, զգալի նմանութիւն կը գտնենք իր դաստիարակին ընդօրինակելի վարքին։

Հ. Ալիշան իր ինքնագիր Օրագրութիւնն ունի, որ սկսած է ուսանողական օրէն, և զայն յառաջ վարած է մինչև իր այդ ընթացքին լրումն։ փոքրիկ տետրակ մըն է, ուր առանց դատողութեան կամ խորհրդածութեան արձանագրուած են ամէնօրեայ դէպքերը՝ երկու կամ երեք բառերով. գրուած են իր վանք գալու, ուսանողութեան, նորընծայութեան, վարժարանցիութեան և քահանայութեան թուականները, դաստիարակին և ուսուցիչներուն անունները, սկսած և աւարտած ուսմանց անունները,

* Հմմտ. Ս. Աւգուստինոս Խոստովանութիւնք – Թարգմ. Հ. Անդրէաս Վ. Ծովիկեան, Մ. Մխիթարեան. Վենետիկ, Ս. Ղազար 1895։ Այս գրքի յառաջաբանը գրեր է Հ. Ալիշան. ուր նկարագրած է իր դաստիարակի կենցաղը, և իր հոգևոր որդւոյն Հ. Ս. Պարոնեանի մարտիրոսութիւնը։ Ամէնն ի միասին բովանդակուած են 20 միջակիր էջերու մէջ։



ՊԵՏՐՈՍ ՄԱՐԳԱՐ ԱԼԻՇԱՆ · 1775 + 1834 ·



PIERRE MARCAR ALISHAN NUMISMATISTE-ANTIQUAIRE

ԴՐԱՄԱԳԷՏ ՀՆԱՀԱՒԱՔ ·

և Թուականները, վանքին մէջ եկող գացող միաբաններու և հիւրերու անունները. միով բանիւ, այդ օրագրութիւնը իր ուսանողական կենսագրութեան համար, կարելի է համարել բոլորովին չոր ու ցամաք կենսագրական կմախ-քի բեկորներ. վասն զի իր ընթացքին կամ իր մասին, համեստութենէ շարժեալ, մինչ մանչ միայլ արժանի գա-տեր է։ Այդ Օրագրութիւնը մեզի առաջնորդ առնելով, կը սկսինք իր ուսանողութեան պատմութիւնը։

Պատանին Քերորէ իր Սերորէ եղբօր և ուրիշ բազ-մաթիւ ընկերներու* հետ, 1832 Մայիս 9ին կ. Պոլսէն կ'ուղեւորի, առաջնորդ ունենալով միաբանութեանս բազ-մարդիւն և տաղանդաւոր անդամ Հ. Մկրտիչ Վ. Աւ-գերեանը։ Վանք կը հասնին նոյն տարուան Յուլիս 5ին։ Պոլսէն մինչև Զանաք Գալէսի չորս օր կը դնեն։ Յունիս 5ին, վենետիկոյ ծովեզրը Մալամոքի հանդէպ, իրենց նաւը խարիսխ կը նետէ. երկու օր յետոյ կը հասնին վանացս

* Իր հետ վանք եկող Ընկերներն են.

1. Յովհ. որդի Մկրտիչ հաճի Միքայէլեանց Հիւրմիւզեան։
2. Պօղոս որդի Խախամեան Բարսեղի։
3. Վիչէն որդի Յովհաննէսի Խափանճի Օղլուի։
4. Յակոբ որդի Խումաշճի Յարութիւնի։
5. Աղնիւ կամ Աղնաւոր որդի Սահաթճի քառա Անտոնի։
6. Մկրտիչ որդի Անտոնի քառա Անտոնեան։
7. Յովսէփ որդի Յակոբի Ճիշմանեան։ Սա ուսումն առնելէն յետոյ, առանց քահանայանալու կը մեկնի վանքէն։ Հայ վիպասան հանճար-ներու մէջ ծանօթ է Ծերենց կեղծանուամբ։
8. Անտոն որդի Գրիգորի Անկերեան. (Հ. Տիմոթէոս)։
9. Յարութիւն Լազեան որդի Պէտրոս Յուսէփի. (Հ. Ղուկաս)։
10. Սերովբէ Ալիշանեան, եղբայր Հ. Ալիշանի։

մօտակայ Լազարէթ անուամբ կղզին. միեւնոյն օրը կը վախճանի Հ. Ալիշանի մայրը Թագուհի։ Ըստ քաղքին առողջապահիկ սովորութեան, որպէս զի արեւելքէն եկող օտարականները տարափոխիկ կամ համաճարակ հիւանդութիւն մը չի բերեն, այն կղզւոյն մէջ քառասուն օր կը մնային բժիշկներու քննութեան ենթարկուելով։ Ուստի, ինչպէս շատ մը նախկին անգամներ, նոյնպէս Հ. Ալիշան այդ օրինաւոր սովորութեան ենթարկուելով, ամսոյ մը չափ հոն կը մնայ։ Ցետոյ կը մտնէ Ս. Ղազար իր հոգւոյն եւ գիտութեան օրրանը։ Վանացս ամէնէն տաղանդաւոր անդամներէն ոմանք, ընդհանրապէս գիտութեամբ կամ լաւ եւ, չափահաս վիճակի մէջ որոշած են խաղաղ թողուլ աշխարհք եւ քաշուեր են ի կղզիս, նուիրուելով միանձնական կենաց խոստմամբ հոգեկան եւ գրական երջանկութեան. մարգարէական ոգւով չենք կարող թափանցել երկոտասանամեայ Քերոբէ մանկան սիրտը՝ իմանալու, թէ ինչ ներշնչմամբ թողուցեր է իր ծնողքը, սիրելի հարազատները եւ իր հայրենիքը. գուցէ ոչ մանկական միամտութեամբ, այլ երկնազգեցիկ, լուրջ գաղափարով որոշեր է իր այդ վիճակը. այս մասին եւս ոչ մի տեղեկութիւն չունինք։

Պատանին Ալիշան հազիւ թէ վանք կը հասնի, կը յանձնուի դաստիարակ Հ. Անդրէաս Ծովիկեանի. սա մի ընդօրինակելի աստուածաշնորհ Հայր էր, ձուլուած Մխիթար Աբբահօր ձեռնասուն աշակերտաց շնորհազարդ կաղապարով. ոչ հանճար մ'էր եւ ոչ գիտութեամբ եւ ուսմամբ մշակուած միտք մը, բայց ունէր հոգեւոր մշակ

և որոփ ատաղձորդ մ՚ըլլալու ամէնէն կարեւոր առաւելութիւնները, և այդքանը իր պաշտօնին համար բաւական էր։ Ալիշանի գծագրութիւններէն և իր պատանեկութեան ժամանակակից անձինք իրեն համար աւանդած և պատմած են, որ իր ուսանողական ընթացից առաջին օրէն ցոյց տուած է հանդարտ, երկիւղած, զգաստ, պարկեշտ, և այլ բազմաթիւ առաքինութեամբ պճնուած բարք մը. ընդ հակառակն իր եղբայրն Սերոբէ, քան զինքն թէեւ աւելի հանճարեղ, բայց խիստ տաք բնաւորութեան տէր լինելով, կրօնաւորական վիճակը իրեն անյարմար կը գտնէ, որով մի քանի տարի վերջ, իր ծնողաց կը վերադառնայ*։

Հ. Ալիշանի ուսանողութեան առեն, Նորընծայարանի (ուսումնարան) ուսմանց ծրագիրը շատ անձուկ էր և խիստ տարրական. այսու հանդերձ, այդ անբաւական ծրագիրը հանճարներ ստեղծեր է։

Նոյն առեն վանացս Նորընծայարանի դասատուն էր Հ. Պետրոս Մինասեան, որուն դասաւանդութեանց հետեւելով, կ՚ուսանի իր վիճակին նախնական գիտութիւնները։ Ըստ միաբանութեանս սովորութեան, պատանին Ալիշան կրօնաւորական զգեստ հագնելու համար, ամսէ մը աւելի կը սպասէ. և Օգոստոս 12ին կը կատարէ

* Հ. Ալիշան իր այս եղբայրը շատ կը սիրէր. անոր Ամերիկա գնալուն վրայ երկու յուզիչ բանաստեղծութիւններ գրած է զոր տես Նուագք «Մաղթունի» էջ 34 և 39։ Հ. Ալիշան անընդհատ նամակ կը գրէր իր այս եղբօր, որ հնագիտութեան շատ հմուտ ըլլալով՝ իրեն հեղինակած հնախօսական գործերուն շատ օգտակար կ՚ըլլար։

զգեստաւորութիւնը *։ 1833 Յուլիս 13ին իր դասին ուսուցիչը կը փոխուի․ նոյն առեններ վանքին մէջ դասատուի պակասութիւն ըլլալով, ուխտիս աւագ աշակերտներէն Ե․ Գաբրիէլ Այվազեան, դեռ քահանայ չի ձեռնադրուած, Նորընծայարանի աշակերտաց վարժապետութիւն կ'ընէ․ Ալիշան այդ երիտասարդ կորովամիտ ուսուցիչէն կը սորվի հայ քերականութիւն, տուրք գրոց պատմութիւն, բնական աշխարհագրութիւն։ Դեռահասակ վարժապետը միայն հինգ ամիս դասատուութիւն կ'ընէ․ յետոյ իրեն տեղ կը փոխանակէ Հ․ Մկրտիչ Ջէմպէրէքճեան (1833, դեկտ. 9)։ Սա Ալիշանի դասին չորս տարի ուսուցչութիւն կ'ընէ, և 1847 Սեպտեմբ. 23ին կ'երթայ Փատուա Մուրատեան վարժարանի դասատուի պաշտօնով։ Հ. Ջէնպէրէքճեան չորս տարուան մէջ կը սորվեցընէ հայ. խառ. լատ. գաղ. քերականութիւն, Աստուածաշունչի, Հայոց և ընդհանուր ազգաց պատմութիւն, աշխարհագրութիւն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն, բանաստեղծութիւն։ Նախորդ ուսուցիչը Հ. Գաբրիէլ Այվազեան 1837 Հոկտ. 23ին դարձեալ Ալիշանի դասին դասատու կ'ըլլայ։

Մանկական հասակին մէջ Հ․ Ալիշան կը կորսնցընէ նաև իր հայրը Պետրոս. մօր և հօր կորուստը ամէն մի պատանիի համար դիւրին է գուշակել, թէ որքան աղէ-

* Նորեկներու Միաբանութեան զգեստը հագնելով չէին առեր, նախ անոնց վարքը կը դիտէին, և երբ կրօնքի մէջ ընդունուելու արժանի կը գտնուէին, այն ատեն միայն կրօնական զգեստ կու տան, իսկ հակառակ պարագային՝ ետ կը դարձընեն։

խարշ է և որքան ողբական, սակայն Հ. Ալիշան իր Օրագրութեան մէջ այդ երկու մեծ կորուստները չէ արձանագրած տխրունի բառերով կամ բացատրութեամբ այլ լոկ խաչանշով մը։

1836 ապրիլ 20ին կը կատարէ իր փիլոնատուութիւնը*։

Այդ միեւնոյն օրը պատանին Ալիշան կ'առնու Ղեւոնդ անունը, որուն անուանակից սուրբին ջանացեր է նմանելու ոչ միայն անուամբ, այլ և սրտով և հոգւով։ Ալիշան Նորընծայարանի մէջ հինգ տարի կը մնայ, յետոյ իր Աբրահամ, Անտոն, Յարութիւն, Յակոբ անուամբ

* Աս մի կրօնական հանդէս է։ Մխիթարեան ուսանողն, երբ բաւական հասակն առած է, զոր օրինակ 16 կամ 18 տարին բոլորած, և Վանքին մէջ գոնէ մէկ կամ երկու տարի կեցած, ու բարի փորձ մը ցոյց տուած, այն ատեն իր վերակացուին բարի վկայութեամբ. վարչական ժողովքը կ'որոշէ անոր միաբանութեան զգեստ տալը, այսինքն՝ վեղարաւոր փիլոնի զգեստաւորութեան իրաւունքը։ Մխիթարեան աշկերտի մը համար, այդ աստիճանը շատ մխիթարական է, և ունի մանկական վերին աստիճանի ուրախութիւն մը. վասն զի նոյն ատեն, արտաքին տարազով սովորական քահանաներէն բնաւ չի տարբերիր. իր մկրտութեան անունը կը փոխուի և կ'առնու Հայ. Եկեղեցւոյ տօնելի սուրբերէն միոյն անունը, ըստ իր յօժար կամաց։ Ուսանող պատանին այդ աստիճանը առնելէն չորս օր առաջ, կրթութեան կը մտնէ, և նոյն օրերուն մէջ, մի միայն հոգեւորով կը զբաղի. կը մտածէ իր ընտրելիք վիճակին վրայ։ Փիլոնաւորութիւնը Եկեղեցական յատուկ արարողութեամբ կը կատարուի. նոյն օրը վանքին Վեհ. Աբբան ինք կը պատարագէ, կը հաղորդէ ուսանողը, և յետ պատարագին, եկեղեցւոյ դասին մէջ կը բազմի, ուսանողը կու գայ կը դաւանի հաւատոյ դաւանանքը, և հասարակաց ներկայութեան՝ փիլոնը վրան կ'առնու, կ'երգըցուին յատուկ շարականներ. ամենէն վերջը՝ Աբբան արարողութեան ատեն, փիլոնաւորին խրատ խօսելէն յետոյ, կը փոխէ ուսանողին անունը։

ընկերներովը՝ կ'անցնի վանքին բարձրագոյն կրթարանը, ուր հասակաւոր աշակերտները քահանայութեան կը պատրաստուին։ Հոս կրկին վերակացու, դարձեալ նոյն Հ. Ա. Ծովիկեանը կ'ունենայ։ 1838 յունուար 28ին կը կատարէ իր վիճակին ամէնէն աւելի սրտաշարժ կրօնական մեծ հանդէսը. Ուխտադրութիւնը*։

Հ. Ալիշան, ինչպէս իր յոբելեանի յայտարարութեան մէջ արդէն յիշատակած է, ուխտադրութեան հանդէսը իր անձին համար աւելի սիրելի գտած է, քան թէ քահանայական ձեռնադրութիւնը. միանձնասէր հոգին կը մտածէր, որ նոյն հոգեկան դաշնադրութեամբ, իր կեանքին վրայ կը կատարուի ամենէն մեծ կերպարանափոխութիւնը. աշխարհքի խայտառ լքում, և սրտին տենչալի ու փարելի անապատական խաղաղաւէտ կենաց գիւտն, որ զինքը պիտի հասցնէր դրական ու հոգեկան փառաց գագաթնակէտը...

Առաջին տարիները նոյն բարձրագոյն կրթարանին մէջ

* Եկեղեցական արարողութիւնը համանման է վերոյիշեալ փիլոնաւորութեան հանդէսին, երբ յետ փիլոնաւորութեան կ'անցնի երկու տարի, Մխիթարեան քահանայացու աշակերտը, ըստ իր ազատ կամաց, երկար ատեն մտածելէն յետոյ փափաք կը յայտնէ միաբանութեան անդամ ըլլալու, որ կը կատարուի հասարակաց քուէի ընտրութեամբ և նոյն հասարակութեան առջև կրօնաւոր ըլլալու և Միաբանութեան գլխոյն մշտնջենաւորապէս հաւատարիմ մնալու խոստումն տալով։ Ուխտադրողը, հանդէսէն առաջ, մի շաբաթ կրթութեան կը մտնէ, լաւ կը խորհի իր վիճակին խիստ մեծ պատասխանատուութիւնը։ Ուսանողը ուխտադրութենէն յետոյ այլ ևս Մխիթարեան կրօնաւոր մ'է, և քահանաներէն կ'որոշուի միայն պատարագ չի մատուցանելով։

Ալիշան և իւր ընկերներն կ՚ուսանին թուաբանութիւն, երկրաչափութիւն, բնազանցութիւն, բարոյական փիլիսոփայութիւն ; տոմարագիտութիւն, տաճկերէն, գաղղիերէն լեզուներն, բնագիտութիւն, և աստուածաբանութիւն. 1840 Յունիս 7ին իր ընկերներով քահանայ կը ձեռնադրուի, և ամբողջ ուսումնական ընթացքը աւարտելու համար, տակաւին վարժարանի մէջ մէկ տարիէն աւելի կը մնայ։

Հ. Ալիշան իր կրթական միճակին մէջ, ինչպէս աւանդած են դասընկերները, ոչ միայն մեծ ուսումնասէր մը այլ և մեծ հասարակասէր մ՚եղած է։ Վանացս փոքր և աւագ ուսումնարաններուն մէջ գիրքին է գուշակելն որ բնաւ ծառաներ չկան, որով կրթարաններու ներքին նիւթական ծառայութիւնք՝ աշակերտները կը հոգան։ Ալիշան այդ ծառայութեանց մէջ ալ տիպար հոգի մը ցոյց տուած է. իրեն յանձնուած պաշտօնները կատարելէն յետոյ, եռանդով ընկերներուն օգնութեան կը հասնի. վանքին եկեղեցւոյն մէջ, որ աւագ աշակերտաց խնամոց յանձնուած է, նա իր աշակերտութեան ատեն, արտաքոյ կարգի աշխուժով ծառայեր է Աստուծոյ. կ՚ըսուի թէ խորանները զարդարելու համար, անճարակ և անկարող ըլլալուն համար, ինքը վեր վար վազելով միւս ճարտար ընկերներուն զարդի պէտք եղած առարկաները արագութեամբ կը հասցընէր։

Յիշեալ երկու ուսումնարաններու մէջ ինչպէս տեսանք, Հ. Ալիշան ապագային հսկայ հեղինակ մը ըլլալու համար, համապատասխան գիտութեանց և ուսմանց դասեր առած

*չէ, սակայն հոն դրած է իր շողշողուն ապագային հիմը. հոն ամրացուցած է իր հոգւոյն անսասանելի պարիսպները, որոնց վրայ մինչեւ իր նահապետական կենաց խորտակումը, մտքին հոյակապ շէնքը կառուցած է, հանճարի, տաղանդի շէնք մ'է այն. հայ գրականութեան փառապանծ մեծ յիշատակարանը։*

# Հ. ԱԼԻՇԱՆ

## ՎԱՐԺԱՊԵՏ ԵՒ ԴԱՍՏԻԱՐԱԿ

Յետ քահանայութեան, ըստ վանաց սովորութեան, նորընծայ քահանան՝ վարժարանի մէջ հազիւ մէկ տարի կը մնայ, յետոյ իբրեւ միաբանութեան սովորական քահանայ միաբան մը, կը մնէ հասարակութեան մէջ, կը կատարէ իրեն յանձնուած պաշտօնը և ազատ ժամերը կը նուիրէ զուտ գրականութեան։ Այս ժամանակէն կը սկսի Մխիթարեան նոր քահանայէն մատենագրական ասպարէզի մէջ մտնելը։ Հ. Ալիշանի պէս հանճարեղ մտքի մը համար, այդ վիճակը վերին աստիճանի գգուելի էր. նա հասաւ այդ բաղդաւոր օրուան, զոր ոչ վանքին, այլ Ռափայէլեան վարժարանի մէջ կը վայելէ։

Վարժարանէն հազիւ թէ կ՚ելնէ, հասարակութեան մէջ տասնց մի ամիս մնալու, 1841 Օգոստոս 23ին յիշեալ ազգային ուսումնարանին ուսուցիչ կ՚ըլլայ. բայց այդ պաշտօնը իր ցանկալի գրական պարապմանց բնաւ խոչընդոտ չըլլար. դեռ այդ վիճակին չհասած, նա արդէն սկսած էր գրել բանաստեղծութիւններ, հոն ևս կը շարունակէ ի գիր առնուլ վաղվաղուն երեւակայութեան ծընունդ գեղեցիկ քերթուածները։

իր ուսուցչութեան օրով՝ նոյն վարժարանի տեսչութիւնը կը վարէր մեծանուն դաստիարակ Հ. Ռափայէլ Թրեանց*, սա իր պաշտօնին ձեռնհաս և բոլորովին վարժ ըլլալով, Հ. Ալիշանի վրայ ուսուցչութիւնը այնքան չէր ծանրանար. և գուցէ չենք սխալիր ըսելու, որ Հ. Ռափայէլ եւրոպական լեզուաց լաւ տեղեակ ըլլալով, և հին ու նոր մատենագրութեանց մասին խոր հմտութիւն ունենալով, երախտապարտ Հ. Ալիշանի ուսումնական զարգացման հաւանական է որ բաւական օգտակար եղած է։

Հայր Ալիշան արդէն իր այդ աւագ պաշտօնակցին մահուան աւթիւ խօսած** դամբանականովը, յայտնած է անոր ինչ աստիճանի բարձր կրթութեան տէր ըլլալն։

1846 Յուլիս 15ին միաբանութեանս ընդհանրական Աբբան կը ծանուցանէ Հ. Ալիշանի, որ առ ժամն պէտք էր վարժարանի տեսուչ Հայրն Ռափայէլ, իր հետ Հռոմ՝

* 1836ին միաբանութեանս վարչական ժողովի հրամանին համեմատ, Հ. Յակոբոս Ճէլալեան և Հ. Սարգիս Թէոդորեան՝ Ռափայէլեան վարժարանը բանալու համար, Վենետիկոյ մէջ կը փնտռեն վարժարանի յարմար պալատ մը՝ վերջապէս կը գտնեն Փէզարոյի պալատը, որուն իբրև տարեկան վարձ կու տան 1000 Ֆիօրին. կը պատրաստեն քանի տղոց համար սենեակներ։ Ուխտիս ժամանակաւն Գեր. Աբբան Սուքիաս Սոմալ Պոլիս Հ. Անանիա Ճէլալեանի նամակ գրելով, Վարժարանի համար Եղբայր Սահիպանոսի ձեռքով տասնըհինգ աշակերտ բերել կուտայ։ Գեր. Աբբան Նորահաստատ Վարժարանին տեսուչ կը կարգէ զՀ. Սարգիս Թէոդորեան, որ իրեն օգնական և աշակերտաց իբրև ուսուցիչ և դաստիարակ կ'ընտրէ զՀ. Ռափայէլ Թրեանց. երկրորդական օգնական զՀ. Եսայի Մզրաքեան։ Վարժարանը կը բացուի 1836 մայիս 25ին։ Հ. Ս. Թէոդորեանէն վերջը տեսուչ կ'ըլլայ Հ. Ռ. Թրեանց 1842, Յուլիս 6ին։

** Հմմ. Բազմավէպ 1859 էջ 81։

տանէր, որով կը հարցընէ իրեն, թէ վարժարանին ուսուցչապետի պաշտօնը կրնայ յանձն առնուլ։ Նա իբրև հլու հպատակ իր վեհին, սիրով յանձնառու կ'ըլլայ, բայց կը խոստովանի, որ Փիլիփայի գլխութիւնը ստանձնելու կարողութիւն չունի և եթէ այդ գլխութեան ստանձնութիւնն ալ յանձն առնէ, պէտք է զայն սորվելու համար նեղէ իր փափուկ կազմուածքը։ Վարչական ժողովքը կ'որոշէ որ այդ գործը ստանձնէ Հ. Աբրահամ Ճարեան. իսկ փոքր աշակերտաց դասերն Հ. Մ. Բաժունի վարդապետին հոգայ. Հ. Ալիշանին ալ կը յանձնէ աւագ դասարանի դասաւանդութիւնը և այն ամէն դասերն զոր տեսուչ Հ. Ռափայէլն կ'աւանդէր։ Այս պաշտօնին հետ ինքը միանգամայն միաբանութեան խնամակալաց ժողովի ատենադպրի պաշտօնն կը վարէր և ատենադպրութիւնը սկսած է վերյիշեալ թուականէն։ Հ. Ռափայէլի վարժարանէն բացակայութեան, փոխ–Տեսուչ կը դրուի Հ. Սամուէլ, որ շատ քաղցր բնաւորութեան տէր ըլլալով, տղոց դաստիարակութեան համար, այդ ատենուան քաղցրութիւնը ըստ Հ. Ալիշանի օգտակար չերևիր, և այս դիտողութիւնը Հ. Ալիշան ի պարտուց ըրած է իր վեհին՝ երբ սա սկսեր է վարժարանի ընթացից մասին լուլի տեղեկութիւն ուզել։ Վեց ամիս վերջը, Հ. Ալիշան, դարձեալ իր նախորդ տեսուչը իր քով կը գտնէ, որով ինքն ալ հաստատութեան ծանր հոգերէն մի քիչ կը թեթևնայ. և ժամանակական էր այս փոփոխութիւնը, վասն զի Հ. Ռափայէլի բացակայութեան, Հ. Ալիշանի գործերը շատ ծանրանալով, սկսած էր ծիւրիլ և տկարանալ։

Հ. Ալիշանի հասակակից (Վ. Հ. Թաշեանի) օգնականին համար շատ անգամ խնդիր եղած էր վանք կանչել կամ ուրիշ կարեւոր պաշտօնի մը վրայ դնել. սակայն Հ. Ալիշան գնահատելով անոր անձնանուէր աշխատութիւնը, միշտ գլխադրեր է և ջանացեր է իր քովէն չհեռացընելու զինքը։ 1847ին վանքի ուսանողաց դաստառ կը պակսի, անհրաժեշտ կ'ըլլայ որ Հ. Մ. Թաշեանի այդ պաշտօնին սահմանուի. և երբ կ'առարկուի որ Ռափ. վարժարանը անոր պէտք ունի. Հ. Գ. Այվազովսկի կը պատասխանէ. Նախ վանքը պէտք է մտածել, յետոյ վարժարանը։ Վերջապէս Հ. Թաշեանի կը մնայ դարձեալ իր նոյն պաշտօնին մէջ. և վանքին աշակերտաց համար ուրիշ քահանայ ուսուցիչ մը կը դնեն։

Հ. Ալիշանի պաշտօնը երթալով կը ծանրանայ. նա ինչպէս տեսանք իր գալար հասակէն սկսած է դաստուութեան պաշտօնը, որ Հ. Ռափայէլի բացակայութեան, աւելի ծանր է իր առողջութեան. բայց ի այդ պաշտօնէն, նա միևնոյն ատեն «Բազմավէպ»ի անդադար յօդուածներ հասցընելու պարտք ունէր. և զոր գովելի եռանդով կը կատարէր. ասոնցմէ զատ, միևնոյն ատենները վանացս խնամակալաց ժողովը* գործօն վիճակի մէջ ըլ-

* Նոյն ատենուան խնամակալաց ժողովը բազմաթիւ անձերէ կազմուած էր. Նախագահն էր Ուխտիս Գեր. Աբբան. գլխաւոր անդամներն էին վարչական ժողովի վեց առաջականները. ասոնցմէ զատ, երիտասարդ քահանայներէն ամենէն գիտունները ու գործունեաները թուով հինգ վեց հոգի՝ նոյն ժողովին կարեւոր մասն կը կազմէին։ Այսպիսի անդամներէ կազմակերպեալ ժողովը շատ պատկառելի էր։ Ասոր պարտքն էր Մխիթարեան ամէն վարժարաններու և աշակերտաց ուսմանց ծրագիրն

լալով, Հ. Ալիշան իբրեւ ատենադպիր, շատ ժամանակ կը սպառէր. այսչափը բաւական չէր. 1847ի Հոկտեմբեր 24ին, խնդիր կ'ըլլայ զինքը վանացս վարչական ժողովի անդամ՝ (առաջիկայ) կարգելու. Հ. Ալիշանի պէս երկիւղած արեղայի մը համար, այդ պաշտօնը այնքան ախորժելի չէր, վասն զի նա կ'ըմբռնէր անոր մեծ պատասխանատուութիւնը. Նա առանց այդ պաշտօնի գերապանծաթենէն յափշտակուելու, ամէն ճիգ կը թափէ որ օձիքը ազատէ. անդամութեան մէջ փառք չէր փնտռեր. իր փառքը գրչին ծայրն էր...

Յիշեալ թուականին, Գիւտ խաչի օրը, վեհ. Աբբան վանական ժողով կը գումարէ. 15 ժողովականք անակընկալ կը հաւաքին. Գեր. Նախագահն ժողովականաց կ'առաջարկէ չորս արժանաւոր քահանաներ, որոնցմէ երկու հոգի պէտք էր որ վարչական ժողովի անդամ՝ ընտրուէին. Քուէարկութիւն կատարուելով, երկու ընտրեալներէն մին կ'ըլլայ Հ. Ալիշան, և կը մնայ վեց առաջիկայից կարգին մէջ. Յետ այս ընտրութեան, թէ և ազատիլը շատ դժուար էր, բայց բանաստեղծ Հ. Ալիշան, դիւտեր կը գտնէ. ժողովքի մէջ խօսք կ'ըլլայ իրեն երիտասարդութեան համար, և թէ առաջիկայ ըլլալու համար չափա-

քննելու և գիտելու թէ ինչպէս կ'աւանդուէին իւրաքանչիւր ուսմունք: Ժողովքը ունէր երկու ատենադպիր. ասոնք ժողովքի կարգադրութիւնքը և գիտողութիւնքը կը հաղորդէին ուր որ անկ էր: Այս ժողովքին հետ վարժարաններու տեսուչներն մեծ յարաբերութիւն ունէին. Խնամակալաց ժողովն էր անոնց դատաւորը. և այս ժողովականաց որոշողութեամբ կը հաստատուէր կամ կը գոցուէր վարժարան մը:

հաս տարիք մը չունէր. հակառակ այլոց և նոյն իսկ Գևր. Արքայի հաստատութեան, ինքը կը պնդէ որ իրօք տակաւին 30 տարեկան չի կար*։ Այս պատճառաւ, նոյն օրը առաջիկայից ժողովքներէ վերջը, դարձեալ ընդհանուր գումարում՝ կ'ըլլայ, բայց ժողովքէն առաջ Հ. Ալիշան տար անոր կ'աղաչէ որ այդ ծանր պատասխանատուութենէն զինքը ազատեն. և իր բնատուր բանաստեղծութեամբ ու համեստութեամբ կը համարձակի վեհին ըսելու, որ «Տարիքս անցուցիք, գէթ մնացս շնորհքն ալ...». գլխաւորապէս իր հրաժարականի պատճառը կը յայտնէ ատաղ պաշտօնակցին Հ. Ռ. Թրեանցի։ Միաբանութեանս սահմանադրութիւնը կը քննուի, թէ արդեօք առաջիկայ մը ընտրելու համար սահմանեալ յատուկ տարիք մը կա՞յ թէ ոչ։ Հ. Ալիշանի համեստութեան համար փառնգաւոր էր այս հետախուզութիւնը։ կը քննուի Սահմանադրութիւնը, չի կար որոշեալ տարիքի ո և է խնդիր, միայն կը պատուիրէ որ ընտրելի առաջիկայ մը «լրացեալ հասակ» մը պէտք է ունենայ։ Եւ ըստ սահմանադրութեան, Հ. Ալիշան անչափահաս չէր համարուեր. և որպէս զի իր առաջիկայութիւնը բնաւ խնդիր չի վերցընէ, դարձեալ քուէարկութիւն կը կատարուի։ Հ. Ալիշան ակումբէն դուրս ելած՝ կ'աղօթէ որ չընտրուի։ Իր

* Ըստ միաբանութեանս սովորութեան, վարչական ժողովի վեց անդամք ընդհանրապէս վանքին ծերագոյն կամ հասակաւոր անդամներէն կ'ընտրուին. յարգուած է այս սովորութիւնը այն պատճառաւ, որ տարեց միաբանները աւելի փորձառու լինելով, կարող են լրջօրէն աջակցել գլխաւոր Վեհ. Վարչին։

այդ ընդդիմութեան ամենէն մեծ պատճառն այն էր, որ իրմէ առաջ ընտրութեան արժանաւոր ծերեր կային։ Հ. Ռ. Թրեանց քուէարկութեան ժամանակ, Հ. Ալիշանի հրամարականի ամէն պատճառները կը յայտնէ. ժողովքը յարգելով անոր պատճառանքն, երկրորդ անգամ զայն չընտրեր. որով վեհ. Նախագահն կ՚խնայընէ Հ. Ալիշանին, որ իր հրամարականը ընդունուեր է. Նա խակայն ուրախութեամբ ժողովականաց առջեւ կը համբուրէ իր վեհին աջը և շնորհակալութիւնները կը յայտնէ։ Բայց մի քանի տարի վերջ (1851 Յուլիս 25) կը ստիպուի վերջապէս առաջիկայ ըլլալ. և արդէն մինչև ցկեանս այդ պաշտօնը (ի բաց առեալ երբ վենետիկէն ուրիշ պաշտօնով բացակայ էր) խղճի մտօք կը կատարէ։

Հ. Ալիշան իր ընդունակութեան և պատկառելի բնաւորութեան համար, երիտասարդ քահանայից մէջ յետ Հ. Գ. Այվազովսկոյ՝ իբրև հասարակութեան գրական մեծ գործիչ, ինքն կ՚երեւի։ Ըստ միաբանութեանս որոշմութեան, երբ 1848 մայիս 30ին Ռափայէլեան վարժարանի տեսուչն Հ. Ռ. Թրեանց փոքրիկ աշակերտաց վերակացու կ՚ըլլայ, այն տանն իր օգնականն Հ. Ալիշան ուսուցչութեան պաշտօնէն տեսչութեան կը բարձրանայ։

Ուրեմն երիտասարդ Հ. Ալիշան վարդապետն 28 տարեկան հասակին մէջ կ՚արժանանայ ծերունիի մը կամ չափահաս փորձ ու խոհուն անձի մը արժանավայել պատասխանատու մեծ պաշտօնին։ Ս. Ղազարու վարչական ժողովը անշուշտ նոյն 28 տարեկան երիտասարդ քահանային վրայ տեսեր է արժանիք մը, տեսեր է տարօրի-

*նակ յարմարութիւն մը, որ առանց վարանելու Ռուսիո այն ամենէն առաջնակարգ, և ամենէն պատուաւոր և պատկառելի պաշտօններէն մին յանձնէր է անոր։ Եւ ինչ որ ըսեր ենք, Հ. Ալիշան նոյն իսկ իր ամենէն թեթև և անփորձ, գալար հասակին մէջ, մինչ աննման ծանրութիւն մը, խոհեմութիւն մը և յարգելի վարք մ՚ունեցեր է. և իր այդ յատկութիւնները այնքան բնական համարուած են, որ իրաւամբ իր փոքր հասակէն սկսեալ ցծերութիւն՝ ընդհանուր միաբանութեանս գուրգուրանաց և յատուկ յարգանաց արժանացեր է։*

*Հ. Ալիշան իր այդ ծանր պաշտօնին համար օգնական ունէր վերյիշեալ Հ. Մանուէլ Քաջունի վարդապետն. բաց աստի, ուրիշ աշխատաւոր եղբայր մը, Եղ. Ստեփանոս Ռւմուտեան, որ վարժարանի մատակարարական գործերը հոգալով, Հ. Ալիշանի մեծ թիկունք կ՚ըլլար. այդ աշխատաւոր Եղբօրմէ զատ, ուրիշ Եղբայր մ՚ալ, Ե. Օգոստինոս Ծխանի՝ աշակերտաց վրայ հսկողի պաշտօն վարելով կ՚օգնէր Հ. Ալիշանի։*

*Վարժարանի այդ դեռահաս տեսուչը, իրեն յանձնուած պաշտօնը շատ խնամքով կը կատարէ։ Միևնոյն ատեն «Բազմավէպ»ի հիմնադիրը Հ. Գ. Այվազովսկի՝ Փարիզ Մուրատեան վարժարան մեկնելով, նոյն իսկ «Բազմավէպ»ի խմբագրութեան պաշտօնը Հ. Ալիշանի կը յանձնուի։*

*Հ. Ալիշանի տեսչութեան օրով, Վենետիկ խաղաղ վիճակի մէջ չէր։ 1848 մարտ 16ին գիշերը՝ Վենետկեցիք Աւստրիոյ իշխանութենէն ազատելու համար, կը սկսին*

յեղափոխական ցոյցեր. խռովութիւնը երթալով կը սաստկանայ. Վենետիկեցիք այդ ազգային շարժման մէջ մեծ արիութիւն ցոյց կու տան, և քաղաքական աշխարհի առջև բաւական գովելի դեր մը կը բռնեն. սակայն անհընարին դժուարութեանց չեն կրնար դիմադրել: Աւստրիացիք որ առ ժամն Վենետիկեցի պատանդներու տեղիք տուած էին, և Վենետիկէն քաշուած, սակայն յաղթանակի պսակը Ադրիականի թագուհոյն վրայ իջնելու յոյս չի կար. Աւստրիոյ նահանջեալ բանակը մինչև 1849 օգոստոս 24 կը պաշարէ զՎենետիկ, թշնամւոյն բանակէն ռումբերը կը սկսին Վենետկոյ հրաշակերտ պալատներու վրայ տարափիլ: Հ. Ալիշան տեսնելով որ վտանգը կը սաստկանայ, ամբողջ վարժարանի աշակերտներով մէկտեղ կը մնէ և կը դիմէ Ս. Ղազար. Ճանապարհին անմիջապէս մակոյկին քովը կը պայթի թշնամիէն արձակուած ռումբ մը, սակայն անոնք ողջամբ Ս. Ղազար կը հասնին: Քիչ ատենէն կը դադրի պատերազմը. որով Հ. Ալիշան վանքի մէջ 30 օր միայն յետոյ, դարձեալ աշակերտներով վարժարան կը վերադառնայ*:

1850 օգոստոս 29ին, վերջին պարգևաբաշխութեան հանդէսը կատարելով, աշակերտները կը լրացնեն իրենց ուսմանց ընթացքը**:

* Իր անդրանիկ հանճարեղ աշակերտն է ծանօթ գրաբարագէտ բանաստեղծ և Կ. Պոլսոյ թատերական ամենէն մեծ գործիչն Սրապիոն Հէքիմեան. որուն Հ. Ալիշան՝ նախ մի քանի տարի ուսուցիչ և երկու երեք ամիս ալ դաստիարակ եղած է:

** Նոյն ատենուան վերջին տարուան ուսումներն էին Բնազանցութիւն.

Հ. Քաջունի վարդապետ պարգեւաբաշխութենէն վերջը, աշակերտները հետ առած հայրենիք կը դառնի. թէեւ ըստ վանական ժողովի որոշողութեան այդ պաշտօնը Հ. Ալիշանի յանձնուած էր, սակայն ընտանիքը գրեր էին Կ. Պոլսէն որ առ ժամս հոս կենայ այդ ճամբորդութենէն, որով Հ. Ալիշան իր հարազատները և Հայրենիքը տեսնալու բաղդէն կը զրկուի, գուցէ առանց գուշակելու որ այդ զրկումը յաւիտենական էր։

Նոյն աշակերտները մեկնելով, վարժարանը բոլորովին թափուր կը մնայ։ Պատերազմի սկիզբներն, աշակերտաց մէկ մասը ընթացքնին աւարտած ըլլալով, աշխատաւոր եղ. Ստեփան զանոնք հայրենիք տարած էր։ Որով Հ. Ալիշան իր բարձր պաշտօնէն կ'ազատի և կը մնայ վանք։

Ընթերցանութիւն, Ջրաբաշխութիւն, Հրահանգ հայ, խառ. գաղ. և անգղ. լեզուաց։ Քիմիա, Գրահաշիւ, Ուրուագրութիւն, Երաժշտութիւն։ — Հ. Ալիշանի այս առաջին տեսչութեան աշակերտաց անուններն են. 1. Միքայէլ Երամեան, 2. Անտոն Փամպուքճեան, 3. Գէորգ Սամուէլեան. 4. Թովմաս Նաայեան, 5. Պօղոս Գամալիէլեան, 6. Տրդատ Ջօհրապեան, 7. Պօղոս Ճէպէճեան, 8. Միքայէլ Ազարեան, 9. Պօղոս Ջաղճեան, 10. Գէորգ Սամոնճեան, 11. Պօլիկարպոս Սարգսեան, 12. Աբրահամ Պինտոն, 13. Մատթէոս Մաճառ (Տես Բազմավէպ 1850 էջ 274)։

# Հ. ԱԼԻՇԱՆ Ի ՀՌՈՎՄ

Նոյն տարիները Հասունեան և Հակհասունեան խնդիրները արծարծեր էին և նորոգուած Մխիթարայ տան նահատակութեան օրերն։ Ուստի նոյն ժամանակուան վեհն գեր. Գէորգ Հիւրմիւզ իր հետ առնելով զՀայր Ալիշան 1850 սեպտ. 1ին, վենետիկէն կը մեկնի ուղեւորելով Հռոմ, ի պաշտպանութիւն Ուխտին։ Այդ ճանապարհորդութիւնը Հ. Ալիշանին համար առաջինն էր. զայն մի փոքր տետրակի մէջ գեղեցիկ նկարագրեր է։ Կը յիշենք այն ամէն դէպքեր, որ իր կենսագրութեան համար կարելի է հետաքրքրական համարուին։

Դէպի Հռոմ ուղեւորելու ատեն, ճանապարհին Իտալիոյ Անգոնա քաղաքին հանդիպելով, հոն կ'այցելէ Ս. Կիրակոս եկեղեցին, ուր կան Ս. Լիբերիոս Հայկազնոյն սուրբ նշխարներն. կը տեսնէ Հախվախեանց հայ միանձնուհեաց մենաստանը։ Նոյն ատեն այդ մենաստանը դեռ նոր կազմուած էր. մենաստանին մէջ կը գտնուէին մայրապետ մը իր մօրը հետ և ուրիշ պառաւ մը։ Մայրապետն Լուցիա կ'ափսոսայ որ տակաւին երկու նորընծայ կոյսեր ունին և անոնց թիւը բազմացընելու մեծ փափաք կը ցուցընէ։

Շարունակելով ճանապարհորդութիւնը, Սեպտեմբեր 9ին երկու մղոն հեռուէն, Հ. Ալիշան կը տեսնէ Հռոմայ Ս. Պետրոս եկեղեցւոյ գմբէթը. կը յուզուի մեծ բանա-

առեղծը, և սիրտը կը տրոփէ։ Նոյն օրը կը հասնի ի Հռոմ։ Իր երևակայութեան մէջ կ'արթննար պատմական Հեթանոս և Քրիստոնեայ մեծ քաղաքը։ Չորս օր վերջը իր վեհերն հետ կը ներկայանայ Ս. Պապին (Պիոս Թ.)։ Ուխտին գլխապետը կարևոր եղած աղերսները կ'ընէ Ս. Պապին. մի քիչ խօսակցութենէ վերջ, Ս. Քահանայապետը կը հարցընէ Հ. Ալիշանի անունը, զոր լսելով կը կրկնէ Լէո՛ն։

Ս. Պապէն հեռանալէն վերջը նոյն օրը Ս. Վկայաց գրչագիրները կը քննէ։ Մէկ օր վերջը իր հոգւոյն ամենէն ցանկալի մեծ հաճոյքներէն մին կը յաջողի կատարել՝ պատարագելով Ս. Պետրոսի եկեղեցին, Սուրբին գերեզմանին վրայ. կարելի է արդեօք լռելին ըմբռնել Նահապետին նոյն առենուան յափշտակուած զգացմունքը...

Վատիկանու մէջ 10 ժամերը կը քննէ։ Տիեզերահռչակ Միքէլ Անճէլոյի՝ Մովսէսի արձանը տեսնելով, իր անձնական քննադատութեան համեմատ, գլուխը փոքր կը գտնէ, մօրուքը շատ հերձուած և ջրանման, լուսեղէն եղջիւրները շատ եղջերանման։ Անտարակոյս բանաստեղծ Հ. Ալիշան իր երևակայութեան առջև նախնապէս պատկերացուցած է Սինայ լեռնէն աստուածային պատգամախօս մեծ մարգարէին նկարը, զոր հաւատար չէր գըտնար նոյն քաջաձեռն արձանագործի հրաշակերտին։ Կը դիտէ Հրէից աստուածային պատուհաս՝ Տիտոս Ինքնակալի նշանաւոր քանդակները և մայրասպան Ներոնի պալատը, որուն սենեկաց ձեղունի նուրբ նկարներուն վրայ կը զմայլի։ Կը բարձրանայ Ս. Պետրոս մայր եկեղեցւոյ

գմբեթը, կը մնէ անոր խնձորին մէջ. միաքը դրած էր հրաշալիք մը տեսնել, սակայն անոր բնաւ չհաւնիր։ Ս. Պետրոսի մատենադարանի նկարները և հնութեանց վըրայ կը սքանչանայ, հոն կը գտնէ Ոսկեբերանի պատկեր մը. գլխուն վրայ հայերէն այբուբեն գրուած. իսկ ձեռքը բռնած պլակին վրայ Հայր մեր որ յերկինս գրութիւնը։ Զանոնք տեսնելէն յետոյ միեւնոյն օրը երեկոյեան իր վեհին հետ Լիբանանու Հայոց գործակալին այցելութեան կ'երթան. խօսակցութեան մէջոց Լիբանանցի վարդապետը կը համարձակի Ներսիսապաշտ Հ. Ալիշանի ըսել, որ Լամբրոնացին Ս. Ներսէս՝ Հերետիկոսաց գլուխն է և ոչ սուրբ. պատարագի մեկնութիւնը լի է հերետիկոսութեամբ, և այս պատճառաւ զայն Հռովմայ Ծուալոցին մատներ են։ Ապշեցուցիչ և խիստ անարգական յանդգնութիւն մըն էր Հայ. Եկեղեցւոյ հրեշտակային վարդապետի մասին այսպիսի զրպարտութիւն մը։ Հ. Ալիշան որ գիտցած էր նոյն սրբազոյն վարդապետի սերովբէական վարուց և աստուածային հոգեզմայլ երկասիրութեանց վրայ, մանաւանդ «Պատարագի մեկնութեան», կը սարսի, թէ մի՛ գուցէ երկնային շանթ մը գայ հրկիզէ այդ անհանդուրժելի լեզուն. նա վերջապէս իր սուրբ վրէժխնդրութիւնը չի կարենալով զսպել, համեստութեամբ կը պատճառաբանէ. — Եթէ Լամբրոնացին Սուրբ չէ, այն ատեն ո՞վ պիտի կրնայ արքայութիւն մտնել, մի միայն վարքը շօշափելի վկայ է իր սրբութեան։ Սուրբին «Պատարագի մեկնութեան» համար Հ. Ալիշան կը հարցընէ. «Հարցաք թէ ինչ՞ նորա ընթերցեալ՝

տալ ու. և ոչ իսկ գիտէր թէ ծանօթութեամբ ապագրեալ է մեր, թերահաւատէր և ընդ Օձնեցին, և յանել մերում՝ թէ արդարացոյց զնա արքայութեանն ատեան, թերահաւատէր և ընդ մարդմնութիւն գործոյն, զոր հարազատ լինել երդուեալ էին հակառակորդք մեր... Ընդ որ առաւել արամեցայ ընդ նախատինս Սըրբոյն քան բարկացայ, այլ և յուսամ ի Տէր, զի նոցին բարեխօսութեամբ ողորմեսցի և մեզ»։ Այս երկու տողերն բաւական են ցոյց տալու, թէ Հ. Ալիշան ինչպիսի՛ ներողամիտ բնաւորութեան տէր անձ մ՚էր. ներողամիտ նոյն իսկ իր այն վատ երախտապարտական եսուն զեսուն վիճակին մէջ. սուրբ վրէժխնդրութիւնը իր մէջ նոյն ատեն ըմբոստացած էր, սակայն նա քաջ էր իշխելու իր կրից վրայ. թէեւ կիրքը պարագային համեմատ, իրաւացի էր, օրինաւոր էր և արդար։ Նա կը տեսնէ իր Հայ պաշտպան սուրբերէն արտին ամենէն սիրելին, աշխելի ազատութեամբ ամբաստանուելին, զրպարտուելն. սակայն նա չի բարկանար, այլ կը տրտմի. և այդ տրտմութիւնն ալ կարծես յանցանք համարելով, կը խնդրէ որ Նախատուած Սիրելին և Սուրբն Լամբրոնացի, երկինքէն բարեխօս ըլլայ իրեն և թողութիւն խնդրէ այդ սուրբ վրէժխնդրութեան... Մենք նպատակ չունինք ծանրանալու Լիբանանցիին այն տեսակ քաղաքավարութեան վրայ. դա նոյն ժամանակուան համար անծանօթ և նորանշան ազնուութիւն մը չէր...

Լատինացիք զմեր Լամբրոնացի Ներսէս՝ կոչած էին երկրորդ Պօղոս Տարսոնեան և Հայր Ալիշան նոյն սուր-

գմբէթը, կը մնէ անոր խնձորին մէջ. միաքը դրած էր հրաշալիք մը տեսնել, սակայն անոր բնաւ չհասնիր։ Ս. Պետրոսի մատենադարանի նկարներու և հնութեանց վը-րայ կը սքանչանայ, հոն կը գտնէ Ոսկեբերանի պատ-կեր մը. գլխուն վրայ հայերէն այբուբեն գրուած. իսկ ձեռքը բռնած պրակին վրայ Հայր մեր որ յերկինս գրութիւնը։ Զասոնք տեսնելէն յետոյ միեւնոյն օրը երե-կոյեան իր վեհին հետ Լիբանանու Հարց գործակալին այցելութեան կ'երթան. խօսակցութեան միջոց Լիբա-նանցի վարդապետը կը համարձակի Ներսիսապաշտ Հ. Ալիշանի ըսել, որ Լամբրոնացին Ս. Ներսէս՝ Հերետիկո-սաց գլուխն է և ոչ սուրբ. պատարագի մեկնութիւնը լի է հերետիկոսութեամբ, և այս պատճառաւ զայն Հռով-մայ Ծուպացին մատներ են։ Այպնցուցիչ և խիստ ա-նարգական յանդգնութիւն մըն էր Հայ. Եկեղեցւոյ հրեշտակային վարդապետի մասին այսպիսի զրպարտու-թիւն մը։ Հ. Ալիշան որ զմայլած էր նոյն սրբագոյն վարդապետի սերովբէական վարուց և աստուածային հո-գեզմայլ երկասիրութեանց վրայ, մանաւանդ «Պատարագի մեկնութեան», կը սարսի, թէ մի՛ գուցէ երկնային շանթ մը գայ հրկիզէ այդ անհանդուրժելի լեզուն. նա վերջա-պէս իր սուրբ վրէժխնդրութիւնը չի կարենալով զսպել, համեստութեամբ կը պատճառաբանէ. — Եթէ Լամբրո-նացին Սուրբ չէ, այն ատեն ո՞վ պիտի կրնայ արքայութիւն մտնել, մի միայն վարքը շօշափելի վկայ է իր սրբութեան։ Սուրբին «Պատարագի մեկնութեան» համար Հ. Ալիշան կը հարցնէ. «Հարցաք թէ իցէ՞ նորա ընթերցեալ՝

տաէ ոչ. և ոչ իսկ գիտէր թէ ծանօթութեամբ տպա-գրեալ է մեր, թերահաւատէր և ընդ Օձնեցին, և յա-նել մերում՝ թէ արդարացոյց զնա որբագրութեանն ա-տեան, թերահաւատէր և ընդ թարգմանութիւն գոր-ծոյն, զոր հարազատ լինել երդուեալ էին հակառակորդք մեր... Ընդ որ տուեալ արամեցայ ընդ նախատինս Սըր-բոյն քան բարկացայ, այլ և յուսամ ի Տէր, զի նոցին բա-րեխօսութեամբ ազօրմեսցի և մեզ»։ Այս երկու տողերն բաւական են ցոյց տալու, թէ Հ. Ալիշան ինչպիսի՛ ներո-ղամիտ բնաւորութեան տէր անձ մ՚էր. ներողամիտ նոյն իսկ իր այն վառ երիտասարդական եռուն զեռուն վիճա-կին մէջ. սուրբ վրէժխնդրութիւնը իր մէջ նոյն ատեն ընդոստացած էր, սակայն նա քաջ էր իշխելու իր կրից վրայ. թէեւ կիրքը պարագային համեմատ, իրաւացի էր, օրինաւոր էր և արդար։ Նա կը տեսնէ իր Հայ պաշտ-պան սուրբերէն որոնց ամենէն սիրելիին, ահռելի ապի-տութեամբ ամբաստանութիւն, զրպարտութիւն. սակայն նա չի բարկանար, այլ կը տրտմի. և այդ տրտմութիւնն ալ կարծես յանցանք համարելով, կը խնդրէ որ նախատուած Սիրելին և Սուրբն Լամբրոնացի, երկինքէն բարեխօս ըլլայ իրեն և թողութիւն խնդրէ այդ սուրբ վրէժխըն-դրութեան... Մենք նպատակ չունինք ծանրանալու Լիբա-նանցիին այն տեսակ քաղաքավարութեան վրայ. դա նոյն ժամանակուան համար անծանօթ և նորանշան ապխտու-թիւն մը չէր...

Լատինացիք զմերս Լամբրոնացի Ներսէս՝ կոչած էին երկրորդ Պօղոս Տարսոնեան և Հայր Ալիշան նոյն սուր-

րին նախատօնին երկրորդ օրը, առաջին Սարօնեան Պօղոսի նահատակութեան վայրն այցելելով, բաժակ կը խնդրէ ազգիս հիւանդ ու տարանջատ մօրերու։ Մեծ և ճարտարախօս առաքելոյն հոյակապ հին տաճարը 1823ին դժոխային հրդեհի իսպառ ճարակ եղած էր. Հ. Ալիշան նոյն ատեն կը տեսնէ նորը լրանալու մօտ, որուն ճարտարապետութեան, սեանց և մօզայիքներու ճոխութեան վրայ կը զքանչանայ։ Պատմաբանի և աշխարհագէտի հետաքրքրութեամբ կը դիտէ՝ պատանի հասակաց յայժ հանճարեղի Ս. Ալեքսիանոսի տունը. և մաքրաշնորհ օրիորդաց ուշագրաւ Վեստեան կուսանաց բոլորակ սիւնաշար տաճարը։ Քրիստոսական հոգւոյ վառարան Հ. Ալիշան, մեծ եռանդով կը դիմէ դէպ ի Ս. Սեբաստիանոսի գետնադամբանները, ուր նախկին քրիստոնեաները դողալով կը պաշտէին մեծ փրկիչը և հեթանոս արիւնռուշտ կայսերաց ըլլող գազանային հարուածներու փոթորկին տակ, կը պատրաստէին, կը կազմակերպէին Քրիստոնէական կրօնքը։ Սակայն Ս. Պապի երեսփոխանը կնքած էր անոնց դռները, արգիլուած էր այցելութիւնը* սրտաբեկ կը հեռանայ և քայլերն ուղղելով դէպ ի Ապպեան ճանապարհը, կը զննէ վաղեմի բոլորակ դամբան մը, որ ունէր իր պատմական յիշատակները. Մեծ անուանեալ Կրասոսի կնոջ Կեկիլիայ Մետելլայ շիրիմն էր այն։ Կրասոսի անունը անշուշտ յիշեցուց իրեն նոյն հարուստ ու ագահ

* Բայց վերջապէս Հռովմէն դեռ չդարձած. մի օր Լատինական դռնէն դուրս գտնուած՝ բաց գետնադամբաններուն մէջ կը մտնէ, և ժամերով, վաղեմի քրիստոնէից գերեզմանները կը զննէ։

Յաջորդ օրը Վատիկանու մատենադարանն այցելելով կը գտնէ 13 հատ հայկական ընտիր գրչագիրներ, որոնց յիշատակարանները կ'ընդօրինակէ։



Ռափ. վարժարան (Պալատ Զենոբիոյ) ի Վենետիկ։

Կը մնայ Օգոստոսի աշխարհահռչակ ինքնակալի պալատը. այն ալ աւերակ էր, միայն մի քանի կամարակապ աղիւսէ փլած որմեր մնացեր էին։ Պարծենկոտ ինքնակալը մահուան ժամանակ կ'ըսէր, թէ իր թագաւորելէն

առաջ Հռոմը աղիւսէ շէնքերով գտած էր, այժմ՝ մահուան ժամանակ, զայն կը թողու մարմարէ քարերով պճնազարդած. բայց Նահապետը միայն աղիւս կը տեսնէր նոյն իսկ փառապանծ կայսեր պալատան մէջ...

Հ. Ալիշան մի քանի ամսուան մէջ Հռովմայ գրեթէ ամէն նշանաւոր մանաւանդ պատմական հնութեամբ ծանօթ տեղերը կ'այցելէ. Հետաքրքրութեամբ ամէն գրչագիր մատենադարաններու մէջ կը փնտռէ կը գտնէ հայ ձեռագիրներ.

Հռոմ՝ երկար ատեն չի մնար. հարկ կ'ըլլայ որ մի քանի ամիսէն Վենետիկ դառնայ. Վեհն կը յայտնէ որ Ռափայէլեան վարժարանը բացուելու համար Հ. Աբրահամ Ճարեան Կ. Պոլսէն տասնըհինգ տղայ հետն առած Վենետիկ կու գայ, և որպէս զի վարժարանական ընթացքը կանոնաւոր կերպով սկսի, Հ. Ալիշանի վերադարձը անհրաժեշտ կը դատուի. շուտով պատրաստութիւն տեսնելով, կ'ելլէ Հռովմէն և հոկտ. 15ին Վենետիկ կը հասնի. և ուղղակի կ'երթայ նոր վարժարանը՝ Զենոբեայ անուն պալատը՝ որ առժամանակեայ վարձուած էր և դեռ նոր Հ. Ճարեան իր բերած աշակերտներով հոն հաստատուած էր*. Վար-

* Հ. Ճարեան Կ. Պոլսէն երբ աշակերտները կը բերէ, շուտով ըստ հրամանի Վեհին և խորհրդակցութեամբ վարչական ժողովոյն, կը բանայ Ռափայէլեան վարժարանը, Վեհն Վենետիկ չգտնուելով, բացման հանդէսը կատարած է քաղքիս նոյն ատենուան լատին Մոնիքուար Պատրիարքը. որ հոկտեմբեր 21ին առաւօտը իր դրան երէցներով վարժարան կ'երթայ. բացման հանդիսի ներկայ կ'ըլլան վանքիս ամէն միաբանները և քաղաքէն եկեղեցական և պաշտօնական նշանաւոր անձեր և բարեկամներ: Պատրիարքը նախ վարժարանի մատրան մէջ կը պատարագէ. կը

*ժարանիս մէջ Հ. Ալիշան այս անգամ մեծ պատասխանատուութիւն մը չունէր. իր եռանդուն ուսուցչական պաշտօնին հաւատարիմ մնալով, ժամանակ կը գտնէր գրական գործեր պատրաստելու։*

*Հաղորդութիւն նորեկ աշակերտները։ Պատարագէն յետոյ խաչի շարականներ երգելով, Ծիրանաւորը կենաց փայտով օրհնութիւն կու տայ։ Կրօնական արարողութիւնները լմնալէն վերջը, հանդիսականք կը հաւաքուին վարժարանի գեղեցիկ դահլիճին մէջ, ուր Ծիրանաւորը սրտառուչ խօսքերով կը գրուատէ հայ վարժարանին գովելի նպատակը և կրօնաւոր դաստիարակաց եռանդուն գործը։ Երկրորդ օրը կը սկսի դասաւանդութիւնը։ Դպրոցի վարիչն կ'ըլլայ Հ. Աբրահամ Ճարեան, իսկ Հ. Ալիշան առ ժամս հոն կը մնայ իբրև ուսուցիչ և աջակից իր դասընկեր տեսուչ վարդապետին։ Այս կերպով Հ. Աբրահամ Նորահաստատ Ռափ. վարժարանի անդրանիկ և հին վարժարանի չորրորդ տեսուչն կ'ըլլայ։*

## Հ. ԱԼԻՇԱՆ Ի ՄԱՆԹՈՒԱ

*Յաջորդ տարին 1851 Հոկտ. 8ին, Իտալիոյ մէջ փոքրիկ ճամբորդութիւն մը կ՚ընէ, կ՚երթայ Մանթուա. մի միայն այն նպատակաւ, որ հոն տեղեկութիւն առնու Ս. Սիմէոնի Հայկազնի մասին։*

*Ճամբորդութեան երկրորդ օրը Մանթուա կը հասնի, ուր Մայր եկեղեցւոյ կանոնիկոսէն Ս. Սիմէոնի Հայկազնի մասին գրքեր գտնալով, Սուրբին վրայ կարեւոր տեղեկութիւններ կը քաղէ։ Հասարակաց գրատան մէջ ուր կան 4800 գրքեր, 1000 ձեռագիրներ, կը փնտռէ Հայկազն Ս. Սիմէոնի գրուածք մը, բայց չի գտնար. միայն լատին գրչագրաց մէջ Ռիք. Արմաքանոսի Հայոց մոլորութեանց վրայ ճառած ձեռագիր մատեանն կը գտնէ։ Հ. Ալիշան այս գիրքը ուրիշ շատ մատենադարանաց մէջ փնտռած էր բայց չէր գտած. գրադարանէն կը խնդրէ որ իր ծախքով օրինակէ այդ գրչագիրը. ատկէ զատ Հայոց վերաբերեալ ուրիշ ձեռագիր չի գտնար։ – Հոկտ. 10ին Մանթուայէն 12 մղոն հեռաւորութեամբ Ս. Բենեդիկտոս աւանն կ՚ուղեւորի. հոն կը գտնէ Ս. Բենեդիկտոսի և Ս. Հայկազն Սիմէոնի տաճարը. մեծ զմայլանքով կը դիտէ Հայ Սուրբին նուիրական խորանը. թողունք որ ինքն Հ. Ալիշան իր չքնաղ գիւտը պատմէ. «և որպէս յանկարծոյն ի հաճոյական յապուշ կրթեալ կառչէի, անդէն և անդ տեսանելով ճշգրիտ հայեցի կերպարանս յանդրի*

հողագործ ի պատկեր Սրբոյն կանգնեալ յաջմէ սեղանոյն, արտաքոյ մատրանն, այր ճգնաւոր, կարճ հասակաւ, մեծագլուխ և լայնաճակատ, բոլորադէմ, զուարթերես, հերձամօրուս, զգեցեալ պարեգօտ և վերարկու, և վեղար հայկական զկէս գլխոյն ծածկելով, աջովն հանգրճելով զվերարկուն, և ի վերայ բազկին՝ մատեան աղօթիցն, իսկ ձախուն գրկելով զեղջերուն կանգուն։ Թէպէտ և առ յետին նորոգութեամբ տաճարին առ Ցուլեաւ՝ թուէր շինեալ անդրին, այլ առանց երկբայութեան՝ ի հնագունէ կամ ի պատկերէ Սրբոյն գաղափարեալ երևէր, զի այդպէս քաջիկ բերէ զոխացն։ Ի սեղանին որ առընթեր նմին և մատրանաձև զատուցեալ՝ ծածկեալ կան մնացորդք նշխարաց Սիմէոնի. ոչ գիտեմ թէ կայցէ արդեօք ընդ նոսին և այլ ինչ յիշատակ ի նմանէ, կամ խորգ կամ գրուած. զի որմնեալ փակեալ է սեղանն, և չգիտէ ոք ինչ զայսմանէ, և քակել ինձ զնոյն անմարթ էր. և էր գրեալ ի վերայ սեղանոյն լատին գրով.

SIMEONI. MONACO
PATRONO CAELESTI
SOSPITATORI
SODALES. SUI

այսինքն է. «Սիմէոնի Միանձին Երկնաւորն Պաշտպանի Արագահասի Ջոկողք իւր»։ Մինչ արժանի եղեալ իմ մատուցանել զաստուածային պատարագն ի վերայ սեղանոյ Սրբոյն, արժանի լինէի ապա և զանդրին գանկ

*գլխոյ Նորին, որ անթերի և անարատ պահէր անդ յօ-կեզօծ լապտերաձև տփի՝ 1835 ամաց հետէ, և գգուել և համբուրել, և խմել ձեռամբ՝ օգնութեամբ ճաւագերի-ցուն՝ հատանել մասն յակերայ ծածրակին, բազում՝ ջանիւ, զի կարի կուռ և ամուր էին ակերքն և բժիշկք դանակաց, աքցանու կարօտեալք ի հատանել զնըշ-խարն »*.*

*Հայ Սուրբի հրաշագործ նշխարն առնելով, կը փութայ Մ'անթուա. մատենագարաններու մէջ նոյն Սուրբին վրայ լատիններէն մի քանի գրութիւններ կը գտնայ. Հ. Ալի-շան այլ եւ իր նպատակին հասած էր. առանց հոն ու-շանալու կը դիմէ իր պաշտօնավայրը ի Վենետիկ։*

* Հմմտ. Բազմավէպ 1884 էջ 10։

## Հ. ԱԼԻՇԱՆ Ի ԼՈՆՏՐԱ

*1854 դեկտ. 5ին, միաբանութեանս վարչական ժողովը կ'որոշէ որ Նա փութայ դէպ ի Լոնտրա ուր կատարելու կարեւոր գործ կար. Ռափայէլեան վարժարանի համար էր այդ գործը. այդ վարժարանը Վենետկոյ մէջ երբ կը հաստատուի, կը վարձեն Փէզարօ անուն գեղեցիկ պալատը*, սակայն Նա աշակերտաց համար պարտէզ չունենալուն և տան տէրը ամէն տարի տան վարձքը բարձրացնելուն համար, կ'որոշեն ի սպառ զայն թողուլ և ուրիշ շէնք մը գտնել. Ինչպէս վերը յիշեցինք, կը գտնեն Զենոբիոյ շէնքը. Վանքիս վարչութիւնը յօգուտ այն կրթական հաստատութեան կ'որոշէ որ նոյն շէնքը փոխանակ ամէն տարի վարձելու, գնէ. և այս որոշողութեան համար կարեւոր էր բաւական դրամ՝ զոր ձեռք բերելու նպատակաւ Հ. Ալիշան 1852 Յունուար 18ին կ'ուղեւորի Լոնտրա. հոն վարժարանիս բարերարաց զարմէն Պ. Լուիզի փաստաբանի աջակցութեամբ, դրամատեղանատան մէջ եղած Ռափայէլի ստակէն կը հանէ 125 000 ֆրանք. Այս առթիւ իր կատարած ուղեւորութիւնը բաւական հետաքրքրական ըլլալով, զայն համառօտակի կը յիշենք.*

* Այս պալատը տասը տարուան համար վարձուած էր. երբ տասը տարին լրացաւ, տան տէրը կ'ուզէր պալատը 200,000 ֆրանքի վաճառել.

Ճանապարհին կ'այցելէ Վիեննայի գրչագրաց մատենադարանը. կը տեսնուի գիտնապետ կոմս Այխէնֆէլտի հետ և իր միջոցով մի քանի հայ գրչագրաց յիշատակարանները կ'ընդօրինակէ։ Հոն կը գտնէ նաև Սարգիս Հէճնցոյ Աստուածաշունչ մատենից բաղդատութեան ձեռագիրն*։ կ'այցելէ Վիեննական Մխիթարեան հարց վանքը, որոնց թանգարանը ճոխ կը գտնէ և ի կարգի։ Հոն Հ. Սիպիլեանի հետ Ռուբինեան դրամոց մասին երկար կը խօսի։

Վիեննա երկար չի մնար, կը փութայ իր նպատակին. երկու օրէն կը հասնի ի Պեռլին, ուր մտերմութեամբ փէգերմանի հետ երկու օր կ'անցընէ. Մ. Խորենացւոյ մասին կը վիճէ. մատենադարանին մէջ կը գտնէ 10 հայ գրչագիրներ, դրամներու թանգարանի մէջ 45 Ռուբինեան դրամներ մի արծաթէ դրամ Տիգրանայ և երկու Միհրդատայ, և այլ պղնձէ Հայ դրամներ. փէգերմանի տան

* Հ. Ց. Տաշեանի գրչագրաց ցուցակը մանրամասն կը խօսի այս գրչագրին վրայ. Ճակատը կը կրէ հետեւեալ գրութիւնը, զոր կ'ընդօրինակենք յիշեալ ցանկէն. «Եղեւ յամի Տեառն 1775։ Զաստուածաշունչն տպագրեցեալ ի Մխիթար աբբայէն համեմատեցի ընդ գրչայ աստուածաշնչից. որք էին ի գրքատան սրբոց Յակոբեանցս ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, եւ որ ինչ անհամեմատ, կամ աւելի պակաս գտանեցաւ ի գրչայան գլխովն եւ համարովն սատ ժողովեցի։ Իսկ զկնի բառիցն եղեալ հայերէն թիւքն ցուցանեն զթիւս աստուածաշընչիցն թէ ի քանիս տեսեալ եմք նոյնպէս։ Հաճնեցի Սարգիս աբեղայ»։ Այսքան տողեր բաւական գաղափար կու տան այդ բաղդատական Աստուածաշունչի մասին, որով հոս անոր բացատրութիւնները աւելորդ կը համարինք։ Գոհացուցիչ տեղեկութեանց ցանկացողք կարող են դիմել վերոյիշեալ ցուցակին։

մէջ գրչագրաց յիշատակարաններ կ'ընդօրինակէ։ Խորենացւոյ Ա. Գիրքը կը բաղդատէ Լայբցիկեան օրինակի հետ։ Կ'աճապարէ կը փութայ դէպ ի Լոնտոն, ուր Հ. Ալիշան վարժարանական այդ տաղտկալի գործին մէջ, նոյն իսկ հայ գրչագիրներ գտնալու հետամուտ կ'ըլլայ։ Իր բնաւորութիւնն էր, ուր որ երթար հայ սուրբի մը խորան, հայ վանատուն մը կամ նախնեաց ձեռագիրներ փնտռել։ Լոնտոնի մէջ ալ կը յաջողի գտնալ մի քանի ձեռագիրներ։ Քէմպրիճի համալսարանի գրչագիրները քննելով, կը գտնայ երեք հայ աննշան ձեռագիրներ, Սաղմոս մը, Պարզատօմար մը և Տաղարան կամ Մարկաւագատետր մը, երկքն ալ հնութիւն չունէին. երրորդէն կ'ընդօրինակէ Թէաթինաց կարգէն Կղեմայ վարդապետի* Ամենասուրբ Երրորդութեան վրայ գրած ոտանաւորը։ Կիրտոն գիւղի վարժարանի մը ձեռագրաց ցանկն պրպտելով, արաբ գրոց բաժնին մէջ կը գտնէ անթուական հնագիր հայ Սաղմոս մը։ Լոնտոնի գիւղերու մասին յափշտակուած կը խօսի. գեղջկական տեսարանները իր բանաստեղծ ե-րեւակայութեան շատ հաճելի ու սիրելի եղած են, միայն միայնութիւնը իր անբիծ զուարճութեան ներդաշնակութիւնը կը կոտրէ։ Ընկերութեան մէջ Հ. Ալիշան մենաւոր էր, բայց ընկերութենէն դուրս, կը նեղուէր միայնութենէ. և իր այդ նեղութիւնը փարատելու համար,

---

* Այս ոչ անծանօթ հայագէտ Գալանօ վարդապետի մասին կան յիշատակութիւնք Հ. Տաշեանի գրչագրաց ցուցակին մէջ (էջ 112)։ Նոյնի տեղեկութիւնք տես Հայ. Պատմութիւն Հ. Չամչեանի. Գ. էջ 622. և Լէօ Հայ. Տպագր. էջ 128–145։

շարունակ իր քմաց ախորժելի գիրք մը կը կարդար․ Լոնտոնի միայնութեան մէջ իր ընկերութիւնն էր ամերիկեան քնարերգութիւններու ընթերցումը. Նա իր վառ ու գոլար երեւակայութեամբ բնութեան գրաւիչ տեսարաններուն հետ կը մտերմանար, անոնց մունջ լեզուէն կը հասկընար, և օդային երաժիշտները որ իրենց սուր շրթունքներու մեղեդիով զեփիւռի մրմունջներուն հետ միացած՝ բանաստեղծի երեւակայութիւնը կը յուզեն, նոյն երաժիշտներէն մին հոն, ի Լոնտոն կը խանգարէ Նահապետին ընթերցումը․ կը գրէ Հ. Ալիշան. «Եւ ահա թռչուն մի ի ծառոյն որ հանդիպոյ՝ սկսաւ ձայն մի հակիրճ կրկնել իբր ու ա ի ձայնաւոր տառիւք և ճ աւարտմամբ և անդադար զնոյն յեղյեղէր, և իմ՝ հաշուեալ ժամացուցաւ գտի՝ զի 34 անգամ կրկնէր ի վայրկենի, և կրկնեաց 26 վայրկեան, այլ փոքր մի յամր զյետին վայրկենին, մինչև յանցանել կառաց՝ լռեաց. պարզ ձայն, այլ ընդ անդադար կրկնելն սխրանայի, և կամէի գիտել թէ զի՞նչ խնդրէ, զի իբր հազար անգամ զնոյն կրկնէր, և իմ՝ ծանրացեալ սիրտս թեթևացաւ»։ Հ. Ալիշան թողլով Ամերիկեան քնարերգութիւններն, կը սխրանայ այն Նոր երաժշտի միօրինակ երգերուն վրայ։ — Քրիստոս անուն վարժարանի պարտէզէն, Միլտոնի տընկած թթենիի ծառէն ի յիշատակ կը փրցընէ երկու տերև ու կը պահէ. և մեծ բանաստեղծը երկու տերևով անգղիացի մեծ բանաստեղծի յիշատակը անմոռաց կը յարգէր։ Կոյր բանաստեղծին թթենիներէն հեռանալուն՝ իրեն տարօրինակ անակնկալ դէպք մը կը պատահի. Ճանապարհին



Հ. Ալիշան ի Լոնտոն աշխարհիկեան տարազով:

միայնակ գտնուած ատեն, իրեն կը մօտենայ անծանօթ անձ մը, քաղաքավարութեամբ ընկերանալով, իրեն կ'իմացընէ որ ինքը Մասոններու ընկերութենէն է, և թէ պատրաստ է իրեն օգնելու, եթէ իր ընկերութենէն ըլլար։ Հ. Ալիշանի պէս սրբակաց կրօնաւորը՝ առանց այլայլելու կը պատասխանէ, որ ինքը ունի իր միաբանութեան գլուխը և իր յատուկ կրօնաւորական ընկերութիւնը։ Նոյն ճանապարհորդութեան ատեն Հ. Ալիշան արտաքապէս եկեղեցական մը կամ կրօնաւոր մը չէր երևնար, վասն զի աշխարհական զգեստով էր, թողուցած էր սև կարճ մօրուք մը. այս կերպարանքը միամիտ մասոնը յուսալիր պատրանքի մէջ կը գլորըկէ! capitombolon կատարեալ էր...

Հ. Ալիշան կը շարունակէ Լոնտոնի մէջ իր պտոյտը. Բարհամ Բարք դղեակի ձեռագրաց մէջ կը գտնայ շատ հայ գրչագիրներ, զոր հետաքրքրութեամբ կը քննէ։ Դղեակին վաղեմի ծառերուն տակ քերթողական տողերով կը նկարագրէ իր այդ այցելած պատմական վայրը. նա կ'երգէ.

Ազնիւ ի զարմ եւ ի սիրտ, — քան զոր չիք զուն - բարեկամ՝
Ըզսեւս քօղով նըժդեհիս երբեմն արկեալ ասկեծամ,
Իշխանականդ յօրինեաց յանկարծ ըղձեանս իմ խըրթին,
Ի խուն խըղէս ի Պարհամ մուծեալ դըղեակ մեծ եւ հին.
Ի վայր սիրուն, ուր բնութեան ճարտարապետեալ նուրբ գործեաւ,
Յիշատակք բազմադէմք հեմին ընդ լայն հովանեաւ.
Ջէնք զինուորաց զաւկըրճին՝ ազդեն ըզփառս եւ կորանս,
Եւ հընութիւն՝ նուիրական ինձ յարդարէր ըղձանմանս:
Որպէս կուսան մի հըսկայ սըփռեալ զօթոց զիրուտար
Տարածանէ զգեղանիստ սա զիրս հազար արտավար,

Բլուրք եւ դաշտք եւ հովիտք ի ամս 'նկեալ խառն եւ լըճակք
Զանազանեն ըզգեղըն գեղեցկագոյն եւս որակ.
Աճեն փիճիք ընդ կաղնեաց հինաւուրց, չոճք թաւոտունք,
Ղօղանըստիկ սոխակաց պատըսպարանք հովասունք.
Ին են առտ թառք մուսայից եւ քերթողաց դիտարանք,
Բանաւորաց հովանիք եւ սիրելեաց ճեմարանք.
Համարձակ է անդէն ու անքան որդւոց բընութեան.
Արօտականք բազմերամք պէս պէս բըջեալ ճեմ գընան.
Սիգաճարակ առա նախիր հայթհայթէ կաթն անուշակ
Մատըռուակել ի սեղանն տաւուռին հեշտ ճաշակ.
Կայտառէ զուարակն ի մարմանդ՝ չարժեալ ազի ազխեան.
Անձկաւ բառեանց մայրենեաց գընան զաւինք հեղաձայն,
Վազեն պառակք եղջերուաց աճեճաճիգ բարձեալ սար,
Մերձին զուարթունք, հեռանան զարհուրանօք հաւասար.
Ցեղակարծուց ի խարձէն կանգնէ զակաղջ նապաստակ,
Եւ յըստուերաց իսկ խեթեալ լինի՝ խրչալին փախըստական.
Խառն ընդ դաստակ քառոտնեայց՝ առա ճարակլին փետրաւորք,
Ընդ հաւուց ընտանեաց գոն սիրամարգ թագաւորք.
Դրախտին եւ իմ հայրենի գետափանց հիւր՝ փառեան հաւք,
Սագք բազմիլեակք եւ նաղօղք արծաթ ալեաց՝ սէգ կարապք։

Ընդ ազգ ազգ կենդանեաց հայեցեալ՝ նոր ըզգամ կեանս,
Եւ նորանորս ինձ ածէ հաճոյս՝ փոփոխ մէն վայրկեանս։
Ի մենաւոր զարակիս նըստեալ մենիկ հաշտակեր՝
Ցարձակավայրըս խաղալ հեղիկ չարժեմ աչաց ծիր.
Հովիտ տարած ընդ դարիւս ակօսաբեկ անդ կանաչ,
Մայրք եւ պուրակք մերձ ընդ մերձ ինձ եկանեն ընդ առաջ.
Հարթածաւալ ագարակ՝ զոր ստորինաց սուր գերանդի,
Եւ ալէձեւ ի զեփիւռ շրջթեալ խառնեալ դէզք անդի.
Ընդ մէջ սաղոյ՝ ծածանին արծաթեդոյն մըկանունք,
Որպէս անձայն մի կիթառ, թէ՛ւ հանապազ թըրթըռունք
Իսկ յայն կուսէ սեւակերպ ծառաստանին՝ չէնն հեռի՝
Պէս մահարձանք ի լերինս ըփառեալք՝ աչաց նըկարի...
Ո՛հ, մարդիկ բազմակիրք խաղան չարժին անդ անդուլ,
Եւ ճիկ մի ոչ ժամանէ նըկատողիս ինձ զանխուլ։
Սարսին զինեւ դաշտամած կաղնոյ կողերըս կայտառ,
Զօրով զարուն ինն հարիւր է 'նդելուզեալ ձորձ պայծառ.
Զէր տակաւին ծովակալ Նորմանդին առն եդեալ առա,

Մինչ երկրագրաւ ընդաճէր ի հող՝ արմատ սօսին հաստ·
Ազգս երեսուն եռես սա 'նդ տերեւս տապաստ ի յերկիր,
Եւ տակաւին պանդըխտաց հովանանայ ինքըն մեր··
Ա՛հ, պայազատ երկրի մարդ, զի՞նչ քան ըզքեզ անհաստատ.
փոփոխին ազգք, պետութիւնք, եւ կայ 'նչարժ ծառ հաստատրմատ.
Հրոսակք հիւսիսոյ նոցին ի մուտս արեւու,
Սընընդակիցն եղեւնեայց՝ լինի ալեաց սանձարկու·
Եւ ծովակոծ մորափանց մանկանց վարեալ տարագէմ՝
Ի մէջերկրեայն ագարակ ձըգեն արօր յամբաճեմ··
Յայս անդաստանս եկի, լեառըն հուպ՝ դիտել համարձակ.
Ո՛հ, երկնածոր սիւք բարձանց, ո՛վ շուրջ սահմանք ընդարձակք··
Այլ ո՜ն ո՜ն, զինչ անդր ի վայր··· չիցե՞ն ծովու այն ալիք.
Զիցե՞ն եւ յայնկոյս ծովուն՝ իմ հեռացեալ հայրենիք··
Ա՜հ, ըղձով տեսի եւ, եւ ծորեաց սիրտ ի ծոցիս,
Նմանեա՛յ զիս նըժդեհ եւ յիշեցի զհայրենիս··
Բարեա՛ւ մընայք Պարհամայ բարձք եւ բաւուք դուք երջանիկ!
Դառնամ երթամ եւ հանգչել ի հայրենին իմ խըղիկ:

Բանաստեղծ Նահապետը իր այս վսեմ քերթողական տողերուն մէջ, նկարագրելով Պարհամ գիւղը, ցոյց կու տայ, որ իրեն համար ոչինչ է հոն գտած ու տեսած գրախտանման բնական ու արհեստական պերճութիւնը. Նա կ'երազէ Հայրենիք, իր աղքատին պարզուկ խղիկը…

Հեռանալով բանաստեղծի քնարն ու սիրտը յուզող գիւղէն, նա դարձեալ, իր ուղեւորութեան բուն նպատակին կը դրաղի, նա ատոր համար անդադար կ'աշխատի, կը նեղուի, և այդ պատճառաւ նոյն իսկ կը հիւանդանայ և սաստիկ ջերմ հիւանդութեամբ մի քանի օր անկողին կը մնայ. կը հիւծի, ուժաթափ կ'ըլլայ. իր սրտնեղութիւնը ալ աւելի կը սաստկանայ, երբ այդ գործին կարգադիր անձինք, խնդիրը միշտ կը յետաձգեն, և իրեն որոշ պատասխան մը չեն տար։ Նա արդէն իսկ խղիկէն դուրս

եղած՝ թափառական պտոյտովը, և գրասեղանէն հեռանալովն, կը տանջուէր, մանաւանդ երբ իր առջև կը տեսնէ անտարբեր, և գործը կննռոտող անձեր։ Հ. Ալիշան իր այդ տագտուկը և մաղձոտ վիճակը կը ջանայ փարատել՝ քերթուածներ գրելով և ուրիշ բանաստեղծական գրքեր կարդալով և թարգմանելով. այդ իր պանդխտութեան օրերուն մէջ թարգմանած է ի Լոնտոն սիրելի բանաստեղծ Lord Byronի «Childe Harold's Pilgrimage» գրաւիչ քերթութիւնը*։

Օգսֆորդի մատենադարանին մէջ կը գտնէ 18 հայ գրչագիրներ. Պոտլէյեանի մէջ կ'օրինակէ հայ գրչագիրներ։ Օգոստոս 5ին վենետկոյ վարժարանի գրամական խնդիրը յաջողութեամբ գլուխ հանելով, այլ ևս ի Լոնտրա երկար չի մնար. Նոյն ամսոյն վերջին օրը կը մեկնի դէպի Փարիզ։ Ընթերցողը կրնայ գուշակել որ, Հ. Ա-

* Այդ թարգմանութեան յառաջաբանին մէջ կը գրէ. «Ոչ ընդ նշանաւորս միայն քերթողաց դարուս, այլ և առաջին ի նոսին վկայեալ է ի յոլովից գիտնոց՝ Պայրըն Անգղիացի, զորոյ ճաշակս քերդուածոց մատուցաք երբեմն մերազնեայցս ի ծաղկաքաղս ուրեք, իսկ այժմ ընծայեմք զընտրելագոյն մասն համօրէն գրուածոց նորին, որ է յեռին կամ Չորրորդ երգ անուանեալ քերդուածոյն Պանդխտութեան Հարոլդեայ Ասպետի... մերս իսկ նժդեհութիւն ի հայրենեաց անդր քերդողին, ուր առաւել քան զյօժարութիւն յամեալ, զտաղտուկ օտարոտիքանս այսպիսաւ իմն կամեցայ սփոփել կամ տանջել՝ ոչ դիւրաթափ թարգմանութեամբ. սոյնպիսի իմն հնարս հնարեալ և հեղինակին երբեմն՝ արկանէր զանձն ի փորձ և ի տաժ ուսանել զմերս հայերէն դժուարագիւտ բարբառ, ի մերում իսկ դրունս վանաց»։ Անգղիացի տաղանդաւոր բանաստեղծը գտած էր իր քնարին արժանաւոր և ձեռնհաս քնարերգու թարգմանիչը։



Հանգստարան Լեւոն վերջնոյ, Լուսինեան թագաւորի։

լիշան նաև հոս կեանքի և հասարակութեան կեդրոնին մէջ, Հայու աճիւն և հայու միտք պիտի փնտռէր. ատոնք միայն իրեն ուշադրութիւնը կրնային գրաւել. իրեն փոյթ չէր փարիզու եռուզեռ շարժումը։ Հոն մի օր ողբերգութեան մը ներկայ կ'ըլլայ՝ բարեպաշտաբար Հայուն անունը վեց անգամ՝ կը հնչուի օտար հռչակաւոր թատերաբեմին վրայ, նա պանծանօք իր յուշատետրին մէջ կ'արձանագրէ այդ դէպքը, համարելով զայն հայութեան չքնաղ փառք մը։ Կ'այցելէ մայրաքաղաքին այն ամէն տեղեաց, ուր կ'իմանայ թէ կը գտնուին հայ ձեռագիրներ, վաղեմի հայոց ազգային արձանագրութիւններ, շիրիմներ, որոց պաշտելի նշխարներ։ Փարիզու մէջ նա մելամաղձիկ չէր, ինչպէս ի Լոնտրա։ Հոս իրեն ընկերներ ունէր, վանքին հոգեկից եղբայրները, որ նոյն ատեն Մուրատեան վարժարանի վարիչ և ուսուցիչներ էին։ Իրեն առաջնորդն կ'ըլլայ Հ. Ս. Թէոդորեան։ Անհունապէս կը յուզուի Ս. Դիոնեսիոս անուամբ տաճարին մէջ. և արդէն կարելի չէր որ զգայուն բանաստեղծը կարենար զսպել իր սրտի արտփումը՝ հոն, ուր կը տեսնէր Հայութեան 4000ամեան հայրենեաց վերջին առիւծին վերջին փառաց հանգստարանը* որուն վրայ մեծ բանաստեղծը կը կաթեցընէ իր արտասուաց կայլակները...

* Հ. Ալիշան իր արձակ գրութեանց անուշիկ Յուշիկներուն մէջ կը գրէ. «Ամենայն հայազգի որ Բարիզու քով Ս. Դիոնեսիոսի արքայարանի տաճարին այց ելնէ և իջնէ անոր ստորանատունը, չի կրնար առանց մեծ և խոր մտադրութեան չտեսնել քնարան մը թագաւորի, թագիւ, խաչիւ և առիւծով, և վահանաւ մը՝ յորում քանդակեալ են

*Հնտանէր Նահապետը կը շրջի Լուվրի մուզէոնը. հոն եւ իր սրտին մօտ կարեւոր յուշարձաններ կը գտնէ. կը տեսնէ հսկայ Տրդատայ անդրին ձեռքը բիր մը բռնած. իր աչէն չեն վրիպիր երեք պարթեւազն կրանիդեայ արձաններ* Prisonier Barbare *մակագրութեամբ: Հ. Ալիշան զասոնք դեռ չի տեսած, կ'ուզէր իր մի որոշողութիւնը կատարել. Նա Վենետիկէն մեկնելուն, որոշած էր որ փարիզու մօտ ի կանտ գտնուած Հայկազն Ս. Մակարայ Նշխարներու երթայ այցելէ: Իր որոշածը, մանաւանդ երբ որոշումը սուրբ էր եւ հաճելի սրբոց, պէտք էր անպատճառ կատարէր: Ու ժամն կը թողու փարիզը, սեպտեմբեր 26ին (1852) կը մեկնի, մէկ օրէն կը հասնի ի կանտ*

*նշանք թագաւորութեան Հայոց եւ Երուսաղեմի եւ Լուսինեան տան: Աչք մէկէն կու տեսնեն այս խորագիրս,* Cy gist Lyon, Roy d'Arménie. *(Աստ հանգչի Լեւոն թագաւոր Հայոց). եւ զարձեալ* «Cy gist le très-noble et excellent prince Lyon de Lizingne, quint Roy Latin du rouyaume d'Arménie, qui rendi l'âme à Dieu, à Paris le XXIX jour de novembre. l'an de grace M. CCC. XX et XIII.»: *Նախ թաղուած էր փարիզու Կելեստինեան* (Célestins) *կրօնաւորաց վանքի եկեղեցւոյն աւագ խորանին քով* (1393). *կամարակապ պատին մէջ հաստատուած էր իր մահարձանը սեւ տապանաքարով: Չորս դար անցնելէն յետոյ, երբ փարիզ զայրոյթի եւ խռովի մէջ էր, նոյն իսկ խաղաղաննինջ հանգուցեալներու հանգիստը վրդովեցաւ. ազատութեան, հաւասարութեան եւ եղբայրութեան դրօշակիր ամբոխը հիմնայատակ ըրաւ ամէն հոյակապ յիշատակարաններ, եւ այդ բռնկած փոթորկի ճիրաններէն չազատեցաւ նաեւ մեր վերջին թագաւորի աճիւնն. ամբոխը տապալեց եւ անոր քնարանը: Խաղաղութիւնը տիրելուն, իր տապանաքարը զետեղեցաւ վերայիշեալ Ս. Դիոնեսիոսի եկեղեցւոյն մէջ: Բայց անոր պաշտելի աճիւնը անհետացաւ: Մեր ճակատագիրն էր զրկուիլ նոյն իսկ թագաւորաց մախիրէն...*

ուր Ս. Բաւոնի արքայարանի մէջ կը գտնէ Ս. Մակարայ տաճարը*, կը տեսնէ կիսակործան գերեզմանը, ուր ժամանակին թաղուած էր տենչալի հայկազն Ս. Մակար եպիսկոպոս. որուն քնարանին փոսին մէջ մտնալով, իբրև յիշատակ, կ'առնու գերեզմանին շաղախէն մի քանի կտորներ: Քաղքին մայր եկեղեցւոյն մէջ Ս. Մակարայ նուիրուած խորան մը կը տեսնէ. կ'աշխատի սուրբին նշխարներուն ջերմեռանդ համբոյրներ տալու, սակայն կարելի չըլլար. բացակայ էր սուրբ նշխարաց պահապանը: Կ'երթայ Պրիւքսէլ, կը տեղեկանայ որ հոն եւ հայ սուրբի մը յիշատակը կը յարգուի, կ'իմանայ որ օտարահնչակ Ս. Խրիսոլիոս անուամբ Հայկազն սուրբին գլուխը քաղքին մայր եկեղեցւոյ մէջ կը պահուի. կ'երթայ զայն տեսնելու, սակայն անկարելի կ'ըլլայ. ժողովրդապետը կը պատասխանէ թէ կնքուած է:

Պրիւքսէլէն կ'երթայ Օստենդ, ուր բնութեան գեղեցկութիւնը և իր միայնութեան մելամաղձոտութիւնը կը գրգռեն իր խանդը, և կ'երգէ «Հիւսիսային ծովու» հետևեալ գեղեցիկ երգը.

Յ'Ոստենդեան ծով հիւսսի հեմին միայնակ
Երեկ պարզեալ առ հողմըն՝ թեւս ի նաւակ.
Զուարթ է արեւս, ծովըս ծիծաղ, հողմն ընդոյր,
Հանդարտ եւ սիրտ յիշատակօք մաղձաթոյր.
Իսկ միտք՝ աչխս առեալ ի ծով խոր սըրտին,

* Սա առաջ վանքի եկեղեցին է եղեր, յետոյ 1068ին ի յիշատակ սուրբին եկեղեցւոյ փոխուած է. ութանկիւնի գեղեցիկ շէնք մ'է, աւերակ վիճակի մէջ:

Մերթ ընդ հողմոյս առ Աստուած վեր տատանին,
Մերթ ծաւալեալ յուխտ հաւասար սիրելեաց՝
Ի հայրենի ձըգին ի հողն յալս ալեաց·
Եւ մերթ ի լուրջ եւ ծածանուտ հայելւոյ՝
Ջանցեալն յիշեն եւ զայժմու կեանքս դողդոջ։
Աչք իմ յուզին զանդընդյատակ ծովըս խոր,
Միտք իմ զապայն անհետապօտ ու ահաւոր,
Հեշտ ինձ հանդարտ բաղխի 'նդ ատգնաղըս զանխուլ
Եւ զուարճանամ եւ երկնչիմ ես անդուլ։
Եւ յառաջէ նաւակս ի՚ չուեչ օժանդակ,
Թողեալ ի թիկն ըզՖլեզգիա բովանդակ,
Փռանկաց ափունք յաջմէ. Ոլանտ յահեկում,
Ու անդ Ալպիոն՝ իմ արշելան ապաստում,
Եւ հետագայն՝ շուրջ շարժուն, որ կըշէր
Տանի 'Թուլիա՝ զեկեալն աչաց ի յակճիռ։...
Ո՛վ նոր ալիք, նո՛ր ափունք. ձեզ ողջոյն տամ
Ողջոյն մ'եւեթ, զորս ոչ տեսից միւսանգամ.
Ընդհուպ երթեալ կառեայց յիմ եզր հայրենի...
Այլ սիրտ մերժէ զսահման, երկնից խըձ լինի։

Դեռ Փարիզ չի վերադարձած, կառօք կը մտնէ պատերազմական յիշատակով անմահացած Վաթէրլօյի դաշտը, ուր ճեմած ատեն կ'երեւակայէր Ցոլատփառեան դաշտը։ Իր քնարին լարերը կը սկսին թրթռալ. Նա կ'երգէ դաշտին պարտեալ առիւծն Նափոլէոն, որ 120,000 զօրօք կ'ուզէր փշրել Վէլլինկթօնի Անգղիական դժոխային Լէգէոնը. սակայն յաջողութեան, յաղթանակի բաղդը չի ծիծաղեցաւ աշխարհակալ Առիւծին. անգղիական բանակին օգնութեան հասաւ Բրուսիականը. Նա լքաւ, փախաւ ի Փարիզ. փլած էր աշխարհատատ մեծ Պատերազմիկին գոռոզութիւնը. և հայրենիքը կը ցաւէր անոր տխուր պարտութիւնը։ Այդ պատերազմի դաշտին մէջ, Ներ-

կայ գտնուած երկաթագիր մը, Նահապետն ցոյց կու տար բանակներու տեղերն. Նա կը զննէ Նափոլէոնի պարտութեան ի յիշատակ կոթող Առիւծը. որ իր վրայ խոր տպաւորութիւն կը թողու. իր միտքը անկից դժուարաւ կը բաժնէ. Նա կը բարձրանայ նոյն կոթողին վրայ, երևակայութիւնը կ'ընկղմի Նափոլէոնի մեծագործ յիշատակներուն մէջ, հետաքրքիր այցելու անգղիացի ընտանիք հոն խուժելով կը խռովեն Բանաստեղծին քնարահիւս մտածականն, Նա կ'իջնէ կոթողէն և այցելուաց տետրակին մէջ կը գրէ

«Առիւծ անուն ես Ալիշան,
Թողի յԱռիւծս այս գիծ նշան»։

Վաթէրլօ իր յիշատակներով և յուշարձաններով Նահապետն երգել կու տայ, հեռուեալ, յուզիչ տողերով.

Պանդո՜ւխտ, յաճեղ խաղմիցս ի դաշտ զի՞ խնդրես.
Ընկե՞րս զինուց ու ազանց, փառաց ողջատես.
Գըլուխք զօրից սպառազինաց ներնջեն 'ող քեւ
Որք յաւիտեան ոչ կանգնեսցին ոտ արեւ.
Պերճանզամք յայգուն ի յաղթ դիմեալք առա
Ընդդիմամարտք բեկան զինչ մայրք դիտապատ.
Մինչ համախումբ երիտասարդ Եւրոպայ
Ջարանց արւոյն լուծանէր վրէժ անոպայ.
Այն որ սփռէր տիեզերաց արհաւիրս՝
Աստ ծանեաւ զլոյս մարդոյ եւ ճիգն առաւիրս։
Լանց եւ նա, անցին յաղթեալ եւ յաղթող...
Ո՞ւմ կայ դէտակն արձանս՝ առիւծս այս կոթող։
Առեւծ, գոչեա զունայնութիւն մարդոյս հէգ,
Եւ ցոյց մ'յարիւնքս հեղեալ փախչիմ սըրատեկ։

Հայր Ալիշան սրտաբեկ կը փութայ ի Փարիզ. Հոկտեմբեր մեկին նա մայրաքաղքին մեծ մատենադա-

բանին մէջ, իրեն ցանկալի գրչագրական հետազօտու-
թեանց զբաղած էր. Հ. Գ. Այվազովսկի զինքը գրչա-
գրաց գիւտապետ Բենոյի կը ծանօթացընէ. Անպատում
ուրախութեամբ կը թերթէ գտած Խորենացւոյ երկու
ճառերը, Նամակը, գաստառակի պատմութիւնը. Մատե-
նադարանէն Մուրատեան վարժարան կը տանի Երու-
սաղեմի ժամատեղաց երկաթագիր խիստ հին ճաշոց
մը զոր երկար ատեն կը քննէ. Մի քանի օր կը յա-
ճախէ յիշեալ գրչագրաց մատենադարանն և կը քննէ
զանազան Ցօնական գրչագիրներ. Քննելով ճառընտիր
մը, կը գտնէ Աբգարու թուղթը, որ իրեն Ղերուբնայի
պատմութիւնը կը թուի. — Այս իրեն սիրելի քննու-
թեանց երկար ժամանակ չի կրնար զոհել, հակա. 17
վանքէն զինքը կը կանչեն. Նա այլ եւ առանց յապաղե-
լու կրօնական հնազանդութեան կոչին հպատակելով, ու-
ղեւորելու կը պատրաստուի. Նոյն ամսոյն 22ին Փարիզէն
կը մեկնի. Ճանապարհին տեսութեան արժանաւոր քա-
ղաքները կ'այցելէ. Զուիցերիայէն Աւստրիոյ սահմանը
անցնելու ատեն, Հաննաի կողմերը, սահմանագլխի պա-
հապանները Հ. Ալիշանի խալխա մտնելը կ'արգիլեն, ըսե-
լով որ անցագիրը Աւստրիոյ դեսպանէն ստորագրուած
չէ. Իր քով գտնելով մեր հայրենիքի «Ողբամ զքեզ»
նկարը, կը կարծեն թէ նա մի Իտալացի յեղափոխական
է. Նա կը բացատրէ պատկերին ինչ ըլլալը և իր վի-
ճակը. անոնք հազիւ մի քիչ կը համոզուին. բայց տա-
կաւին կը պնդեն անցագրի յիշեալ խնդրոյն համար.
Ձմեռ էր, եղանակը վայրագ և ինքը կը գտնուէր Սրլի-

կէն սառնամանիկ լերան սարոսը։ Այդ դէպքը իրեն մեծ շուարում՚ կը պատճառէ. շուտով ի Միլան նամակ կը հասցընէ, որ այդ արգելքը վերցընեն․ իր տաղնապը և տխրութիւնը փարատելու համար, կ'այցելէ Հռենոսի հեղեղատին, ուր կը դմայլի բնութեան վայրենի տեսարաններուն վրայ։ Եւ դէպքը արդէն իսկ բանաստեղծական խանդն բորբոքած ըլլալով, նա կ'երգէ իր գիտած Հռենոսը, և այն երգը կը հնչեցընէ իր տաղնապին գառն շեշտերը. մարդիկներէն զզուելով կ'ապաստանի տիեզերայ բնութեան.

Ի մարդկանէ զզուեալ՝ կամ առ քեզ բնութիւն, ապաստան,
Ընդ դիւր եւ զառ բլրակիս նստեալ անոք բացական.
Աչք թաժանեալ ընդհանուր՝ խնդրեմ սրտիս մխիթար.
Շատ աս 'ննուկ կըրեաց, ո՛հ, խիթամ՝ պայթի չարաչար…
Ցանկայր վայրէ չերկընչիս, Ոգի, ուր դու՝ անդ պարտէզ.
Հա՛պ՝ ա՛ռ ըղձալաց քո յերկնէ, եկ, փաղեա՛ 'նդ վախս բարձրադէզ,
Կա՛ց թեկնածու, անվըկանդ վահանդ սրտիս հովանի.
Եւ յերկիրեա զձայն ողբոցս յարձակ ցասոց զընտանի:
Լուրջ հրաման զրաւ ինձ եղեալ զգաստ իմոց սիրելեաց՝
Ի բիւրաւոր յիմ վայրէն յարեւմըտից ծաղ վարեաց.
Եւ մինչ ժըպտեալ յամրըն թաղ՝ թանայր ըղձեաս հայրենեաց՝
Եւ ես սիրտ լայնէի սիրակարօտ ընտանեաց,
Եւ վերացեալ իբր հեղեղ յորդեալ Հռենոս փրփրավառ
Գըլել գլորել կարծէի 'նդ ատիբ ողջոյն խոկ դաշխարհս,
Եւ գեղեցկին Հելուետեաց տըեալ ողջոյն համառօտ՝
Ցիմ եւ դյոդունց փութայի լընուլ զերկայնըն կարօտ,
Ու այն ինչ զահեղն Ըռպելեան թողեալ առհման ի թիկանց՝
Զիտալականն առնուի հով ջերմագոյ գեատափանց.
Եհէ, կարծեալն այն կոպար պանդըխտութեան՝ լեառըն ժանտ՝
Երջանկութեան ինքնին, ո՛հ, եղեւ նա 'րձան աղամանդ…
Ոչ նա, զի ծնունդս է բնութեան, թէպէտ եւ ցուրտ եւ խոշոր,
Այլ խըծբիծ մարդկանեաց իրաւանց՝ եդ զայն խոժոռ.

Ի մէջ սառին՝ սառնագոյն պատգամ ըղձիցս իմ եղոյծ,
Սեւացաւ ինձ աշխարհս, եւ բաղդ ընդդէմ՝ իւր կափոյց...
Դարձուցի զաչս ի մարդոյ, եւ անկաւ յիս յուշ սիրելեաց.
Եւ խոյս տուեալ ի շինէ՝ դիմեմ լերանց եւ ալեաց...
Արդ ի բարձու գահուանդէկս կոչիմ կոթող կենդանի՝
Զըդեալ այս յուսահատ ըղքընութեամբ վայրենի.
Զինադադարն ուր լերինք սառն ու անտի վիրամբարձ՝
Ցուս ջարակոյտ կըրեն պարս ոստահապաղ եղեւնեաց.
Լեռնահովիտք տագնապեալք ձըմեռնատանջ հիւսիսաւ՝
Ղօղեն ըզխուռն գալարիս ընդ եղեւնեաւ հովանեաւ.
Հօտն յամրահեմ թափառիկ խնդրէ գլխոյն անդ ճարակ,
Մինչեւ պատեալ համօրէն ի համագոյն բողխտակ.
Տըւարածիկն ի բացեայ նըստի անհերգ ու անըրինգ՝
Վարկպարազի ակնարկեալ. եւ արձագանքք կան լըռինք.
Հազիւ ծաղիկ մի յայտնի իբր աշնայնոյն վերջապահ,
Սակայն եւ նա ոչ տեսցէ գարշալուսոյն փաղուի պահ.
Մեկնեալ երթեալ է յովտէս սիւգ հարաւոյ ալբատուէտ,
Եւ գուսանքն օդայինք չըւեն դընան զիւր ըզհետ.
Կողերք ամայիք ցըրտատարուու ճարճատին՝
Մոլորեալ հաւուց լեալ պատսպարանիկ ինչ յետին.
Սեւատարած լոկ ագռաւ բանեայ կառաչ տխրարար,
Օրհասական ըղձութեան մահահրաւէր փողահար.
Արեւ դանդաղ երեւեալ ընդ ծագ լերին բալադէմ՝
Զափէ գշըրջանն համառօտ թանդաղելով տըտամահեմ.
Եւ ամպք յանախ յաչադկոտք՝ ճառագայթիցն արկեալ ցանց՝
Նըշաւակեն մերկութեամբ ըղճակատ հօրըն հրապանձ.
Տեսեալ զըսառոյցն ցըրտին՝ հաւն ընտանի անպատկառ
Ի գիւղէն ձայն ածէ սուր, նըշան բըքոյ ամպամար.
Իսկ ես մեկնակ նըստիմ դէտ մահատարուու ըղձութեան,
Եւ ցուրտ նորին ձաղկակէծ ազդի յիրանս իմ հա՛մայն.
Ու ահա գալարք եւ ոտնք կապուտք ծառոց հողմահալած՝
Վայր մի զատիպըրս քերեալ՝ երթան ի սար մըգամած.
Տերեւ մ'արուգ եւ անպէտ, այլ սիրոս ի նա զօրովի.
Ճակատս յարմունկըն պըշնում՝ մինչեւ անհետ չերեւի.
Ու ոչ անարատօր՝ արկեալ զաչս այլուր՝ խընդրեմ ինչ ըղբօս,
Եւ ըսփոփանս ինձ միակ հառաչաձայնս է Ջահնաս...,
Զի ողբաս. գեա. գանջատեա՛լ առուակըդ՝ արդէն անյարիր՝
Հանգոյնս աչաց ըըլշակաց պաղս եւ հապաղս ու անխըլիրս.

Մինչ ինքն յերկուց լեռնատար գահից կլորեալ հուն պղտոր՝
Վազէ ի վայր վազես զառ գըլխս յանդունդս անհուր.
Սիրտ ի թունդ, շունչ ի բերան՝ ես կըռուեալ յեզըր վախին՝
Ի վիհն հայիմ կարկաջուն՝ ուր ջուրքդ եռան եւ պուղին,
Մերթ ընդ պարիսպս բախեալ եւ փրփրացեալ աննահանջ,
Որպէս վիշապ մ'անարգել սողեալ գնեալ քաջալանջ,
Մերթ տարածին ի ծըմակս եւ անկանին ի ծործորս,
Մերթ ի խոխոմս անձկացեալ՝ մինչեւ մի վազ առ հաւուրս,
Մերթ լայնալիր՝ լուծ առեալ բազմակամար կամըրջաց.
Նաւուց զօլով հանապարհ, եւ լիր ամուր քաղաքաց:
Այլ յետ բնաւին՝ զի՞ լինիս, յաղթեալ ժայռից եւ լերանց
Ագարակի սպաս հարեալ ու աւիթ չինից մեծագանձ,
Հազար փարախ քարշելով ըղմըկանունս մէր եւ ջունջ,
Ջեռեալ ռաւմանս աշխարհաց եւ ծածանեալ յերկրի ունչ,
Ո՛հ, ի ծո՛վը որկրամէտ անկեալ թափես հիքաբար,
Եւ քոյցը ալեակք ի գառինս յուզեալ՝ վատնին վայրապար:
Այս բաղդ Հռենոս, զոյր դիտեմ ի մէջ կըրճից ոռոգան,
Ու աչօք մըտացս որոնեմ ըղձուակ զանկարծ ծածկարան...
Այլ, ո՜հ, ի՞նա ածաւոր՝ զոր ազգես՝ դի՜ս յարավար,
Զիցե՞ն ընթացք ասահանացդ՝ ինոյ կենացըս տխպար.
Ցես ընդ կըրից այսքաննեաց վարելոյ զսիրտ իմ ընդ վախ,
Ցես մըրցելոյ'նդ այնքաննեաց տարերց ժայռից ոզեքախ,
Ցես բիւրս հեղիկ մընչանաց եւ սակաւուց որոտմանց,
Ցորժամ աւ՞ագս ալէհոս ազատական բացցի անց,
Ցես բազմակերպ ընթացից՝ ինձ ի՞նչ եղցէ յանդիման...
Ա՜հ, զարհուրիմ. Ոգի՜, երթ կափո՞ ինձ զայդ գերեզման:...
Այլ բուռն է մահ. ո՜հ, ազդես դու 'ընթն ըղձուակ բան սըրտիս,
Ու ածեալ ըղվէմս ի վերայ՝ նիստ առդ պահակ Պանդըխտիս...

*Վրդովուած է Հայր Բանաստեղծը. անցաւորի այն խընդիրը ապօրէն օրէնք և բնութիւն համարելով յուզուած դարձեալ կը հնչեցնէ իր քնարը.*

Քընար լարեմ ի աւրոստ առ սաստամանեաց ի Սըպէյկէն,
Մուսա՜յք. մի զարհուրիք, լըռել երբէք՝ ձեզ մեղք են.
Օրէնք ապօրէնք զիս կաշկանդեցին ի ձեռաց զահ.

Յորում ձըմեռըն մերձաւոր, եւ հեռագոյն՝ դոհ եւ ահ·
Օդք եւ գետոյն համաձուլեալ յաղեղակապ եղեման
Յաւերժական կանգնեն կոպար Նախից չըքնաղ բընութեանս։
Ա՜հ, բընութիւն, ա՜հ, հայրենիք, ի միասին էք դուք աստ,
Յանկուցն իսկ յոյս՝ չիշխէ խըզել ըղձամաղձապատ առագաստ·
Յեղանակք արփայի՛նք ոչ հոլովին աստ զանազան,
Ձըմեռըն ձեր ու անմեռ նըշանի յաման ի պայք գերեզման·
Վաղէ արտօսր յաչս՝ այց ոչ ինչ բաց ի բըքոյ երեսին,
Եւ յերկիր անկեալ, աւա՜ղ, եւ հուր կայլակքն իմ սառին։
Ջուր՝ բիբք զինեալք ի վրէժ՝ յուղին զաղատութեանըն սահման,
Եւ չըգօրեն քըստմ քայլ. ձիւն հալ, ձիւն շարժ, ձիւն ամենայն։
Եւ զի՞նչ յայսքան արհաւիրս արկ զիս հեռի յիմ բարեաց. —
Մտածութիւն միոյ դըծի զոր բանութիւն պահանջեաց·
Ո՛վ նախանձ նախանձ, զաղատն երկիր դու մեզ բանտ կարգես,
Եւ անպատկառ ի բըքաղեղ լերանց իսկ ծայր՝ յար սփռես·
Ուր չիք զօպա նըկուն, ուր ոչ տարակն իսկ անզգ՝ յուզէ զիս,
Դու զուղեւոր առաջխաղնհեկ կապես քան կապս յերկաթիս·
Գէթ թէ փոքու իւիք խաւարն կանգնեալ էր տան քո աղաւ,
Ի հեղ հովտի կամ ի ստորոտ իսկ հըսկայից ձիւնազանց,
Ջուրկ յընկերաց՝ ըղփոփէի արդեօք տեսլեամբ բընութեան,
Եւ ոչ զկայտառ կեանս յօրհասին մատնէի հալ ի սահման։
Ո՞ւմ եւ մեղայ, զի՞ գործեցի չար, ընդէ՞ր բանտս ահաւոր·
Հայրենեաց հառաչելով՝ հերձաւ հոգաղն իմ բոլոր,
Ընդ սառն եւ քար բացի՛ նձ չափել ու ՚նդ բընութիւն ահաբեկ,
Եւ դուք մարդիկ ըլմարդիք՝ դուք զիմ հայրենիսն ինձ փակէ՞ք...
Ա՜հ, անէծք ցուրտք քան ըզսառայցս աղցեն... զո՞, զի՞մ եղբարս.
Քաւ ինձ ըղմարդ անիծանել. անիծեա՜լ կիրք չարաբարս,
Որ ըզպըրդեալ յաստուածավայր սիրտ մարդկութեան եդին բոյն,
Քան ըղժայռս եւ վազերս յարդարեալ զայն խըստագոյն։
Ո՛վ արութիւն դու զօրաւիգըն բոլորից ուղղութեանց,
Կարկա՛ռ առ սիրտ զաշդ անըղկուն, զի մի պաղի յեղեմանց.
Բազում սիրով վառեալ է սա եւ քաղցր յուշովք հայրենի,
Ա՛հ, մի զըձձեալ եւ թերթաթափ՝ չիջցէ ի ցուրտս այս սահմանի։

Երկու օր բնութեան գեղեցիկ տեսարաններու մէջ Թափառելէն յետոյ, կը ստանայ իտալիա մտնելու ապա-

տութիւն։ Աւստրիոյ դեսպանին ստորագրութիւնը անցագրին մէջ չունենալն իրեն յանցանք համարելով, պահապաններէն ներողութիւն կը խնդրէ. և ուղեւորութիւնը կը շարունակէ. Հոկտ. 4ին կը հասնի Վենետիկ։

Նոյն ատեն իրեն կը յանձնուի Ուխտիս ներկայ վեհի դասուն դաստիարակութեան պաշտօնը. զոր ամենայն խնամք կը սկսի կատարել։ Եւ այն օրը որ նա այդ պաշտօնը կը սկսի, իրեն կ'որոշուի նոր և աւելի սափ-պողական պաշտօն մը։

## Հ. ԱԼԻՇԱՆ Ի ՓԱՐԻԶ

Միևնոյն տարիները Պարսաւագիր և Ջատագովութեան անուանեալ հանրածանօթ տետրակներու պատճառաւ՝ վանքիս և Փարիզու մեր միաբաններու միջեւ տըխուր խրամատ մը բացուեր էր. և խզուած էր ներդաշնակութեան կապը, զոր զօդելու համար, վանքիս վարչական ժողովը կ'որոշէ որ Հ. Ալիշան իբրև պատգամաւոր Միաբանութեան կողմէն երթայ Փարիզ, խօսի մեր Հարց հետ և պարզէ խնդիրը։ Ուստի դեռ հազիւ երկու ամիս վարած հոգեւոր դաստիարակութեան պաշտօնը, ի լուր հնազանդութեան ձայնին, դարձեալ կ'ուղեւորի ի Փարիզ. մեկնելու օրը (1853 12/1) իր քահանայացու աշակերտաց հրաժեշտի ճառ մը կը կարդայ. սիրելիներէն հրաժեշտը իրեն համար շատ դառն էր, և այդ դառնութիւնը հնազանդութեան սուրբ ձայնովը կը ջանար քաղցրացընել։ Վեց օրուան մէջ Փարիզ կը հասնի և փութանակի իր պատգամաւորութեան գործը կը սկսի կատարել։ Այս ուղեւորութենէն կ'ուզէ օգտուիլ, — դարձեալ հայ ձեռագիրներ հայ սուրբերու սրբավայրեր փընտռելու կը զբաղի։ Ս. Ժընէվիէվի մատենադարանին մէջ կ'ընդօրինակէ Աւետիք պատրիարքի մի քանի յիշատակարաններ։ Շօդեկառօք կ'երթայ ի Բեթլիվլիէ մօտ Էգամբ քաղքի, կը գտնէ Ս. Գրիգոր Հայկազնոյ տաճարը, ուր ամփոփուած են սուրբին նշխարները։ Կը տեղեկանայ որ

նաև Էգուի (Estory) գիւղի մէջ կը պահուին հայ սուրբին նշխարներէն. Հեռաւոր հոն կը դիմէ, ժողովրդապետէն կ'առնու սուրբին կենսագրութիւնը զոր կարդալով կը համառօտէ։ Գիւղի երէցը կը պատմէ որ 1641էն սկսեալ Հայ սուրբը հոն կը տօնուի։ Նոյն տեղերը կը տեսնէ հայ սուրբին յիշատակին նուիրագործուած մի քանի մատուռներ և անոր քարայրը, ուր եօթը տարի ճգներ է. տեղւոյն աւագերէցէն կ'իմանայ որ այս քարայրին ուխտի բերեր են անդամալոյծ տղայ մը և հայ սուրբին աղօթքով տղան ողջ առողջ դարձեր է։ Զատկի երրորդ օրը այն կողմերը ի պատիւ սուրբին մեծ հանդէսներ կը կատարեն, և տարուան մէջ մի քանի անգամ՝ ի յիշատակ սուրբին ուրիշ տօնախմբութիւններ ալ կը կատարեն։ Էգուի գիւղի եկեղեցւոյն մէջ կը տեսնէ Սուրբին հողանիւթ եպիսկոպոսի զգեստով արձանը։ — փարիզ վերադառնալով իր պատգամաւորութեան համար ինչ որ պէտք էր կը կատարէ, և ապրիլ 20ին դէպ ի վանք կ'ուղեւորի։ Լիոնի հասարակաց մատենադարանին մէջ երեք հատ ձեռագիր կը գտնէ, իրեն կարեւոր եղածները կ'ընդօրինակէ։

Ճենովա հասնելուն կ'երթայ Ս. Բարթուղիմէոս վանքը, ուր ժամանակին Հայ կրօնաւորներ կը բնակէին*. հոն հայ տապանագիր մը կը գտնէ և կ'առնու եկեղեցւոյն մէջ պահուած Քրիստոսի դաստառակին պատկերը։ Վանքին նոյն ատենուան Բառնաբեան միանձունք շատ խնամքով

* Հմմտ. Քաղաք. Աշխարհագր. էջ 319։

*զինքը կ'ընդունին։ Վենետիկ չհասած, Բաւիայի և Միլանու մատենադարաններուն այցելելով, կը գտնէ մի քանի հայ գրչագիրներ, ուսկից կարեւոր կտորներ կ'օրինակէ։ — Մայիս 3ին վանք կ'ըլլայ. կատարած էր պատգամաւորութեան պաշտօնը։*

# Հ. ԱԼԻՇԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿ

*Կրկին ճամբորդութենէն նա վատուժցեր էր. իրեն ծանր պաշտօններ կարելի չէր յանձնել. սակայն այսու հանդերձ զինքը բոլորովին անգործ չէին թողուր. արդէն որոշուած էր, որ Փարիզէն դառնալէն վերջը, զինքը վանքիս ուսող աշակերտաց դաստիարակ կարգեն. սակայն Հ. Ալիշան այն ատեն այդ պաշտօնը յանձն առնելու տրամադրութիւն չունէր, և արդէն իր փափուկ կազմութեան և մանաւանդ մելամաղձիկ բնաւորութեան համար պատասխանատու դաստիարակութեան պաշտօնը կրնար վնասակար ըլլալ. ուստի աւելի փոքր վարչական պաշտօն մը կը յանձնեն. զինքը դարձեալ քաղքիս Ռափայէլեան վարժարանը կը դնեն։*

*Նոյն ատեն (1853 Նոյեմբ. 10), վարժարանի տեսչութիւնը կը վարէր Հ. Ալիշանի սիրելի դասընկերն Հ. Աբրահամ Ճարեան. Հ. Ալիշան վարիչ կ'ըլլայ ոչ ամբողջ վարժարանին, այլ աշակերտաց մէկ դասին**։ *Այս*

* Հ. Ալիշանի դաստիարակութեան և կրթութեան յանձնուած աշակերտներն են

| | |
|---|---|
| Յովսէփ Նազըճեան | Յակոբ Բուլճեան |
| Թովմաս Թէրզեան | Յովհաննէս Շահինեան |
| Յովհաննէս Ալթունեան | Յովհաննէս Թաւուքճեան |
| Դաւիթ Թրեանց | Գէորգ Ապուլլահեան |
| Պօղոս Մաղաքեան | Յովակիմ Սրապեան |



*Թովմաս Թէրզեան*։

պաշտօնին մէջ բանաստեղծ Նահապետը շուտով կը սթափի. քերթողներու բնատուր մաղձոտութիւնը կը բուժի. իր ընտանի և քաղցր բնաւորութեան համար, աշակերտաց շատ հաճելի կ'ըլլայ, անոնք իր սենեակէն, իր դրասեղանէն անբաժան կ'ըլլան։

Վարժարանին մէջ նա կը սկսի պարապիլ հնագիտական լուրջ աշխատութեանց, յարատեւութեամբ՝ ապագայ հրատարակելիք մեծահատոր հնախօսական, պատմական և աշխարհագրական երկասիրութեանց համար, գրական ճոխ առաջններ կը ժողվէ։ Վարժարանի աշխոյժ աշակերտները՝ իբրև ազգին կենդանի պատկեր կը ներկայանան իր քնարերգու վառվառուն երևակայութեան, որով նա անդադար կը գրէ քերթուածներ, ճառեր և ամէն նշանաւոր հանդիսաւոր օրերու առթիւ կամ բնութեան հաճոյական տեսարան մը տեսնելուն, կը թրթռացնէ իր աշխոյժ կիթառը։

Ներդաշնակ էր, նախանձելի իր այդ վիճակը։ Վարժարանի մեծ պատասխանատուն Հ. Ծարեանն էր, որ դաստիարակութեան մէջ ամենաքաջ ըլլալով, կրթական գործը փառաւոր կ'ընթանար. Հ. Ալիշանէն զատ վարժարանին մէջ նոյն ատեն ուսուցչական գործին թեւ ու

Մկրտիչ Աճէմեան　　Ռուտոլֆ Այտընեան
Սրապիոն Թղլեան　　Մկրտիչ Բարեկենդանեան

Այս աշակերտներէն իբրև բանաստեղծներ ծանօթ են ՊՊ. Թէրզեան և Աճէմեան։ Հ. Ալիշան անոնց ներշնչեր է Պինդարի քնարերգու ոգին. և անոնց սորվեցուցեր է նախնեաց լեզուն։ Այդ երկու բանաստեղծները իրենց գրական համբաւը Հ. Ալիշանի կը պարտին։

թիկունք էին գիտուն թուաբանագէտն Հ. Հմայեակ Վ. Գաղիկեան և ազդեցիկ դաստիարակն Հ. Եւգ. Վ. Ոսկանեան։ Այս չորս միաբաններու օրով, վարժարանը պատկառելի էր. ամէն միաբան կը ջանար անձնանուիրութեամբ իր գործը լաւ կատարելու։

Հ. Ալիշան իր ընդունակութեան և հլու ու համեստ բնաւորութեան համար, ամենուն սիրելի էր. ամէն մի դաստիարակ կը ջանար իրեն օգնական ունենալ այդ համակրելի միաբանը։ Հ. Աբրահամ Ճարեան թէև շատ անգամ իր այդ կորովամիտ օգնականէն չի զրկուելու համար ամէն ջանք թափեր և յաջողեր էր, սակայն երբ Փարիզու վարժարանը հարկ կ'ըլլայ իր նախկին փառքին հասցնելու, և այդ պատճառաւ երբ նոյն վարժարանի տեսուչ Հ. Ռափայել Թրեանց զՀ. Ալիշան իրեն օգնական կը խնդրէ, և Ուխտին վարչութիւնը նոյն խնդիրքը օրինաւոր և անհրաժեշտ կը տեսնէ, այն ատեն՝ Հ. Աբրահամ կը զրկուի իր սիրած օգնականէն։ Հ. Ալիշանի համար նոյն էր երկու վարժարաններու ալ պաշտօնը. նա համահաւասար կը սիրէր երկու վարժարաններն ալ, վասն զի հոն կրթուող աշակերտները իր սիրած միենոյն ազգին հարազատ զաւակներն էին. իրեն համար երկու աւագ տեսուչներն ալ համահաւասար սիրելի ու յարգելի էին։

Հաստատակութեան և ազգին գործին բոլորանուէր պատրաստական աբեղայ զինուոր մ'էր. կ'ընթանայ հոն, ուր հնազանդութեան ձայնը կը հրամայէ։ 1858 մայիս 10ին վենետիկէն դէպ ի Փարիզ կ'ուղեւորի։ Ի Մին-

խէն՝ կը գտնէ զՎինտիշման* Հայագէտը, որուն կ'ընծայէ իր «Նուագներէն» մի օրինակ. և հետը հնարանական գիտութեան վրայ երկարօրէն կը խօսի։ Գրատան մէջ կը քննէ հայ հին և նոր գրչագիրներ։ Այս անգամ ճանապարհորդութիւնը շատ երկար չի տևեր։ Նա մայիս 19ին արդէն Փարիզ Մուրատեան վարժարանը կ'ըլլայ և իր պաշտօնին գլուխ կ'անցնի։ Հ. Ռափայէլ խրախուսելով այս ժրաջան օգնականի եռանդուն գործունէութեանն, աշակերտաց յառաջադիմութեան համար, նորանոր միջոցներ կը գտնէ, ստէպ քննութիւններ կը կատարէ, քաջալերական մրցանակներ կը բաշխէ։ Աշակերտք տեսնելով իրենց վարիչներու անձնանուէր ջանքը, դեռ աւելի հոգի առնելով, կ'աշխատին։ Այդ երկու քաջ վարիչներու օրով, յառաջադէմ աշակերտաց թիւը կը բազմանայ**. այդ ժամանակ ծանօթ բանաստեղծ Մ. Փորթուգալ Փաշայ իր կորովամիտ ընկերներու մէջ ամէնէն քաջը կը հանդիսանայ, և երբ իր դասընկերներն 1858 դեկտեմբերի մէջ աւարտելով իրենց ուսումնական ընթացքը, հայրենիք կը վերադառնան, ինքը կը փափաքի մի տարի ևս վարժարան մնալ, որպէս զի դեռ աւելի հմտանայ իր սիրած ուսմանց մէջ։ Բանաստեղծ Փաշան իր այդ ժամանակները, Հ. Ալիշանէն շատ օգտուեր

* Հռչակաւոր գերման արեւելագէտ հմուտ աստուածաբան, մեզ Հայոցս ի միջի իր զանազան հեղինակութեանց, ծանօթ է իր հետագայ գրութեամբ «über deu arischen Ursrung der armenischen Sprachen»; Munich, 1844:

** Հմմտ. Բազմավէպ 1858. էջ 167, և 353։

է. որով յանհունս երախտագէտ մնաց իր բանաստեղծ ուսուցչին. իբրև մտամբ Նահապետին լուսանկարը իր ծոցը կը պահէր. սէրը փոխադարձ էր. Հ. Ալիշան ևս յատուկ գորովով կը սիրէր իր այդ սիրելի ուսումնատենչ աշակերտը։

Հ. Ռափայէլ Թրեանց՝ իր Նոր օգնականի հետ քիչ ատեն կը մնայ։ Վարժարանը սկսած էր նախանձելի ուղղութեամբ յառաջ ընթանալ. անողորմ, տանջող և Նահատակող հիւանդութիւն մը զինքը անկողին կը ձգէ. որով Հ. Ալիշան միանգամայն թէ տեսչի և թէ ուսուցչապետի պաշտօն պէտք էր վարեր. և կը վարէ։ Տեսչին հիւանդութիւնը կը ծանրանայ, կը սաստկանայ. Հ. Ալիշան գերմարդկային գուրգուրանքով պահապան հրեշտակի մը պէս չհեռանար իր սիրելի պաշտօնակցին մահճէն. բժիշկներու խնամոց հետ, կը խառնէ իր անսպառ աղօթքները և աղերսները. սակայն ի զուր. հիւանդը երկարօրէն տանջուելէն և վիրաբուժներու խարաններու և սրերու ըկող փորձերուն ենթարկուելէն յետոյ, 1858 դեկտեմբեր 9ին կը կնքէ իր մահկանացուն։ Նա հայ մանկտւոյն 23 տարի լուրջ և ընդունակ դաստիարակութեան պաշտօնին մէջ յոգնած էր. կը դիմէր հոն՝ ուսկից կ'ակնկալէր իր արդեանց պսակումը։ Հ. Ալիշանի զգայուն սրտին համար այդ կորուստը դառն հարուած մ'էր. զայն կ'ողբայ իր մէկ դամբանական գեղեցիկ ճառով՝ զոր նախընթացաբար յիշեցինք։ Այդ ճառով նա ցոյց կու տայ առ իւր աւագ պաշտօնակիցն ունեցած անկեղծ յարգանքն, սէրն և անոր վրայ ունեցած մեծ համարմունքն. Նա նոյն ճառով կը




ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ Ի ՓԱՐԻԶ.

պարզէ հանգուցելոյն ազնուական բնաւորութիւնը, դաստիարակիչ մեծ ընդունակութիւնը, միաբանութեան մէջ անոր ունեցած հազուագիւտ գեղեցիկ ձիրքերն, և թէ նա որքան ի զուր և սխալմամբ զրպարտուած է մի քանի թշնամիներէ։

Միաբանութիւնս դՀ. Ալիշան հանգուցելոյն ծանր պաշտօնին արժանաւոր յաջորդ գտնելով, զայն Մուրատեան վարժարանի տեսուչ կը կարգէ։ Սա այլ ես այդ պաշտօնին մէջ կարելի էր քաջ փորձեալ մը համարուիլ. երկար տարիներ վարժարանական ընթացից մէջ կենալով, մանաւանդ որ իր հետ ունենալով ձեռնհաս դաստիարակներ, անոնց կրթական ուղղութեան հետևելով, կը սկսի փարիզու վարժարանի տեսչութեան ծանր պաշտօնը. իրեն օգնական կ'ունենայ դՀ. Գրիգորիս Վ. Մէրճանճեան, որուն հետ վենետիկէն եկած էր, և Հ. Սուքիաս Վ. Պարոնեան, այս երկուքն ալ դՀ. Ալիշան կը յարգէին, որով անոր գործին ամենայն եռանդեամբ թև. թիկունք կ'ըլլային։ Իր տեսչութեան ատեն, վարժարանը դեռ աւելի համակրելի կ'ըլլայ. տեղւոյն գաղթական ազգայինք, վարժարանի հետ ջերմ և ընտանի յարաբերութիւն կ'ունենան։ Միայն իր անունը բաւական էր. ժողովուրդը գիւթուած Ալիշան անուան արձագանքէն, կ'աշխատէր իր զաւակը այդ նախանձելի տեսչին աշակերտ ընելու, գիտնալով որ իր հովանաւորութեան տակ, զաւակը հայրենիքէն դուրս, հայրենիքի անկեղծ հրավառ երազներու մէջ պիտի ապրէր։ Դեռ հազիւ միամեայ տեսչութեան պաշտօնը վարած էր, կը կատարէ աշա-

կերտաց միջանկարաշխութեան հանդէսը (16 յունուար 1859ին)։ Նոյն օրը ի ներկայութեան փարիզու նշանաւոր անձանց և ազգային բարեկամաց, կը կարդայ վերոյիշեալ դամբանական ճառը, յետոյ աշակերտաց քաջալերական մետալներ կը բաշխէ։

Հ. Ալիշան իր մէջ ուսուցչութեան, և մէջ տեսչութեան տանն, ամէն պարգևաբաշխութեան, մինչև մի մի հմտալից ազգային պատմական կամ հնախօսական ճառ և կամ քերթուած կարդալու սովորութիւնն ունեցած է, և այդ ճառերը առ հասարակ, ամէն անգամ լոյս տեսած են «Բազմավէպ»ի մէջ։ Յիշեալ պարգևաբաշխութենէն վերջը, դարձեալ նոյն տարին, Օգոստոս 1ին, միևնոյն հանդէսը տեղի ունենալով, մեծանուն հանդիսականաց առջև, ուր ներկայ էր իբրև նախագահ հանդիսին Պ. Դոյլըր գաղղիացին, Հ. Ալիշան գաղղ. լեզուով խոր հմտութեամբ կը ճառէ Հայկայ Թուականին վրայ*։

Ուսմանց ծրագիրը բաղդատմամբ այժմեան ազգային բարձրագոյն վարժարանաց, աւելի գերազանց էր. ասկից կէս դար առաջ Հ. Ալիշանի վարած վարժարանի մէջ, կ՚աւանդէր տարրական և միջին ուսումներէն զատ՝ նաև իմաստասիրութիւն, իրաւագիտութիւն, քաղաքական տնտեսութիւն, իւղաներկ դիմագծութիւն, տեսարանագծութիւն, երաժշտութիւն. այս յետին ուսման մէջ աշակերտներէն մին Յակոբ Թօմասեան այնքան կը յառա-

* Այս ճառն իր աշակերտներէն մին թարգմանած է, հրատարակութիւնը տես «Բազմավէպ» 1860 յունուար 1։

ջանայ, որ պարգեւարաշխութեան օրը, իր ինքնահնար Պարը (Mazurka) կ'երգէ, որ նոյն ատենները Կ. Պոլսոյ մէջ տպուած կը ծախուի ալ*: Այս եզակի նորութիւնը տեղի կ'ունենայ 1861 օգոստոս 12ի պարգեւարաշխութեան օրը. այն հանդէսին ներկայ կը գտնուին փոքրիկ Վեհ-Արքան, նշանաւոր արեւելագէտներ, ազգային և օտարազգի մեծանուն հանդիսականներ: Հ. Ալիշան գործեալ ազգային ճառ մը կը կարդայ գաղղիերէն, և ամբողջ հանդիսականաց ուշադրութիւնը կը հրաւիրէ Հայաստանի բնական, ճոխ յայտնի և թաքուն հարստութեանց վրայ: Նոյն օրը հանդիսականք մեծ հետաքրքրութեամբ կը զննեն վարժարանի նոր ընթացաւարտ աշակերտներէն Յակոբ Տամտանեանի և Մկրտիչ Լիմոնճեանի իւղաներկ գեղեցիկ նկարներն: Այդ աշակերտներէն առաջինը, դեռ ողջ է, արտասահմանի մէջ կ'ապրի, մինչև վերջ անհունապէս սիրած է իր դաստիարակ Հ. Ալիշանը, որուն կենդանագիրը շատ տեսակ գիրքով և հազարաւոր օրինակներով լուսագրեր է. բաց աստի, ան իր այդ դաստիարակի հնախօսական հրատարակութեանց, վրձնով և գրչով՝ երախտագիտութեամբ օգտակար եղած է**.

* Այս աշակերտը յետոյ իր մասնաճիւղը կը մշակէ Փարիզու Conservatoir impérial de Musique հաստատութեան մէջ. և Փարիզ գտնուած ատեն, վարժարանին ամէն պարգեւաբաշխութեան, մինչ նոր նոր երգեր հնարելով, զանոնք նոյն հանդիսին երգած են աշակերտք, և հանդիսականք գնահատած են այդ գեղարուեստի հայ երաժիշտ կարող պատանին:

** Յիշեալ նկարիչ աշակերտը նոյն իսկ ուսմանց մէջ քաջագոյններէն էր. Ուխտին երկհարիւրամեայ յոբելեանին առթիւ, ի նշան երախտագի-



Հ. Ալիշան եկեղեցական փիլոնով 15 մայիս 1861։

մինչև մահուընէ վերջը, դեռ Հ. Ալիշանին նամակ կու գար իր այս երախտագէտ և համակրելի աշակերտէն։

Գաղղիացի երևելի ուսեալ դէմքեր վարժարան յաճախելով, մեր ազգի մասին շատ գոհացուցիչ տեղեկութիւններ կ'առնուն։ Հ. Ալիշան իր բնատուր ձիրքով, օտարին զՀայաստան հրաշակերտ մը կը նկարագրէ և հայութիւնը հանճարեղ ազգ մը։ Անոնց կը պատմէ ազգին հին պատմութիւնը, փառաւոր և յաղթական անցեալը, ազգիս բնիկ ոգին իր ամէն ձիրքերով։ Ջատագովը բանիբուն հռետոր մ'էր, Հայաստան հրաշակերտ մը, կորուսեալ դրախտ մը ներկայացնելով, անոր գեղումն կը գիւթէր իր ունկնդիրները։ Հեռաւոր և խոր տեսութեամբ, վարժարանի հանդիսաւոր տօնախմբութեան օրերուն, Հայրենիքի մասին միշտ կը կարդար գրաւիչ գաղղիերէն ճառեր։

Միով բանիւ, Հայութիւնը Եւրոպային ծանօթացընելու համար, Հ. Ալիշան մեծ միջոց մ'էր. սակայն այս ազգային խնդրոյ կարևոր ծառայութիւնը կարճ տևեց։ վասն զի, նա Փարիզու մէջ հազիւ մի քանի տարի մնաց։ 1860 սեպտեմբերի մէջ, միաբանութիւնս կը կատարէ ընդհանուր ժողով, նոյն ատեն ինքն, ըստ կանոնի,

տուեան, մեզ նուիրեց երկու հատ մեծկակ ծաւալին իւղանկարի նկարներ։ Որոց մասին Հ. Ալիշան մահուընէն չորս օր առաջ, գեղարուեստի սիրահար՝ երիտասարդ վարդապետի մը դիտողութիւնը ուզեց իմանալ. Նա իրեն համեստութեամբ դիտողութիւնը ըրաւ. ինքն ալ իբրև արհեստագէտ մը, բացատրեց ամպերուն և ալեաց որ մասը բնական է և որը քննադատելի. լայնատարած էր իր դատողութեան ձիրքը, նա իբրև բանաստեղծ գեղարուեստի մասին երբեմն շատ լաւ դատաստան կ'ընէր։

Յ. Սորկուն, Յ. Տամատ, Յ. Ջամչ. Ա. Տէօվլէթ, Կ. Պագիրկ, Մ. Կիւրճեան,



Ռ. Տէրդաւթեան, Յովհ. Գալճը, Յ. Անանեան, Տ. Տոմինեան,

Աշակերտք Հօր Ալիշանի ի Մուրատեան վարժարանի.

այդ ժողովին ներկայ կ'ըլլայ։ Մի և նոյն ժողովին մէջ, կ'որոշուի որ Փարիզու տեսչութեան պաշտօնը թողու և գայ վանք հաստատուի, վարելով քահանայացու աշակերտաց վերակացուի պաշտօնը։ Թէև իրօք Փարիզու պէս միջավայրի մը մէջ, իր վարժարանական տեսչութիւնը բազմապիսի օգուտներ ունէր, սակայն նոյն առեն վանքին մէջ այդ իրեն առաջարկուած պաշտօնն ալ, դեռ աւելի օգտակար, նա մանաւանդ անհրաժեշտ կը նկատուի, վասն զի նոյն առեն այդ պաշտօնին համար, փորձառու և ձեռնհաս միաբան կը պակսէր։ Հ. Ալիշան չի մերժեր իրեն յանձնուած այդ նոր պաշտօնը, միայն վարչութենէն կը խնդրէ որ առ ժամն իրեն ժամանակ շնորհուի, որ Փարիզու վարժարանը դեռ աւելի կարգի դնէ և նիւթական գործերը կարգաւորէ։ Կը շնորհուի իր օրինաւոր խնդիրքը։ Յուսով կը վերադառնայ ի Փարիզ։ Վարժարանին յառաջացած աշակերտները 1861 Օգոստոսին, կ'աւարտեն իրենց ուսմանց ընթացքը։ Մի քանի տարի անոնք կ'օգտուին Հօր Ալիշանի եռանդագին դաստիարակութենէն. դէպի այդ պատկառելի դաստիարակին՝ անսահման համակրանք ցոյց կու տային։ Հ. Ալիշան իր այդ ձեռնասուն մտաւորական սանիկները (թուով 15) կ'առաջնորդէ մինչև ի Մարսէյլ. Բանաստեղծ Նահապետին համար իր սիրելիներէն անջատումը սաստիկ սրտաշարժ էր. իրեն փափուկ բնաւորութեամբ՝ աշակերտաց փափկացած սիրտը թունդ կ'ելլայ. կը տրոփէ դատիարակ Նահապետին կուրծքը, նաւը կը սուլէ, կը շարժի ու կը շարժէ սրտեր. ալեաց ծովփիններու հետ դող

*կը թնդայ աշակերտաց յուզուած կուրծքէն երախտագիտութեան որոտը կեցցէ Հայր Ալիշա̃ն… կը խշխշայ Նահապետին սիրական սիրտը, խաչի նշանով օրհնելով զանոնք, կը թոթովէ, «Երթաք բարեաւ. Սիրելի̃ք»…*

Մեկնի նաւն, երթայ եւ հեռանայ,
Լընուն աչք ծըխով զոր արձակէն,
Եւ ծով ի միջի մեր լայնանայ,
Հեռք ըղձեա ծածկեն…

## Հ· ԱԼԻՇԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿ Ի ՎԱՆՍ

Հրաժեշտի ցաւն յիշատակը կը նորոգուի մանաւանդ թէ կը բորբոքի, երբ հնազանդութեան ձայնի հնչելուն, 1861 Նոյեմբեր 3ին, փարիզու աշակերտները թողլով՝ վանք կը քաշուի։ Առանձնացեալ, ճգնաւոր, աշխարհքէ բոլորովին անջատ, և անոր բազմապիսի տուամներուն անփորձ բանաստեղծ կրօնաւորին համար, ձեռնասուններէ բաժանումը շատ սրտառուչ էր. այդ տեսարանները զինքը միշտ յուզած են։

Փարիզէն զատուելուն՝ անմիջապէս իրեն սահմանուած պաշտօնը կը սկսի. իրեն յանձնուած էր եօթը քահանայացու աշակերտներ, նա անոնց պէտք էր առաջնորդէր իրենց վիճակին կատարելութեան մէջ. կատարեալ կրօնաւորը, կատարեալ աշակերտներ կը պահանջէր։ Նա ըմբռնած էր, այդ իրեն յանձնուած պաշտօնի ծանրութիւնը՝ որ իր երկիւղած խղճին վրայ կ'աղդէր, իրեն համար անկից փախուստը անհնարին էր. հնազանդութեան ձայնը հնչուն էր, որոտացող, որուն առանց խիղճ ընելու, չէր կրնար անշուր մնալ։ Յառաջ վարեց այդ պաշտօնը. Նա մի քանի տարուան մէջ իր հոգեւոր աշակերտաց թէ դաստիարակ էր և թէ ուսուցիչ. անոնց ներշնչեց կրօնքի զինուորի դիւցազնական արիութիւն, անթերի հպատակութիւն, միաբանասիրութիւն, ազգին և հասարակութեան օգտակար ըլլալու պարտականութիւնը, անոնց իր

գրական անխոնջ ու յամառ աշխատասիրութեամբ, գրական մարդ մը ըլլալու գեղեցիկ օրինակն եղաւ. բայց թէ աշակերտները ապագային իր այդ հոգեվառ և հոգերուխ ներշնչած սկզբանց ո՛րչափ հաւատարիմ պիտի մնային, այդ ինքը մտածելու և հոգալու չէր, վասն զի ապագան դաստիարակութեան պատասխանատուութենէն դուրս էր, աշակերտին ապագան ո՛չ դաստիարակին, այլ աշակերտին ողջմտութեան կը պատկանի։ Նա միաբանութեան ներկայացուց իր ձեռնասուն աշակերտները՝ Հ. Վահան Մէհտէրեան, Հ. Սահակ Հէքիմեան, Հ. Սերովբէ Քուչներեան, Հ. Թերովբէ Քուչներեան, Հ. Յարութիւն Գազէզեան, Հ. Սրապիոն Պարոնեան և Հ. Մատթէոս Զատոյեան։

Այս փոքրաթիւ աշակերտաց մէջ՝ թէեւ ոչ իր լայնածաւալ տաղանդին, սակայն կրօնական սկզբանց և միաբանական ոգւոյն նախանձորդ հարազատներ ունեցաւ։ Այժմ անոնցմէ չորսը վախճաներ են. ամոլքն Քուչներեան և Հ. Հէքիմեան բնական մահուամբ, իսկ Հ. Սրապիոն Պարոնեան ի Պարսկաստան Սուրայի մեր վանատան մէջ ազգայնոյ մը սրով կը սպաննուի*։ Այլք դեռ կ'ապրին**։

* Չենք ուզեր կրկին նկարագրել այդ ողբերգու տեսարանը, որ յօրագիրս և Հօր Ալիշանի «Ս. Աւգոստինոսի խորհրդածութիւն» անուամբ գրքին մէջ մանրամասն ի ցոյց դրուած է։

** Այս գործին նպատակէն դուրս կը համարինք իր գրական աշակերտաց բանաստեղծ և պատմաբան Հ. Թերովբէ Քուչներեանի և ծանօթ բանասէր Գազէզեանի (Նորայր Բիւզանդացւոյ) և անգղիագէտ Հ. Մ. Զատոյեանի մատենագրական արդեանց վրայ խօսիլը։



Հ. Քերովբէ Քոջներեան։



Հ. Սրապիոն Պարոնեան։

Հ. Ալիշան այս աշակերտաց օրով, իր վարած կղերական վարժարանին փոքրիկ պարտէզին մէջ աշակերտաց չինել տուած է այն փոքր աւազանը, որ իր ձեւով նման է վանայ լճակին. որոշ էր Հ. Ալիշանի նպատակը. Հայրենիքի այն գեղեցիկ լճակի պատկերն հոն իր աշակերտաց աչաց առջև ներկայացընելով, անոնց կ'ուզէր ներշնչել տալ Երկնքէն յետոյ, Հայրենիքի նուիրական սէրը։ Եւ նոյն լճակը դեռ իր վճիտ ջրով և մաքրափայլ յիշատակով, կը զարդարէ մեր կղզեակը. անոր չրթունքները ծով ծիրանեգոյն ծաղիկներէ կը համբուրուին. ծաղիկներ որոնք յիշել կու տան Հայրենիքի լճակին մէջ բուսած Լիս, Կտուց ու Աղթամար դալարագեղ տաճարակիր ժայռերը։

Այս աշակերտաց օրով Հ. Ալիշան գրական համեստ հոգեւոր յիշատակ մ'ալ թողած է, «Հաղորդամատոյց» անուամբ գիրք մը։ Իր աշակերտները, քահանայ ձեռնադրուելէն քիչ առաջ, անոնց կը յանձնէ աստուածասէր Խալպցի երիցու Տ. Մկրտիչ Բականիի L'Anima devota della Santissima Eucaristia հաղորդուող հոգիներու յիսուսախօս գիրքը, որ թարգմանեն. Իւրաքանչիւր աշակերտ իրեն բաժին եղած մասը կը թարգմանէ, զոր յետոյ Հ. Ալիշան սրբագրելով, իր կողմանէ անոր կը կցէ սուրբ գիրքէն և մեր նախնեաց շարականներէն աղօթքներ, ոսկեկան աղերսներ։ Աշակերտաց քահանայութեան առթիւ 1865ին լոյս կը տեսնէ այդ գիրքը և որ նոյն թուականէն ի վեր ջերմեռանդ հոգիներու առ Բարձրեալն սրտէ ուղղած կնդրուկի տեղ կը ծառայէ։

# Ղ. ԱԼԻՇԱՆ

## ՏԵՍՈՒՉ ՌԱՓ. ՎԱՐԺԱՐԱՆԻ

**Ղ.** *Ալիշան իր հոգեւոր ասներուն հինգ տարի դաստիարակութիւն կ'ընէ. անոնց քահանայութենէն վերջը նա ազատ էր այդ պաշտօնէն. բայց միաբանութիւնը այդ գրաւէր հաստատուն միաբանը իր սենեակը, իր գրքերուն մէջ ազատ չէր թողուր. հազիւ թէ կ'աւարտէ դաստիարակութեան պաշտօնը, միաբանութիւնս զինքը դարձեալ Ռափայէլեան վարժարանի տեսուչ կը դնէ։ Նա 1866 մայիսին, նոյն վարժարանի պետն էր. այժմ 40 տարեկան էր, կրթական պաշտամանց մէջ իր բազմամեայ տաժանելի աշխատութեամբ՝ վարժած էր մանկանց բնոյթը եւ միտքը մշակելու դժուար արհեստին։ Իր նոյն ատենուան պաշտօնին ձեռնտու կ'ըլլան Հ. Գ. Նազարեթեան, Հ. Ս. Պարոնեան եւ Նորայր Բիւզանդացի. այս երկու վերջինները իր ձեռնասուն քահանայ աշակերտները, իրենց վերակացու տեսչին ամենայն եռանդեամբ կ'աջակցին։ Երկու տարի վերջ՝ Հ. Ալիշանի իբրեւ աջ բազուկ կը տրուի Ղուկաս այժմեան Գեր. Աբբահ. Իգնատիոս Կիւրեղեան. վարժարանի նիւթական մատակարարութիւնը եւ ուսումնապետութեան պաշտօնը կը վարէր Գեր. Իգնատիոս։ Հ. Ալիշան իր այդ օգնականի օրով, այլ եւս բոլորովին իր գրական աշխատութեանց կը պարապի.*



Հ · Ալիշան 17 յունուար 1869 ։


Անդրէաս Արծրունի.

իրեն համար դասատուութիւնը և դաստիարակութիւնը տաղտկալի դարձած էին. օրուան մեծ մասը քաղքին տէրութեան դիւանը և դրատունը կ'անցընէր, հոն դրչագրաց և հին տպագրեալ գրոց մէջ կը պրպտէր Հայոց պատմութեան և վենետկոյ հայ գաղութի վերաբերեալ տեղեկութիւններ. Նա չարունակ իր երկասիրելիք գրուածներուն համար առատ ատաղձներ կը գտնար. Աշակերտաց վրայ իր գլխաւոր աշխատութիւնն կ'ըլլայ անոնց բարոյականը և կրթութիւնը հոգալն.

Հ. Ալիշան այս վերջին տեսչութեան առեն՝ հիւր աշակերտ կ'ունենայ երկու Արծրունիներն Գրիգոր և Անդրէաս. Նախ Անդրէաս կու գայ վենետիկ և ուղղակի Հայր Ալիշանէն հայերէնի դաս կ'առնէ, յետոյ Գրիգոր՝ 1870ին. Բայց այս թուականին Հ. Ալիշանի առողջութիւնը շատ դիւրաբեկ էր. կարելի չէր որ ինքը անձամբ դաս տար. Գ. Արծրունի, Հ. Ալիշանին հետ ունեցած տեսակցութիւնը «Մշակ»ի մէջ (1890 N. 50) նկարագրած է, ուսկից կը յիշենք հետևեալներն.


Գրիգոր Արծրունի.

Ս. Ղազար այցելելէն «Քանի մի օրից ես վարձում էի Սան Մարկօ հրապա-

բակում խաղացի մի ուղեցոյց, որը տուով տարաւ ինձ նեղ և ոլոր մոլոր փողոցներով ու փոքրիկ կամուրջներով դէպի Ռաֆայէլեան դպրոցը։ — Դպրոցը զետեղված է մի լայն կանալի վրայ գտնվող շքեղ հոյակապ պալատում։ Հայր տեսչի հետ տեսակցութեան իրաւունքը խնդրած լինելով, ես բարձրացայ լայն սանդուղքը, անցայ մի քանի ընդարձակ, գեղեցիկ կորիդօրներ և շուտով բաղխում էի արդէն հայր Ղևոնդի առանձնասենեակի դուռը։

— Բա՛ց... լսեց սենեակից մի թոյլ և խուլ ձայն։

Ես բաց արի դուռը և իմ աչքերիս ներկայացաւ հետևեալ տեսարանը։ Ահագին, լուսաւոր սենեակ, լի գրքերի պահարաններով, որը բեռնաւորված էր բազմաթիւ գրքերով և թղթերով, մի քանի գեղեցիկ, թէ և հասարակ բազկաթոռներ, և մի դիվան, լայն և բարձր պատուհանների վրայ մեղմ գոյնի վարագոյրներ, — ահա Ալիշանի սենեակը »։

Գուցէ Արծրունին և ընթերցողին այն նկարագրուած սենեակը Հ. Ալիշանի մը պէս հարուստ մարդի մը և ճոխ համբաւի մը տէր պատկառելի անձին համար շատ խեղճ ու աղքատիկ երևցած է, սակայն նոյն իսկ այդ համեստ սենեակը իրեն աղքատասէր բնաւորութեան համար, շատ զարդարուն և շատ շռայլ նկատուած է, և հոն բնակեր է վասն զի իր պաշտօնը կը պահանջէր։

Հետևինք Արծրունիին. « Առաջին րոպէին ես մարդ չէի տեսնում սենեակում... Մի վայրկեան անշարժ կանգնեցի սենեակի շեմքի վրայ... Ուղղելով հայեացքս դէպի ահագին կոյտի մէջ տեղ։ — Ինչպէս երևում է Հայր

Ղևոնդը խորասուզված էր ընթերցանության մեջ, երբ ես ներս մտայ։ — Նա անմիջապէս տեղից բարձրացաւ, մօտեցաւ, մեկնեց ինձ իր ձեռքը և ձեռքից բռնած՝ տարաւ ինձ իր գրասեղանի մօտ, խնդրելով նստել։

Ես ասացի թէ ով եմ...

Ալիշան միջին հասակի, շատ նիհար, հիւանդոտ դէմքով, թոյլ կազմուածքով, մօտ 50 տարեկան մարդ էր։ Նա սիրեց խօսել, ձայնը թոյլ էր և խուլ, խօսակցութիւնը անդադար ընդմիջվում էր չոր, անախորժ հազով։ Խօսելու և պատասխան ընդունելու ժամանակ նա անդադար կարմրում էր, ինչպէս մի գերմանացի համեստ պրօֆեսոր...

Ես յայտնեցի որ կ'ուզենայի նրանից հայերէն լեզու դասեր առնել։

— Կը ներէք, չեմ կրնար, կուրծքս թոյլ է, բժիշկները արգելած են ինձի շատ խօսել և բարձր խօսել, բայց կը յանձնեմ ձեզ մեր դպրոցի օգնականին, Հայր Իգնատիոսին...

Ես շնորհակալութիւնս յայտնեցի։ Նա կրկին կարմրեց։

— Հրամանքդ ժամանակ առ ժամանակ կը գրէք Թիֆլիսի լրագիրներուն մէջ, շարունակեց նա։

Խօսակցութիւնը անցաւ մեր մամուլի, մեր գրականութեան վրայ, ապա կովկասեան հայերի վրայ...

Անմիջապէս զանգ տալով, Ալիշան հրամայեց կաֆէ բերել։ Վենեցիայի Մխիթարեանները ոչ մի հիւր չեն ընդունում, առանց կաֆէով հիւրասիրելու։

Ես ասացի, որ պարապել եմ մի ձմեռ Վիեննայի Հայրերի մօտ, և աւելացրի որ կուզենայի վճարել դասերիս համար։

— Հարկ չը կայ, մենք առակ չենք վերցնի ձեզմէ...

— Բայց հայր սուրբ ես կուզեմ վճարել, և կարող եմ վճարել....

— Հարկ չը կայ, կրկնեց նա։

Ստիպուած էի ընդունել և նորից շնորհակալութիւնս արտայայտել...։

Սկսեցի շաբաթը չորս անգամ դասեր առնել տեղի օգնական հայր Իգնատիոս Կիւրեղեանի մօտ (այժմ արքահայր)։ Հայր սուրբի խուցի մէջ նստած, Եղիշէ, Խորենացի, կամ մի այլ հայոց կլասիկական գիրքը կարդալով իմ դասերիցս իւրաքանչիւրը մի ժամի տեղ, շատ անգամ երկու երեք ժամ էր տեւում։ Գիրքը թողած՝ շատ անգամ սկսում էինք վիճել երիտասարդ վարժապետիս հետ։

Վէճը մեծ մասամբ եկեղեցու, կրօնի մասին էր, լուսաւորչական, կաթոլիկ և բողոքական եկեղեցու մասին...»

Սակայն ինչ որ գիտենք այդ խօսակցութիւնը ոչ այնքան կրօնական խնդիրներու մէջ կ'երկարէր, որչափ ուսումնական. նա, ինչպէս կ'ըսէ մեր վէպն, շարունակ կը հարցնէ եղեր եւրոպական գիտական բաներու հայերէնները. և թէ ինչպէս նոր բառեր կրնայ կազմուիլ. իրենց ուսումնական վիճաբանութեան ամենէն մեծ և օգտակար հրատապ նիւթն այդ էր։ Դիւրի՞ն է գուշակելն, որ Աբովեանին ըլլալով յօդուածագիր, „մանաւանդ

թէ նոյն իսկ ապագային Հրապարակախօսութեան մեծ մշակ մը ըլլալու մտադրութիւն ունենալով, ի հարկէ՝ նա պէտք էր արհեստական անծանօթ բառերու մասին՝ իր հայերէնի վարժապետէն որոշ գաղափարներ առնէր. և անոր համար նա ժամերով այդ նիւթին վրայ կը ծանրացնէր իր խօսակցութիւնը։ Արծրունին զայդ չի յիշէր, վասն զի առով իր ընթերցողաց հետաքրքրութիւնը պիտի չի շարժէր այնչափ, որչափ իր մէջ բերած միջանկեալ կրօնական անցողակի խօսակցութիւններով, որ հազիւ երբեք պատահեր են։ Հրապարակախօսը այդպէս կը գրէ. և գա իր անհեռան է... բայց ընթերցողը պիտի հետաքրքրուի թէ Հ. Ալիշանի բարձրաստիճան օգնականը ի՞նչ պատասխանած է Արծրունիի այդ կրօնական առարկութեանց. ուշ դնենք լրագրապետին. կը պատասխանէ ուսուցիչն.

— «Հրամանքդ բողոքական երկրում ուսում առած ըլլալով, կը նկատեմ որ աւելի համակիր էք բողոքականութեանը, ասում էր ինձ իր մեղմ և ներդաշնակ ձայնով համակրելի վարժապետս...

— Ոչ, հայր սուրբ, ինձ համար մի և նոյն է, ինչ կրօնի էլ պատկանի հայը. ես ծնվել եմ լուսաւորչական ծնողներից և նրանցից եմ ստացել իմ առաջին բարոյական գաղափարներս, բարձրագոյն ուսումս և համոզմունքներս՝ բողոքական Գերմանիայից եմ ստացել, իսկ հայոց, մայրենի լեզուի հմտութիւններս պարտական կը լինեմ ձեզ, կաթոլիկ հայերին.... Գուցէ այդ պատճառով ես միակերպ եմ վերաբերվում դէպի բոլոր դա-

ւանութիւնները, առանց որ և է մոլեռանդ զգացմունքի...

Վարժապետը ժպտում էր իր մեղմ ժպիտով, ապա յանկարծ կտրում էր մեր վիճաբանութիւնը։

— Սակայն ժամանակը կանցնէ, դառնանք մեր Խորենացուն։

Ամբողջ վեց ամիս, շաբաթը չորս անգամ՝ դասերս առնելով Հայր Իգնատիոսի մօտ, ես դասերիցս յետոյ կամ պտտում էի դպրոցում, կամ մտնում էի Հայր Ալիշանի սենեակը։ — Դպրոցը ինձ հետաքրքրում էր։ Դպրոցի ամբողջ կազմակերպութեանը և ուղղութեան վրա տիրում էր Հայր Ալիշանի ոգին։ Դպրոցն ուսումնասիրած լինելով, կարելի էր գաղափար կազմել և նրա ղեկավարի ուղղութեան, բնաւորութեան ու լայն համամարդկային գաղափարների մասին։ Ալիշանի անխարդախ, համակրելի, անկեղծ բնաւորութիւնը, նրա լայն մարդասիրական և հայրենասիրական անձնանուէր հանճարը կերպարանաւորվում էր դպրոցի թէ ամբողջութեան և թէ նրա իւրաքանչիւր մանրամասնութեան մէջ։...

Ռաֆայէլեան դպրոցը նրա ձեռքի տակ այնպիսի բարձրութեանն էր հասել, որ համարվում էր ամբողջ Վենեցիայում ամենալաւ միջնակարգ դպրոց։ Բազմաթիւ իտալացի հարուստ ընտանիքներ խնդրում, աղաչում էին, որ դպրոցում ընդունէին իրանց զաւակները, սակայն միշտ մերժում էին ստանում. Հայր Ալիշան միշտ պատասխանում էր որ դպրոցը միմիայն հայ զաւակների կրթութեան համար է նշանակված, առանց խտրութեան

հայ ազգութեան պատկանող աշակերտների դաւանութիւնների...։

Հայր Ղեւոնդը յայտնի է բոլոր հայերին, ամբողջ մարդկութեան՝ որպէս ուսումնական մարդ, որպէս գրող և բանաստեղծ։

Մեզանից ով չը գիտէ, չէ կարդացել Նրա բազմաթիւ գրուածները, կամ գոնէ նրանց մասին լսել... Հարկ չեմ համարում այստեղ մի առ մի թուել Նրա բազմաթիւ և համակրելի երկասիրութիւնները։

Բայց դուցէ շատերը չը գիտեն, որ Ալիշան խելացի մանկավարժ էլ է։ Մայրենի լեզուն Նրա ձեռքով ղեկավարած դպրոցի ուսմունքների հիմքն էր կազմում, հայրենագիտութիւնը դպրոցի բոլոր ուսմունքների ոգին էր։...

Երբ ես մտնում էի դպրոցի այն մեծ դահլիճը, որտեղ աշակերտները զբաղւում էին նկարչութեամբ՝ ես ապշած էի մնում։ Հայր տեսուչը պատուիրել էր նկարչութեան ուսուցչին, որ աշակերտները մեծ մասամբ նկարէին հայոց պատմութեան հետ սերտ կապ ունեցող և երեխաների վառ երեւակայութեանը գլխաւորապէս հայրենիքը յիշեցնող դէմքեր և տեսարաններ... Մի տեղ տեսնում էիք Վարդան Մամիկոնեանի ընդօրինակած կենդանագիրը, մի ուրիշ տեղ Անիի աւերակների տեսարանը, և այլն և այլն....

Եւ առհասարակ, որպէս մանկավարժ, Հայր Ղեւոնդ փորձված և խելացի մանկավարժ է։

Վեց ամիս շարունակ Հայր Իգնատիոսից շաբաթը

չորս անգամ դասեր առնելուց յետոյ, երբ հասաւ Վենեցիա թողնելու օրը, ես կրկին դիմեցի հայր Ղեւոնդ Ալիշանին, խնդրելով որ դպրոցի օգտին գոնէ ընդունէ ինձանից դասերիս վարձը։ Բայց բոլոր թախանձանքներս զուր էին. — հայր Ղեւոնդը ոչինչ կերպով չէր ուզում ինձանից փող ընդունել։

Ճարահատուած, քաղաքից իմ դուրս գալուց մի քանի օր առաջ, գնեցի գրավաճառանոցում Ֆրանսիական կլասիկների ժողովածուն և ընծայեցի Ռաֆայէլեան դըպրոցի գրադարանին, որպէս զի գոնէ մի կերպ արտայայտեմ իմ երախտագիտութիւնս սուրբ հայրերին նրանց սիրալիր ընդունելութեան, հիւրասիրութեան և վեց ամիս շարունակ ինձ տուած դասերի համար։

Հայր Ալիշանի հետ վեց ամսվայ ընթացքում բաւական մօտիկ ծանօթութիւն կապելով, ես մի անգամ առիթ էի ունենում նրա հետ մտերմաբար խօսել ընդհանրապէս մեզ հետաքրքրող հարցերի մասին։

Անկասկած Ալիշանի հետ խօսելը կը համոզէ որ նա կաթոլիկութիւնից դուրս հայոց ազգի համար փրկութիւն չէ տեսնում։ Բայց անկողմնապահ և համբերող ժամանակակից ոգի ունեցող մարդը շատ լաւ գիտէ որ և լուսաւորչական հայը՝ լուսաւորչական եկեղեցուց դուրս հայերի համար ոչինչ փրկութիւն չէ տեսնում. իսկ բողոքականը բողոքականութիւնից դուրս փրկութիւն չէ տեսնում։... Ուրեմն թող ամէն մարդ ունենայ այդ համոզմունքները և թող մի և նոյն ժամանակ Ալիշանի պէս պայծառ, լայն, ընդհանրապէս մարդասէր գաղափարներ

ունենայ, նրա չափ հայրենասիրութիւն ունենայ, — և այն ժամանակ անձնական հայեացքները իւրաքանչիւր դաւանութեանը պատկանողի կողմից՝ ոչինչ վնաս չեն



Ռափ. վարժարանի դահլիճը։

ներկայացնի ընդհանրութեան համար, ոչինչ երկպառակութեան սերմեր չեն գցի տարբեր կրօնական հայեացքներ ունեցող մարդկանց մէջ, երբ նրանք այդ հայեացքներից բարձր կը դասեն ընդհանրապէս ազգը սիրելու զգացմունքը։

*Այդ տեսակ լայն հայեացք մենք կարող ենք սորվել վենեցիայի Մխիթարեաններից, մանաւանդ Ալիշանի պէս համոզված մարդուց։ Կարելի է Ալիշանի պէս ջերմ, նոյն իսկ մոլեռանդ կերպով սիրել կրօնը, բայց մի և նոյն ժամանակ պէտք է Ալիշանից օրինակ առնել թէ դէպի ուրիշ դաւանութիւնները նրա ունեցած լայն համբերողութեան ոգուց և թէ հայրենասիրութեան նրա անսահման և անձնուէր զգացմունքից....»*

*Ասոնք են այն ջերմ տպաւորութիւնները, որոնք Արծրունիի վրայ թողուցեր են Ալիշանը, հայերէնի բարձրաստիճան ուսուցիչը, Ռափ. վարժարանի կրթական ընթացքը և առհասարակ մեր միաբանութեան հիւրընկալ ոգին։ Եւ ազգին յառաջադիմութեան համար ստեղծուած և նուիրագործուած մեր հաստատութիւնը նոյն նկարագրեալ ոգիէն տարբեր կերպարանք մը չէր կրնար ունենալ. Մխիթարայ տան համար այդ ոգին պարտք մ'է և ոչ առաքինութիւն...*

*Մեզմէ առաջ Գ. Արծրունին կանխեց, ցոյց տուաւ թէ Ալիշան իր այդ պաշտաման մէջ ի՛նչ էր, ի՛նչ ոգւով կ'աշխատէր, ի՛նչ կը ներշնչէր աշակերտաց, և ի՛նչ փառքի մէջ կը պահէր իրեն յանձնուած այդ կրթական աւանդը։ Ճշգրիտ էր այդ նկարագիրը, նոյնը պիտի ընէր նաև ամէն անհատ, որ բարեբաղդութիւն կ'ունենար Հ. Ալիշանի հիւրընկալութիւնը վայելելու և գործունէութիւնը տեսնելու։*

*Հօր Ալիշանի դաստիարակութեան վերջալոյսի աստղն է Պ. Արփիար Արփիարեան. այդ ծանօթ ու սիրուած*

հրապարակախօսը Հ. Ալիշանի ամենէն փայլուն, ազգային և երախտագէտ աշակերտն երևցաւ իր այն բազմաթիւ գրութեանց մէջ, որոնք արժանաւոր երկրպագութիւններ էին առ իւր պաշտելի դաստիարակն. նա իր դալար վառվառուն հասակին մէջ, իր աչաց առջև ունէր այն մեծ բանաստեղծը, զոր ապագային պիտի անմահացընէր իր զարդարուն և գիւթող գրչով. և այդ պատճառաւ, նա իր աշակերտութեան ատեն, իր դիտող աչուըները չի հեռացըներ անոր նիստ ու կացէն. հետաքրքրութեամբ ունկնդիր կ'ըլլայ անոր ամէն մի խօսքերուն. տարիներու սահող շրջաններուն հետ չեն շիջանիր այն ամէն յիշատակները, որ Հ. Ալիշանէն իրեն աւանդ մնացեր էին. հրապարակախօս աշակերտը երբ իր դաստիարակի մասին խօսելու առիթ գտեր է, աշակերտութեան օրերու յիշատակները առատօրէն բխեր են իր գրչին ծայրէն։ Հոս կարելի չէ ցոլացընել այն յիշատակները որոնք իր լրագրական ջինջ կապոյտին մէջ ցրուած կը պլպլան. անտարակոյս նա մի օր ի յարգանս իր պատկառելի մեծ բանաստեղծ դաստիարակին, ընդարձակ գրութեան մը մէջ, կը խտացընէ անոր տեսչութեան յիշատակները. բայց և կարելի չէ անյիշատակ թողուլ իր այն մէկ համառօտ գրութիւնը ուր շատ որոշ դուրս կը ցայտի Հօր Ալիշանի դաստիարակութեան ոգին. ահա թէ ինչ էր Ալիշան.

« Իմ յիշատակներս — կը գրէ Արփիար — Հ. Ալիշանի կեանքէն կը սկսին քառորդ դար մը առաջ. 1867ի մայիս ամսէն, երբ մտայ Ռափայէլեան վարժարանը. Հոն

անցուցած եմ երեք տարիներ ու շրջանաւարտ եղած։ Հրապարակագրի կեանքիս մէջ շատ անգամ առիթ ունեցած եմ խօսիլ վենետկեան յիշատակներուս վրայ։ Ամէն ատեն և այժմ ալ, երբ ուզած եմ վերլուծել այն զգացումներն որք սիրտս կը կապեն Ռափայէլեան վարժարանին հետ, երբ ուզած եմ փնտռել թէ ինչո՛ւ համար այնքան խորին կերպով կը սիրեմ Վենետիկն, աչքիս առջև ներկայացած է Հ. Ալիշան, որ Ռափայէլեան վարժարանի տնօրէնն էր։ Կը յիշեմ զինքը խոհուն, մտածող միշտ, խորասուզուած իր մեծ աշխատութիւններուն մէջ, բայց միշտ սրտի տէր, միշտ յիշող թէ այդ տղաքներն յանձնուած են իր խնամքներուն, անոնց միտքը, անոնց սիրտն իսկ պիտի կրթէ ու ազնուացնէ, և անոնց կեանքն ալ առողջութիւնն ալ իր խնամքներուն յանձնուած են։ Եւ ահա կը մնայ անցեալն ալ, պատմութիւնն՝ ալ, ապագան ալ, ամէն ինչ, և իր ժամերուն մեծ մասը կը զոհէ այդ տղաքներուն, առանց տրտունջի մը, առանց գանգատի մը, այլ ընդհակառակն ուրախութեան և գոհութեան զգացումներով, կը կատարէ ինչ որ ուրիշներուն պարտականութիւնն էր և ոչ տեսչին՝ որ միայն վերին հսկողութիւն մը ունենալու պարտաւոր էր։

«Կը յիշեմ զինքն որ երբ հիւանդ էինք, անտանաձայն լուիկ մնջիկ կուգայ մեր անկողնին քովն ամէն օր, կը հոգայ մեր առողջութեան համար, կը քաջալերէ զմեզ ու կը խնամէ իր ձեռքովը։ Կը յիշեմ թէ ի՛նչպէս հոգ կը տանէր որ ամէն մէկերնիս բանի մը կարօտ չըլլանք։

Կը յիշեմ զինքը քիչ մը անաչառ դէմքով, բայց միշտ

երկնային հրեշտակային ժպիտով մը որ կը ջանայ միշտ աշակերտները « Աստուածահաճոյ » ուղղութեան մէջ դնել։ Գուցէ իր տուած ուղղութիւնը « Աստուածահաճոյ » ըլլար, բայց մեզ միշտ հաճոյ չէր, սակայն այնքան բարութեամբ, այնքան խղճի մտօք և այնքան ներողամիտ ոգւով կը վարուէր, որ մինչև հիմա ալ ուրիշ բան չեմ պահած սրտիս մէջ բայց եթէ ամենաքաղցր յիշատակ մը։

Բայց ինչ որ անմոռանալի է և խորին կերպով աղդած է սրտիս վրայ, այդ Հ. Ալիշանի հաւասարութիւն սիրող ոգին էր։ Դպրոցին մէջ կային աշակերտներ, որք ձրիաբար ընդունուած էին, Թափայէլի կտակին տոկոսովը, կային ալ որք կիսաթոշակ կամ լիաթոշակ էին այսինքն տարեկան 30էն մինչև 50 ոսկի կը վճարէին։ Ընդհանրապէս բոլոր եկեղեցականները, մանաւանդ վանականները, քիչ մը շատ դրամասէր են, ոչ թէ իրենց անձին համար, այլ իրենց միաբանութեան համար, և բնականաբար պէտք էր որ Թափայէլեան վարժարանին մէջ ալ յատուկ ուշադրութիւն դրուէին լաւ վճարողներն։ Բայց բնաւ ո՛ և է խտրութեան հետք չէր տեսնուեր, ոչ ոքին յայտնի էր թէ ո՛վ է լաւ վճարողն, ո՛վ է գէշ վճարողն, ո՛վ է ձրին. ամենակատարեալ հաւասարութիւն կար։ Քրիստոնէական բարձր գաղափար մը կը տիրէր, Հ. Ալիշանի այդ ոգին կը ներշնչուէր ամէնուն ալ »։

Երկու մեծ և փոքր հրապարակախօսներ, որոնք անձամբ ականատես եղեր են Հ. Ալիշանի դաստիարակութեան օրերուն, իրենց յիշեալ նկարագրութեամբ, զՀայր

*Ալիշան կը ներկայացընեն կատարեալ և համակրելի դաստիարակ մը. ընթերցողին համար անտարակոյս բաւական են այդ վկայութիւնները, որոնք անաչառ լրագրապետներէ ըսուած են։*

*Արփիար և իր դասընկերները 1870 օգոստոսին կ'աւարտեն Հ. իրենց դասընթացքը։ Ալիշանի այդ աշակերտները հայրենիք վերադառնալով, այլ ևս ինքը դաստիարակութեան պաշտօնը յառաջ վարելու այնքան խանդ ու եռանդ չունենար. նա իր ամենադալար հասակէն շարունակաբար այդ պաշտօնը վարելով, ընական էր որ շատ յոգնած ըլլար և շատ ալ տուժած*, քանի որ նա միևնոյն ատեն իր գրասեղանէն իր սիրած գրչէն ու գրքերէն չէր հեռանար. իրեն համար հանգիստ, միջի անգործութիւն չկար, շարունակ պէտք էր մտածէր վարժարանի հոգը, աղոց կրթութիւնը, յառաջդիմութիւնը և իր անձնական ուսմունքները, որոնց սէրը զինքը հրապառած էին, անոնցմէ բաժնուիլը կարելի չէր։ Նա թէև Գեր. Իգնատիոս բարձրաստիճան օգնականին ամենայն ինչ յանձնած էր, և վստահ էր անոր խղճամիտ արթուն ու եռանդուն գործունէութեան, սակայն մտածելով որ ինքն է վարժարանի պատասխանատուն, միայն նոյն մի-*

* Դաստիարակութեան մաշիչ գաւազանը և յարաշարժ գրիչը երիտասարդ հասակին մէջ ճերմկցուցած էին Նահապետին մազերը։ Նա դեռ հազիւ 29 տարեկան կը գրէ.

«Նմ մանաւանդ զի քան ըզտիս մեծափայլէ յիս ցրտութիւն,
Ցերիտասարդս անկանելով ի գլուխս՝ հեւս սառամանեաց»։

Նուագք Բ. էջ 46։

տածութիւնը զինքը հանգիստ չէր թողուր որ հանդարտօրէն պարապէր իր սիրած գրականութեան։

Ահա այսպիսի երերեալ վիճակի մէջ, իր խոնջեալ պարտասեալ ժամուն, փարիզու աշակերտները կու գան վենետիկ, իր դաստիարակութեան հովանաւորութեան տակ մնալու. ուրեմն Հ. Ալիշանի պաշտօնը փոխանակ թեթեւնալու, դեռ աւելի կը ծանրանայ։ Թրուս–Գալլիական պատերազմը կը ստիպէ գոցել փարիզու վարժարանը. աշակերտաց մէկ մասը արդէն իսկ ուսմանց ընթացքը լրացուցած ըլլալով, հայրենիք կը վերադառնան, իսկ մնացածը իրենց տեսչով՝ կու գան վենետիկ՝ Հ. Ալիշանի քով։ Բնական էր որ այդ աշակերտաց կրթութեան պատասխանատուութիւնը՝ Հ. Ալիշան իր նոյն դիրքին մէջ յանձն չէր կրնար առնել. սակայն և բնական ալ էր որ միեւնոյն վարժարանի մէջ երկու վարիչ չէր կրնար ըլլալ. բայց Հ. Ալիշան դաստիարակին համար ամէն բան հնարաւոր էր. Հ. Հմայեակ Պապիկեան որ փարիզէն եկած աշակերտաց տեսուչն էր, Հ. Ալիշան զինքը իր պաշտօնին մէջ հաստատել կու տայ, թէեւ նա ըստ պատշաճութեան, կը հրաժարի ատկէ, սակայն Հ. Ալիշան կը յաջողի։ Նոյն ատեն այդ գաղթական աշակերտները իրենց յատուկ տեսուչ ունենալէն զատ, կ'ունենան նաև յատուկ վարդապետ ուսուցիչներ։ Մինչև 1872 յուլիս, այս ընթացքով՝ Հ. Ալիշան կը վարէ իր տեսչութեան պաշտօնը, զոր միաբանութիւնը իր Գեր. օգնականին յանձնելով, զինքը վանք կը կոչէ, ուր սահմանուած էր մինչև ցմահ ապրելու, խոկալու և գրելու։

Առաջին տարիները Հօր Ալիշանի նուիրական գլխաւոր աշխատութիւնն կ'ըլլայ վանքին մատակարարական գործը հոգալը. Նա մի քանի տարի այդ պաշտօնը կը կատարէ, յետոյ տեսնելով որ թէ մտաւորական և թէ նուիրական հոգածութիւնք ի միասին՝ կը հիւծեն իր յոգնած մաշած հիւսուածքը, կը հրաժարի մատակարարական պաշտօնէն. Նա 1884 դեկտեմբերին հրամանաւ Ուխտիս վեհին՝ այդ պաշտօնը կը յանձնէ Վ. Հ. Եւգինէոս Վ. Ոսկանեանի, և ինքը կը մնայ մի միայն աթոռակալի պաշտօնով, զոր ստացած էր 1877 օգոստոս 2ին. Նա նոյն օրէն սկսեալ, մինչև իր ծերունազարդ արևմուտքը, ներկայ Գեր. Իգնատիոս Կիւրեղեան Աբբահօր փոխանորդի — Աթոռակալի պաշտօնը կը վարէ. Թողլով զինքը այդ պատուելի պաշտօնին անմեղունակ ու համակրելի գործունէութեան մէջ, մենք այժմ թարթափինք իր գրական երկասիրութեանց ովկիանին մէջ.



# Հ. ԱԼԻՇԱՆԻ

# ԳՐԱԿԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

## ԲԱՆԱՍՏԵՂԾԱԿԱՆ ԵՐԿԵՐ

Հայր Ալիշանի ազգային այն համակրանքը, որ գրեթէ հակառակ իր աննկարագրելի համեստութեան տառածացումի կերպարանք առաւ, կը բխի իր հայրենասիրական գրչի դիւթող անզուգական արդիւնքէն։ Ազգին սիրտը հայրենիքի բոցով բորբոքեց՝ դպցընելով իր գրիչը ազգին ամենէն զգայուն, ամենէն համակրելի և ամենէն պաշտելի զգացմանց։ Այդ մոգիչ արդեանց արշալոյսէն պիտի բարձրանանք իր արփենւոյն զենիթը և խոնարհելով՝ սխրանօք պիտի դիտենք իր երփնագեղ վերջալոյսին երկարաձիգ փայլն ու շողն։

Գրական աշխատութիւնները սկսած է Նորընծայարանէն։ Պատանի հասակէն՝ գրած է ճառեր, զոր կարդացած է հասարակաց ներկայութեան՝ վանքի մատենադարանին մէջ։ Իր այդ աշխատութիւնները մեզ ծանօթ չեն. միայն այսքան գիտենք, որ ատոնք գրական կրթութեան համար աշխատուած գրութիւններ են, որոնք իբրև քննութեան թէզ հասարակաց կարդացուեր են։ Իր ուսանողական ընթացքի վերջերն նա սկսած է հրատարակե-

թեան արժանի գործեր գրել։ Տակաւին քահանայ չի ձեռնադրուած, իր գրչէն գեղեցիկ բանաստեղծութիւններ կը հանէ, որոնք յետոյ հրատարակուեր են. միենոյն ատեն նա պատրաստած է քաղաքական աշխարհագրութիւնը. զոր տարիներ վերջը, կերպարանափոխելով հրատարակած է։ Վարժարանէն պատրաստուեր է ըլլալ աշխոյժ, բեղմնաւոր մատենագիր մը. և կ'ըլլայ։ Նա շատ ապրեցաւ և շատ ալ գրեց, վասն զի գիտցաւ յարգել ժամանակը որ տակաւին հանճարի համար անհամեմատ գանձ մ'է։ Նախ և առաջ գրչին ասպարէզն կ'ըլլայ «Բազմավէպ»ը։ Իր սիրելի և պատկառելի ուսուցիչն Հ. Գաբրիէլ Վ. Այվազովսկի* 1843ին դեռ նոր հաստատած էր այդ վանական ամսաթերթը, որուն Հ. Ալիշան ցկեանս չի խնայեց իր համբուրելի գրիչը։ Իր մը-

* Հ. Ալիշանի երիտասարդութեան ժամանակակից ոգին էր։ Իր տարօրինակ խանդավառ գործունէութեամբ, ամբողջ երիտասարդութիւնը դէպ ի գործ և դէպ ի անխոնջ աշխատանք կը մղէ. իր ազդեցութիւնը զօրաւոր էր և արդիւնաւոր. իր ժամանակէն մնացած ծերունիներն մեծ պատկառանքով կը խօսին անոր մասին։ Նա հասարակութեան սիրելին էր, վասն զի ամբողջ միաբանութեան սիրոյն նուիրագործուած ոգի մ'էր։ Երիտասարդ հասակին մէջ եղած է վանքիս վարչական ժողովի անդամ, տարիներով վարած է ուսուցչութեան և դաստիարակութեան պաշտօններ։ Վանքին գրական գործունէութեան ազդեցիկ ղեկավարն եղած է. ինչ որ իր օրով գրքեր տպուած են, զանոնք խնամքով սրբագրած է, և շատ անգամ ուրիշներու հեղինակութիւնը սրբագրելով նոր ձուլած է և հրատարակած՝ առանց իր անուան յիշատակութեան։ Կարեկցական պարագաներու զոհ մ'է այն, որուն կարողամիտ ընդունակութենէն կ'ակնկալուէր միաբանութեան և գրականութեան մեծ մղում տալու շատ գործեր։

թեան արժանի գործեր գրել։ Ցակուին քահանայ չի ձեռնադրուած, իր գրչէն գեղեցիկ բանաստեղծութիւններ կը հանէ, որոնք յետոյ հրատարակուեր են. միենոյն ատեն նա պատրաստած է քաղաքական աշխարհագրութիւնը. զոր տարիներ վերջը, կերպարանափոխելով հրատարակած է։ Վարժարանէն պատրաստուեր է ըլլալ աշխոյժ, բեղմնաւոր մատենագիր մը. և կ'ըլլայ։ Նա շատ ապրեցաւ և շատ ալ գրեց, վասն զի գիտցաւ յարգել ժամանակը որ տոկուն հանճարի համար անհամեմատ գանձ մ'է։ Նախ և առաջ գրչին ասպարէզն կ'ըլլայ «Բազմավէպ»ը։ Իր սիրելի և պատկառելի ուսուցիչն Հ. Գաբրիէլ Վ. Այվազովսկի* 1843ին դեռ նոր հաստատած էր այդ վանական ամսաթերթը, որուն Հ. Ալիշան ցկեանս չի խնայեց իր համբուրելի գրիչը։ Իր մը-

* Հ. Ալիշանի երիտասարդութեան ժամանակակից ոգին էր։ Իր տարօրինակ խանդավառ գործունէութեամբ, ամբողջ երիտասարդութիւնը դէպ ի գործ և դէպ ի անխոնջ աշխատանք կը մղէ. իր ազդեցութիւնը զօրաւոր էր և արդիւնաւոր. իր ժամանակէն մնացած ծերունիներն մեծ պատկառանքով կը խօսին անոր մասին։ Նա հաստատակութեան սիրելին էր, վասն զի ամբողջ միաբանութեան սիրոյն նուիրագործուած ոգի մ'էր։ Երիտասարդ հասակին մէջ եղած է վանքիս վարչական ժողովի անդամ, տարիներով վարած է ուսուցչութեան և դաստիարակութեան պաշտօններ։ Վանքին գրական գործունէութեան ազդեցիկ ղեկավարն եղած է. ինչ որ իր օրով գրքեր տպուած են, զանոնք խնամքով սրբագրած է, և շատ անգամ ուրիշներու հեղինակութիւնը սրբագրելով՝ նոր ձուլած է և հրատարակած՝ առանց իր անուան յիշատակութեան։ Կարեկցական պարագաներու զոհ մ'է այն, որուն կարգավարիտ ընդունակութենէն կ'ակնկալուէր միաբանութեան և գրականութեան մեծ մղում տուող շատ գործեր։



Հ. Գ. Այվազովսկի՝ դաստատու Հ. Ալիշանի

տաւրական դեսպրուսիկ գործունէութեան ամէնէն եռանդուն քաջալերն կ'ըլլայ Հ. Գ. Այվազովսկի, որ ինչպէս տեսանք, պատանի Ալիշանին ամենէն քաջ ուսուցիչն եղած էր ։ Նա իր ոգեւոր խրախոյսներով՝ գրելու պատրաստական Հ. Ալիշանը կը մղէ գրական գործի կատարելութեան ։ Այս և ուրիշ բազմաթիւ գեղեցիկ պատճառներով, Հ. Այվազովսկի՝ Հ. Ալիշանի յատուկ համակրանքին և յարգանքին կ'արժանանայ ։

Հ. Ալիշանի գրական արշալոյսի այս անցողակի նկարագիրն տալով, կը փութանք հաւատարիմ՝ մնալու, ներկայ պարբերութեանս վերնագրին ։

Նահապետին գեղանի տաղանդին անդրանիկ բարունակն եղաւ բանաստեղծութիւնը. տակաւին տասնեինը տարեկան, վանական անձուկ պարիսպներու սրբազան միջնաբերդին մէջ, ուր նա ոչ ոք կը տեսնէ ի բաց առեալ իր դաստիարակը և ուսուցիչն. նա աշխարհի ժխորի մէջ զանգուած, տենդերաց ամբոխի ու խառնիճաղանճի մէջ մնած ու կազդուրուած տաղանդաւոր պառնասներու թափով և գրեթէ զուգահաւասար ուժով՝ պերճօրէն կը լարէ կը թնդացնէ իր տաւիղը ։ Իր այդ հասակի վիճակը՝ զինքը ոչ միայն մարդկութեան ամբոխէն, այլ և իր բանաստեղծի գրիչը զարդարելու և մշակելու գործիքներէն բոլորովին զրկած էր. նա նոյն ատեն աստուածաբանութեան աշակերտ էր, իր մտքի զէնքերն և իր ամէնօրեայ մտքի սնունդներն էին վիճակին կարեւոր Աստուածաշունչի, Թովմայ Գեմբացիի որոճումները ։ Նահապետ արեգային պարապատատ խրճիթէն ներս չէին թափանցեր ոչ մի

բանաստեղծի, զգայուն և թրթռուն քնարի ներդաշնակ ձայնը. սակայն նա կը շնչէր զեփիւռը, կը տեսնէր երկնակամարը որ իրեն անդրանիկ մուսաներն կ'ըլլան։

«Ոչ յՈլիմպոս խնդրեմ ի խորհուրդ իմ Մուսայ,
Որ ի խոնարհ խրճի մարդկան ի թռիչման՝
Ի բարձրութիւնս նըկըրանել ոչ ուսայ·
Ընկուզենւոյս շուք իմ ասպիտն յերգարանս»։

Նա կ'աղաչէ որ զով օդի Զեփիւռը ըլլայ իր քնարին թելադիր, զայն կ'ընտրէ իրեն երգահան ու երգակից։ Կ'աւետէ վարդերուն

«Աւետիս ձեզ՝ վարդ,
Կարկաջ երփնազարդ,
Մեղու ոսկեթեւ.
Ահա գայ թեթեւ
Զեփիւռ զուարթուն
Մարդոց կենսատուն»։

Հարկ չկայ որ իր ժամանակակից Մուսաներու սիրելի ոգին Հիւկօն՝ գրգռէ Նահապետին խանդը. մանուշակ երկինքը վառած էր իր միտքը. նա իր խցիկի անվարագոյր պատուհանէն կը տեսնէ

«Նուագին տատրակք, նուաղի լուսին,
Տիւ պատրաստէ զզարդն երփնագեղեան·
Եւ արուսեակ ի գեղ կուսին
Գողանայ զբիբս յանկալ համեստ»։

Կը տեսնէ Ցիտաննեան սեամին վրայ տարածուած ագեմենեան ոսկեճամուկ գորգը, երեկուն սուրբ շամանդաղը, գոյն նռնենի ծագած արեւուն կոյս դէմքը։ Նա մեզ կը նկարագրէ արեւելքը, մենք կը գիտենք անոր գրչին հարուստ գոյնը.

«Իբրեւ հրընկէց շուրթըն լերանց
Գիւղի բըլրոյն դունի 'հուր.
Կոյս ծաղկածինք առնուն ըզխանձ
Ըզլոյսն արբեալ կենսատուր...։
Խաչադըրօշակ աշտարակին
Փայլէ գըմբակ վառ ի վառ.
Բաժակք ծաղկանց ի ցօղ նրբին
Սրտին ըղձերթութըն կայտառ»։

*Արեղային բանաստեղծ սթափած ոգին իր խղճին մէջ չի կրնար բանտարկուիլ՝ նա կը թափառի բնութեան գեղեցկութեան մէջ, ուր կը խօսի Պառնասներու յաւէրժահարսանց՝ արեգի շողին, վէտ վէտ առուներու, մարգարտաշար ծաղկանց հետ։ Թողունք որ նա ձեռն ի ծնօտին՝ դիտէ առաւօտը և մենք ալ իր բանաստեղծ ոգին.*

«Ձեռն ի ծնօտի՝ յեց ի կամար
'Ի սրով գետոյ հեղեղ սրավար,
Կամ ի կողից դալարաւէտ
Ուստի առուաց իջանէ վէտ,
Լայնածաւալ ի դաշտ հովիտ
Կամ ի բլրոց անտառախիտ,
Դիտել զիա՛րդ քաղցր է յայգուն՝
Ըզլուսադեղ ակն արեւուն,....
Ծաղկունք՝ դաշտք առաւօտու
Մըշտադալարք՝ յայգուն պահու
Խընդապատար շըրշըրջեն քիթ
Յաւէրժհարսանց պըճնեալք ի տիպ»։

*Կ'երգէ ոսկետատուն բզէզները, որ առաւօտու ծաղիկ դաշտերաց այտերէն կը քաղեն քաղցրիկ նեկտարը։ Կ'երգէ գետի ալեաց վրայէն սահող ծիծառն, կարմրակատար փոքրիկ թռչունն, լոյսն ու ծաղիկ ողջունող նուագածունե-*

րու պարը, դաշտի և դալար խոտոյ զարդն ու հոգին փառաւորուր.

Հազար օրհնէք, բիւր գովեստ կը խնկէ իր պաշտած լուսնակին, որ գիշերուան մթութեան մէջ իր մայլ խղիկէն ներս կը թափէ լոյսը և կ'ընկերի մենաւորի խորհող ու բանող միտքին. Նա իրեն համար գիշերուան բիբն ու լապտերն է.

«Պըսակ մըթոյն ըզքեզ՝ արփի ուղփանեմ՝
Ըզքեզ սիրեմ եւ ես, դըշխոյ եաւդէմ.
Ու յաստեղց բոյլս ըսպայազունդ զօրապետ
Եւ յօրինողս ես թագուհի լուսազգեստ,
Զըքնաղըդ լուսին
Պարծանք գիշերին»։

Գիշերուան այն պայծառ և աննման հոգի Մուսային կը պաղատի, որ չմոռնայ այն վայրը, ուր կեանքի արեւը չի ծագիր.

«Այլ մի եւ զվայրն ինձ անմոռաց մոռանաս,
Ուր բնակչաց չհարու արեւն այլ ըսպաս...
Ե՛րթ ի տապանս՝ ուր սիրավառ բերի սիրտ,
Դողալ բախիլ վերայ սրտից անխըլիրտ.
Եւ անդր երթ լուսին,
Փարա՛ս դամբանին»։

Աբեղայ բանաստեղծը այդ հատակէն իր գրութեանց մէջ բնաւ ցոյց չի տար բանի և անբնական տող. իր միտքէն գեղեցիկ հանճարի սիրելի նոր ու չքնաղ բացատրութիւններ կը բխին հեղեղօրէն։ Նա իր հատակին մէջ՝ դասական բանաստեղծի կորովալից գրչով մեզ կը ներկայացընէ բնութեան ճոխ նկարը. ուր կը խօսին ճնշուողք և անշունչք, ուր կը ժպտին ծաղիկները ու դաշ-

տերը, ուր կը թնդան վհերն և խոռոչները, ուր կ'եր-գեն անտառներու և ամպերու երաժիշտները։ Նա իր վրձնոյն հարուածով կը թափէ մեր թմբիրը, և ցոյց կու տայ իր հրաշակերտ «Բնութեան պատկերը». և կը տես-նենք առաւօտեան շիկնող երկինքը, ծիրանի հագած ամ-պերը, արեւելքի փեղկը կը բացուի, անկէց վրայ կը փայլին գիշերուան յակինթ զմրուխտ արտասուք, կը լսենք սրավար սուրացող ծովամուտ թափչող ջրի խոխոջ-ները, խրոխտապանծ լերանց վհերէն որոտընդոստ գգայ-ռումը։ Բնութեան ճարտար նկարիչը հեռանալով տեսղե-րաց անհուն սքանչելեաց վրայ, կը թողու իր վրձինը. և կը գոռայ.

«Ո՜հ անասառուած, ցամաքեցի՛ր ձեղուղ պերճ,
Թէ զանմահին չիմանաս զործ անպիտերձ».

Եւ դարձեալ կը վազէ իր մուսաներուն Ովկիանին, Ա-րեգին և կոյր գիշերուան լուսարար լուսնին, որոնց հոգի կու տայ իր վրձնով։ Կը գտնենք երիտասարդ արեղայ Ալիշանին այդ բնական «Բնութեան նկարը» ու կը հիանանք. և մեր սքանչացումը կը կրկնապատկի, մտա-բերելով որ այդ գեղապաճոյճ նկարն՝ ուսանող արեղայի, անձուկ պարիսպներու մէջ մարզուած երիտասարդի վրձնէն ցայտեր է։ Փոքր ինչ անդրնալով նորածագ ա-րեւայ քերթողին արշալոյսին մէջ, մենք գործիս անձուկ էջերուն դէմ՝ գործեցինք, բայց թող ների մեր այս վրիպակը, զոր գործեցինք՝ ուզելով ցոյց տալ, որ ազգիս ժամանակակից քերթողահայր Նահապետը՝ խակական քեր-թող մ'է և ոչ ներշնչուած օտար աղբիւրներէ գող բա-

նուաստեղծ մը, և ինչպէս յիշեցինք օտար աղբիւրներ չէր կրնար վայելել իր հոգւոյն մարզարանի պարիսպներուն մէջ։ Անընկճելի սոխակի մը յափշտակող գեղգեղումը իր դալար հասակին մէջ երգեր է Երկինքը և Երկնայինները, կրօնքը և անոր հոգեգրաւ զարդերը. երգեր է գերեզմանի բնակիչները և անմահացուցեր է իր և ամենուս պաշտելի Հողը… Թուհանայութենէն յետոյ ուսուցչութեան և դաստիարակութեան ժամանակ, այլ եւ նա իր բանաստեղծ քնարին վարժապետ կ՚ընտրէ ամէն ազգաց դասական բանաստեղծները, որոց ընթերցումը զինքը անոնց մրցակից և ազգիս գերագոյն քերթողն կ՚ընէ։ Աշակերտութեան ատեն միայն մարգարէներու սաղմոսները և Նարեկացւոյն քնարի ձայնն կը լսէր. իսկ վարժապետութեան ատեն տիեզերքը թնդացնող բանաստեղծներու չափերը։ Հայրունիին ամենէն վառ, յուզող ու մանչող քնարը հնչեցուցեր է Վենետկոյ քաղաքական նաւղեա խուժանի մէջ շառաչող, սթափեցնող, հրացայտ երգերու արձագանգներէն ելեկտրացած։ Վենետկոյ բռընկած յեղափոխութեան ատեն, կարելի չէր որ Հ. Ալիշանի դիւրավառ ոգին չյուզուէր և չերգէր իր աւերակները և իր դիւցազները. գոռացող Ադրիականի ալեաց վրայ կ՚որոտային Վենետկոյ ռումբերը, դքսական սերունդէն սկսեալ՝ մինչև ողորմելի ձկնորսը ազատութեան ողւով բոցաշունչ՝ սուր, սուին ու հրացան ի ձեռին՝ մարտի դաշտը կ՚ընթանան. պատերազմի հարազատ զաւակներու կուրծքէն կը թնդար կարոնի մարտերգը. Օ՛ն քաջազունք իտալիոյ, ի սէր հայրենեաց, վազենք ի մահ կամ

ի յաղթանակ. կը հնչէ պանդակը, մարտի գոռ աղաղակը սոսկալի կ'արձագանգէ իտալիոյ մէջ. կը հնչէ պղինձը. օ՛ն փայլ ընդ փայլ ընկերնե՛ր, վաղենք փրկենք հայրենիքը, շող ի շող կը ճօճին սուրն, նիզակ ու սուսեր, և օդը կը թնդայ ընկերներ, ընկերներ վաղենք խոցելու...

Հասաւ օրը, վրէժ, վրէ՛ժ... իտալիոյ հրաբուխնե՛ր՝ ամբարշտաց վրայ թափեցէք ձեր հրաշէկ լաւաները... երկարաձիգ ռմբիններէ կրակ կարած մեր հրացանները, օ՛ն վաղենք մխենք թշնամւոյն սառած արեան մէջ... Հ. Ալիշանի միտքը կ'օրօրուէր այս մարտի երգերու որոտընդոստ ռմբիններու մէջ. նա միևնոյն ատեն կը գտնուէր քաղքին կեդրոնը, այն պալատին մէջ, որուն առջևուէն հազարաւոր կոնտոլավարներ յեղափոխական խումբին հետ, կը հնչեցընեն ազատութեան երգերը. Հ. Ալիշանի ընկճուած, կարմաւորուած կուրծքը կը բաբախէ, նա կը գոչայ իր կրակոտ «Բամ. փորոտան»ը... գունդագունդ ի զէն ի վրէժ կը հրաւիրէ իր հայրենավրէժ Հայկազունները. կը գոչէ Արի՛ք ի կռիւ քաջակորովքդ... Թռի՛ք ի սաղմ ի խաղմ, առէք զէն և զարդ... Հայ՝ օ՛ն, արի արանց մանկունք ի յաղթանակ՝ օ՛ն անդր յառաջ...

Վենետկոյ ամբոխին զայրացկոտ ապստամբողական օրերուն մէջ միևնոյն յեղափոխութեան ատեն, 1849 մարտ 2ին, կը գրէ Աւագ ու փոքր Մասիսի խօսակցութիւնը. հայ ընթերցողը յափշտակուած մտիկ կ'ընէ այդ սարերուն. փոքրն յուսահատ ու հեգնող, Աւագն գոռող և

քաջայանդուղն։ Աշխարհէն քան զամէն լերունք աղնիւն Ալագ Մասիս, անհեղ ձայն արձըկելով, կը հրամայէ «Ինձ մօտիկ արէք...»։ Ազգիս մնհաւմմիր, անտարբեր զաւակները, կ'արթննան անոր սոսկալի ձայնէն, ականջ կը դնեն ալեւոր սարին բերնէն ելած հրացայտ խօսքերուն. Նա ցոյց կու տայ իր դժոխք կուրծքը որ

«Գիտես թէ մարած է գինչ հին կանթեղ,
Բայց թէ տամ քըչիկ մի քուքուրտի գեղ՝
Ցանկըռկած գաշտերդ ամեն ի ման գայ,
Դու այլ հետ լերանց գողաս գինչ տըղայ...
Թէ ուզենամ նոր կանգնեմ ես սարեր,
ՑԱրագած գետաղան գըրկեմ բարկ քարեր...»

Նա կը սպառնայ մրտտելու երկիրը ու ամպերը, բոցեղէն գետ մը ժայթքելու. վա՛յ կը գուայ անոր, որ իր դէմ կը կանգնի...

Հանց գիտցէր զԱլագ Մասիսն՝ ով եղբայր,
Հանց ցըրտիկ ծոցեր՝ ունին սիրտ հրավառ.
Մ'ասեր թէ գոքա մեռած են մարած
Զանցնիր այն հըրագն զոր վառեց Աստուած։

Եւ Նահապետն Մասիսու ժայռէն կայծ հանեց իր երգով ու վառեց ազգին վառ վառ ճրագներ...։ Իր բանաստեղծ ոգւոյն ճրագն ի ձեռին, ման կու գամ Հայրունիի հրաշակերտ աննման գրախտին մէջ, և նզովք պիտի կարդամ իմ ընթերցողներ, եթէ մոռնամ յիշելու այն ամէն ծաղիկներն, որ հոն բուսած են հայու արիւնով և հոն ապրած են հայու զեփիւռով. եթէ չյիշեմ Սիսուանն և Արարատ կամ անոնց նման միւս հսկայ գործերը, զա ոչ է իմ մեղք այլ գրքիս անձուկ էջերուն։ Հայրու-

նիի սրտատրոփ, երկնադաշնակ բամբ եւ բոմբը՝ Նահա-պետին շուրջը կը հաւաքէ Հայոցս սրտեր սիրակայծ. ա-հա կը թրթռայ Նահապետի սանդուրը, և բարձր Հայ-կարանէն՝ յաւիտենից հսկայազանց փնչող, փառագոչ բամբի՛ռն՝ ձայն կու տայ, և մոռացութեան խոր ան-դունդէն դուրս կը կանչէ Հայոց մեծաց փառքերը և հայրենի հուրը...

«Ցնծայ զըրգարանն ի բնագաւառն Հայաստանեայց»:

կը բարձրանայ բամբիռն, կը քարոզէ, կը պատմէ Նա-խահօր ու Նախամօր անախտակիր տարփանքն, հար-սանիքը, կ'երգէ անդրանիկ հարսին գեղձան հօտօտները, մեղուակն աշուըններն, կ'երգէ սէրն սիրական և կուսա-կան, պատուէր կու տայ գիշերուան ոգիներուն, որ գան համբուրեն Ադամայ դէմքը, ստղոխներու՝ որ գան փչեն Եւայի մեղոյշ հոտոտներուն մէջ, պատուէր կու տայ թռչուններուն, տատակներուն, խաժառագեղ ապառաժնե-րուն, ալէշատ ծովուն, աւուծներուն և համասփիւռ օդին որ երգեն, կարկաջեն, մռնչեն ու հառաչեն սէ՛ր. սէրը հնչեն, սէրը երգեն...

«Ըզնէր՝ երկինք, ըզնէր՝ երկիր, ըզնէր՝ ո՛վ բնութիւն.
Համա՛յն հաստուածք միաբարբառ հընչեցէք Սէր Սէ՛ր...»

Հեծեց երկինք, թընդաց երկիր, հառաչեցին ան-դունդները, դղրդեցաւ համօրէն տիեզերք

«Զարարչագործն վերօրհնելով եւ զմիշտըն սէր...»

կը թռչինք ի վարդբլուր հոգւոց մը կը հանենք մարդկութեան անմեղ անդրանիկ Նահատակ Աբելի շու-շանապատ քնարանին վրայ. կը թառինք էին փառք

*ուռճալից Մասիսու ալեզարդ գլխին վրայ և կը գտնենք համադրելցս խանձարուր Հայոց մեծաց մեր հարազատ սարեն՝ գարշապարքն քծնող ծառայն Ոլիմպոսը և Թուլցիկ Պառնասսը. կը գտնենք վտակ վճիտ զԱկոսին, ուր խօսնակն Ալիշան պերճ ու բարձր քերթողական արհեստով կը փչէ իր սրինգը կը գրգռէ բնութեան երաժշտապետ սոխակի նախանձն, ուշադիր իր նուագին, պէշ պէշ կը գտնենք նիշ նիշ ձայնող, վէտ վէտ վիժող, մէտ մէտ մըրցող, խուն առ խուն, մուն առ մուն տեղատարափ դարավոր ալիքները, որ թինդ թինդ առեալ կայտուեն բոյս առ բոյս... Հ. Ալիշանի քնարը համերական խորոտ յաղթական ձայնը կը տարածէ Հարանց լեռնադաշտին մէջ, Հայկազանց Ոգին հոն կը տանի զմերս դիւցազներգու Նահապետն Հոմեր՝ ուր Հայոց Հարանցն Հօր նետէն տապալեցաւ տիտանեան Բէլ. կը շարունակէ իր երգերը, կը շարժէ կիթառը և փառօքի երկչոտ մարտիկին յոյս ու խրախոյս կը ներշնչէ. Գարանաղեաց լերանց քաջերուն և ուրուականներուն կը դուժէ ահեղազօրն արի արքային Տրդատայ մահը, Հայաստանի ոգիներուն, վհերուն, սաբերուն կը հրամայէ սուգ, լաց ու կոծ։*

*Նահապետը տարտափած, շուարած, կ'ողբայ տիրանենց դաւաճանութեան վրայ. ազատը փողով կ'ողբերգէ Տրդատայ քաջութիւնները, արիութիւնը և արքայաշուք թաղումը։ Մինչդեռ հառաչով ու կոծով կը հեռանանք տանն Հայոց փառք ու պարծանք ահեղազօր Տրդատայ գերեզմանէն, նոյն ողբերգակ Նահապետը նոր ոգի առած, հրատապ և բացայայտ կուրծքէն՝ կը հնչէ հնչական ճակատա-*

մարտի երգն, կը զգրգէ հայութիւնը. կը հնչէ կրակուրաց երգը.

«Ցոլան ցայտեն փառք աստեղն Հայկայ.
Տոն Սասանայ հաս օր վրիժուց...»

Արքայն Պապ արեւտաքէն կը դիմէ, կը դիմէ սկայաքայլ քաջակորովն Մուշեղ. յաղթական ծիծաղով բերկրութեամբ, բոցաշունչ կը դիտենք Թորգոմի քաջարի նետահարներու եռանդուն կռիւը, նոյն ճակատամարտի մէջ կը կռուի իր սուրբ գունդէն տարամերժեալն Մերուժան, այդ սեւերես Արծրունիին երեսն ի վեր բանաստեղծն կը նետէ իր չանթաձիգ բառերն.

«Կա՛ց Արծրունեաց դու կոյս ամբարիշտ
Հայոց թագին հետախընդիր,
Ցարժան վարձուցդ հի՞մ խուսափես մինչ.
Ահա հեռա քեզ թագաւիր»։

Կը հասնի Սմբատ և ազգուրացին կոնտ գագաթը կրակոտ շամփուրի թաղով կը տաղէ, կրակի արբանեակը կրակով կը պատէ... Պարսից գունդը խայտառակարար կործանուած է, կը գոռայ Գրգուռ, կը մռնչէ Մամրուտ. Մուշեղի շքեղ մազերէն յաղթութիւն կը տարափէ... Պատերազմի դաշտի մէջ Նահապետի նուագներն հրդեհող են. Սմբատէն, Մուշեղէն վերջը՝ պէչ պէչ պշուցեալ կը դիտենք զԱւանձար. ահա ձիաւորեալ կ'երթան Հայք ի հանդէս, վախը կը թնդայ կը դողայ Պարսից սեւ հոգի գնդին մէջ. կը լսուի հայ երիվարաց փռինչն եւ դոփիւն, կը լսենք անոնց դափրն եւ թնդիւն. Պարսից վրայ կը սուրայ Աւանտունի հեծելազօրը, փոշին բարդ ի բարդ վեր երկինք կը բարձրանայ... կայծակ

ցանող հայ գնդին մէջէն անդունդներու սարսափ երկիւղ ազդող ձայն մը կը գոռայ.

«Երթամ պսակել պղտորել ըղձեղծ Պարսիցըն համբաւ,
Հայոց քաջաց տամ հրաւէր՝ Ամատունիս Առանձար»։

Արեաց գանէն կը հնչէ վրիժապահանջ ահեղ շուինդը. Հայաստան այդ իր ողորմելի սուխի բիւրաւոր հրասկէն չի սարսիր, Սեպուհն Վասակ ձայն կու տայ.

«Զարթիք վեհազունք· զարթիք զայրացիր իմ բոցահուր·
Վասակն եմ Սեպուհ Մամիկոն, փառաց ամեն ձեզ ձայն.
Հայո՛ց մանկունք, ձի կոչէք ընթացէք,
Արեամբ ժանտից ըղտուտրս քամեցէք»։

Հայք՝ կռուի սուրբ ձայնը կը լսեն, կը վառին Սեպուհին բերնէն վրիժուց կրակ փչող բոցով, կը սատանին սատանածին Սասանայ ծնունդքը։ Սեպուհն Վասակ կը թռչի կը ոլոնայ, կը զարնէ քաջաբար և կը զարնուի....

Նահապետի յաղթական քնարը ողբերգութեան կը փոխուի. նա խշխշող սրտով կու լայ Արարատայ վրայ տարածուած ազատութեան յետին գիշերը։ Պատեր է լռութիւնը և սարսուռ, լուռ է երկինք, լուռ է ծով և լռած են պատերազմի բոմբիւնները. կը լսուի միայն Նահապետին լալկան ու լացընող սանդուրի ողբն,

«Լուծաւ տանուն արշակունի, ո՛հ, եւ բարձաւ ազատութիւն...
Յե՞ս ո՛վ գիշեր, մթա՛կ գիշեր, յե՞ս, յե՛մ բամբիռն և յԱյրարատ...
Ա՛հ, ըւթաղցրեկըն կորուանէ զկենտաղին ազատութիւն
Ծնրայէ բամբիչն հեղաձեմեկ եւ հեւսխայ հրամանահան»։

խոցուած սրտով, կ'ողբայ զԱրարատ, կը յիշէ անոր չքնաղ գեղն, և անհամեմատ տարփելի բնութիւնն և դիւցազնական փառքն ու յիշատակ անմռայ. ողբացէք կը գոչէ, ձեր անոյշ հայրենիքը ողբացէք...

Արտասուաց կայլակները բիբերնուս վրայ սառած, կը գտնենք ճախրասլաց սեւ սիրտ սեւ հոգի Սիւնեաց տէրն զվասակ. ալեզարդն Ղեւոնդեայ հրաթաղանթ շըրթունքէն կ'որոտայ. «Ո՞ւր կը վազես Սիւնեաց տէր». լպիրշ փառամոլ անզեղջ մատնիչը կը պատասխանէ.

«Փութամ առ տէրն Արեաց, ըզթագ վեհափառ
Առնուլ զՀայոց, այնքան քըրտանց իմ փոխան»։

Սգգուրայը աւաղելի էր և յաւերժական ողբերու արժանի. Նահապետի զայրացկոտ քնարը կը գոռայ անոր՝ վրէժ յուխտէ, վրէժ անմեղներէ, վրէժ տարաբախտ կուսաններէ, հարսերէ, փեսաներէ, որբերէ և այրիներէ... Բանաստեղծը վրդոված է, չանթեր կը տեղայ իր անուանակից սուրբի բերնէն. կարելի չէ մեղմել անոր սուրբ զայրոյթը, կարելի չէ բարեխօսել.

«Այր ազգատեաց չունի երբեք բարեխօս...»

Հայ Յուդան պարտաւոր էր, Արեաց տէրը անոր ոչ թագ պարգեւեց. այլ ահեղ զնդան... Նահապետի գեղակերտ ոսկեհիւս քերթուածոց մէջ, ազդեցիկ չեշտ մ'ունի ազգուրաց Սիւնեաց տիրոջ ողբերգու տեսարանը։

Կը բանայ Հայաստանի ոգւոյն պատկերը, որուն առջեւ ամբողջ մարմնով սարսուռ մը կը զգանք, հոն ոգին թէեւ անշունչ, սակայն կը լսենք մեր սրտէն արեան թափող հառաչ, կոծ. դառն է հին յիշատակաց վերյիշումը. դա հայրենի գերեզմանի պատկերն է, որուն ամէն աւերակներու անմռունչ բեկորներն քեզ կը նային կոտրած սրտով, և կ'ուզեն ըսել. «Եթէ յաւերժն Հայաստան դեռ ո՞ղջ է»... Հայրունին մեզ իր բամբիռներովը

գաղափար կու տայ մերթ սոսկավիթխար զայրացկոտ ովկիանոսի յոյզն ու խռով, մերթ քաղցրաթախիծ սիրակարկաչ վտակի ներդաշնակ պատկերն, մերթ խրոխտ ու գոռոզ սոխակի յաղթական տիրապետող գանգիւններու հոգեզմայլ բամբն։ Անոր ամպաճեմ ու վարդաճեմ գողտրաբարբառ քնարերգու ձայնն՝ ճարտար է զմեզ հայրենիքի փառքով փառաւորելու, լացով կոծելու. ի լուր իր հրաշունչ ձայնին՝ նախ կը քաջալերուինք, յետոյ կը լքանինք, կը տեսնենք հայրենիքը մերթ կանգուն և մերթ աւերակ, աւերակնե՜ր որոնց վրայ կը փլչի նաև մեր սիրտը... Այս խորհրդածութեամբ կը թափառինք Հայոց Բաժիններու ծովածաւալ աշխարհագրական նուագող նկարագրութեան մէջ. վարպետ բանաստեղծն՝ հոն այդ ընդարձակ էջերուն մէջ, իր հանճարին ամենէն քաջակորով հարստութիւնն թափեր է ճշգրտօրէն ներկայացընելու Հայ հողին ամէն գաւառներու, քաղաքներու, գիւղերու, ձորերու, բլրակներու, լեռներու, անդունդներու, պալատներու և գեղակներու պատկերներն, պատմական յիշատակներն, և ամենուն վրայ գրուագեր է գեղեցիկ յատկանիշ ածական մը։ Այդ էջերուն մէջ Հայրենեաց պատկերը մարգարտաշար տողերով հիւսուած ու խառնուած է ոչ Սորաբանի մը գրչով, այլ Պինդարական կիթառէն ցայտուն և հնչուն ձայնով։

Հայրունիի տաղին մայրամուտքին մէջ, Հ. Ալիշան ճերմկած մազերով և ծերացած դողդոջուն ձեռքով կը զարնէ իր քնարը, հոն այլ ես հայ քերթողներու նահապետն կ՚անուանէ ինքզինքը. ասմիկ ժողովուրդը սրտա-

*թունդ կը յափշտակուի իր աննման աշուղին ձայնէն. Ծե-րունին կ'աւանէ*

*«Հայո՛ց աշխարհնի, գարունդ է հասել,*
*Ահա գեղեցիկ գարուն քո եկել»․*

*Ինչ սիրուն երգեր, ինչ սիրուն վէպեր երգեց Աշուղը, իր շուրջը բոլորած, իր ճակատը համբուրած ամբողջ հայորդիք, պաշտելին զինքը. Հայուն գարունք եկաւ ու գնաց... Բայց այդ աղաւնին տուա՞ւ աւետիս...*

*«Այլ ի՜նչ ափսոսամ ըղձերդ Հայաստան՝*
*Երբ ձեռքն Աստուծոյ տեսնում յանդիման»․*

*Հազար ափսոս ու վաշ վաշ կը կարդայ աշուղն Հայոց աշխարհին. իր մաշած չնչին վերջին հառաչանքը տալով Մասեաց սարէն հասած զեփիւռին, զայն կը հասցնէ կը ձգէ արձագանգ հայոց սրտին մէջ, ձայն կու տայ Թորգոմեան որդւոց, Որդի՜ք,*

*«Թէ զփառքն հայրենեաց ձեզ այլ գերեք փառս..,*
*Հետ Նահապետին եկէք ի յԱրարատ»:*

*Հայրենի կրակով՝ սրտերնիս վառած, ժուռ կու գանք յԱ-ւարայր. կ'երգէ պլպուլիկը, կ'երգէ զանազան թռչքն Հայոց, կ'երգէ մեր սրտի բարեկամ հովեակն ու խօս-նակ.*

*«Կէս գիշերն անել էր գիշերավար*
*Լուսնակն յամպի տակ բացխփիկ խաղայր.*
*Մինչ հովերն շրջկոտ կախ թեւօքն յանատ*
*Օդոց և ծառոց հանդիստ կու կարդայր.*
*ԶԱւարայրի մութն ու կանաչ ծոցիկ*
*Ծայրէ ծայր հերգքէր Տրդմուան հանդարտիկ.*
*Միատաքանդման անձայն խաւարիկ*
*Թուլեցընելով հազար թեւր ալիք»*

Ի յատակից ու անտից կան երկու բանակք
Իբրեւ անկըրուխ ընկած մնացնակ.
Ցերկուցըն մէջոյ բարձրացած լուսնակ
Կու թուի վահան զօրաց պահպանակ »։

Սեւ գնդին վրայ կը տեսնենք տարածուած խաւար, մեր գնդին վրայ լուսնակն լուսավառ և մեր այնքան քաջերէն քան զամենքն քաջ,

«Ման գայ ու փըչէ զընդին Հայոց հուր,
Վարդա՜նն այն վառած ի սէր եւ ի սուր »։

Կ'երգէ պըպուլը գքաջն Վարդան և Աւարայրի վառ վառ ծաղիկներ. կ'երգէ պըպուլը կրօնքի կռիւը. կ'ողբայ խոււնակը

«Ծերո՜ւկ ու կարմիր գինչ վարդ ու շուշան՝
Ո՜հ, քանի՜ պղտոր են ի Շաւարշան՝
Գըլուխք ի խաչին եւ սոք յարուշան՝
Մանկըտիքն Հայոց՝ որ ի քուն մահուան »։

Կը ննջեն ի քուն անմահունակ. խոնաւ գիշերը կ'իջնայ գինչ տարափ... լո՛ւռ, կը գոչէ պուլպուլ, լո՛ռ կացէք... վարդանը կը մրափէ... Ձայն տուր պլպուլիկ, կանչէ հոգեձայն, ձայն տուր առ Վարդան որ

«Ցէչէ զՀայաստան տուն իւր սիրական
Հայաստան յէչէ վէր կարմիր Վարդան »։

Բայց օտարին հովը փչեց դառնաշունչ, սուգը պատեց մեր գեղեցիկ աշխարհին. քարէ սիրտ, սառէ շրթունք վատակներ սեւ օրեր կարդացին հայրենեաց հողուն։ Ցյան ի ծոցին Նահապետն, լարեց իր քնար, գոչեց, հառաչեց, որոտաց ու գոռաց, բայց իրեն... և մեզի միայն խաւարն ու սուգ մնաց.

«Հէ՜ խեղճ ծերուկ, զարկ ըղձործիդ ու գքեղ քարի...

*Ըստ Նահապետը և սիրտը յերկուս ճղքած, մոտ գե-րեզման։ Եւ Արարատայ երկճիղ գագաթէն երկնցու-լուսին, վառեց իր սուրբ ջահը ծեր բանաստեղծի պաշ-տելի գլխին վերեւ....։*

*Մենք հնչեցինք Նահապետին Հայրունի քնարին ամե-նէն հրաշունչ բորբոքած, և բանկած կտորներն. բայց նա բանաստեղծ է իր ամէն գրութեանց մէջ. նոյն իսկ ի խոր ծերութեան, մարած չէր իր բոցավառ երեւակայութեան պատանեկան հրդեհը. նա բանաստեղծ էր նոյն իսկ հո-գեզմայլ ճառերուն, ներբողներուն, յորդորական և կրօ-նական գրութեանց մէջ, բանաստեղծ էր փշոտ ու փոշոտ հայ բոյսերն և արմատներն նկարագրած ատեն. բա-նաստեղծ էր իր անթիւ ու անհամար նամակներուն մէջ, որոնք յանուցիր կը պահուին իբրև մեհենական սրբա-զան մագաղաթներ իր ծանօթ գրագիտայ, իր հետ թըղ-թակցութիւն ունեցող բարեկամաց և բանասիրաց ծոցին մէջ։ Գործիս անձուկ էջերն մեզ թոյլ չեն տար յիշելու և յիշեցընելու նուագներու միւս հատորներու մէջ հին-նալի տաղերն և տաւիղներն, որոնք ալէկոծ հոգիները կը խաղաղեն, բեկեալ սրտերը կը մխիթարեն, գաղջ հո-գիները կը հրկիզեն։ կարելի չէ հնչել Թուշիկներու յու-շիկ ու անուշիկ ներքնաքնարներու հայրենաթունդ քնարի մե-ղոյշ բամբռունք։ կարող չենք գնալ հանդչիլ խմաստասէր Նահապետին Եղեւնիին ստուերին տակ, ուր նա մեզ կը պատմէ՝ ողջ միքէ բխած ծաղիկ իմաստներու իմաստուն և նուագող խոկումներ, ուր մեր տկար միքի բոցն զե-փիւռի մեղմիկ քամիէն չի մարիր այլ կ'արծարծի...*

Նահապետին բանաստեղծական արդեանց վրայ ընդարձակեցաւ և տարածուեցաւ մեր համառօտ գրութիւնը, և քանի որ մեր քերթողահայրը իր նուագներով տարածած էր իր հանճարի համբաւը, պէտք էր որ մենք ալ իր գրական արդեանց այդ բաժինը քիչ մ'աւելի ընդարձակ բննէինք, և մեր այս գաղափարին յուսանք հաւատարիմ մնացինք։

## ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ԵՐԿԵՐ

*Բանաստեղծական երկերէ վերջ, Հ. Ալիշանի հանճարը և գրական անվրէպ արդիւնքն դուրս ցայտեցուցին իր ստուարահատոր հայ բնագաւառներու նկարագեղ երկասիրութիւնները։ Իր այս ճիւղի գործերու անդրանիկ աշխատութիւնը պատրաստած է աշակերտութեան առեն, ինչպէս կանխաւ յիշած ենք, վարժարանցութեան առեն գրած էր իր Քաղաքական աշխարհագրութիւնը. սակայն Նա շուտով չհրատարակուիր, այլ տարիներ անցնելէ յետոյ, շնորհիւ ուսումնատենչ մեկենաս Յովհաննէս Ամիրայ Տատեանի նիւթական ձեռնտուութեան, 1853ին այն լոյս կը տեսնէ, գրեթէ բոլորովին նոր ձուլուած. ուսանողութեան առեն իր այդ երկասիրութեան առաջնորդ առած էր Շօշարայ և Մինցայ գաղղիացւոց* Cours Méthodique de Géographie *գործն, բայց յետոյ կը ստիպուի ուրիշ աւելի ընտիր ու նոր աշխարհագրական հրատարակութիւններ իրեն առաջնորդ առնելու։ Քաղաքական աշխարհագրութիւնը ծովածաւալ գրքի մը գաղափար կու տայ. տեղագրական և պատմական տեղեկութիւնք հետաքրքրական են. աշխարհագրութեան հետամուտ ամէն անձ՝ այդ երկասիրութիւնը կ՚ընդունի իբրև յորդառատ աղբիւր մը, ուր միայն հնութիւնը կը գտուի։ Այդ գործի լոյս տեսնելէն երկու տարի յետոյ կը հրատարակուի իր ընդարձակ*

Հայաստանի տեղագրութեանց լուսաշող երկանց առաջին ճառագայթն «Տեղեկագիր Հայոց մեծաց» 100 էջ, մեծադիր, երկլեզեան, մանրագիր երկասիրութիւնը, զոր նոյնպէս պատրաստած էր իր ուսանողութեան առեն : Այդ հրատարակութեան մէջ ամփոփած է հայ երկրի ամբողջ գաւառներն իրենց քաղաքներով և գիւղերով։ 1870էն այդ գործէն աւելի համակրելի և մատչելի Հայկական Նշմարքները մեր ձեռքը կու տայ. առոնք երեք հատոր պատկերազարդ գրքեր են, որ Հայաստանի առաջնորդ կրնան կոչուիլ։ Հ. Ալիշան հոն իր բանաստեղծութիւնը, և յուշիկներու հրապուրիչ հոգին չէ կրցած ծածկել. նա իր հիւրասէր ընտանի լեզուով, ընթերցողը անով կ'առաջնորդէ Հայաստանի՝ զարծով և պատմութեամբ հռչակաւոր քաղաքներու, գետերու և դղեակներու մէջ։ Բայց այս երկասիրութիւնք իրեն գրչին համար զբօսանքներ խաղալիկներ էին. նա ամէն նիւթական պաշտամունքէ ազատած, երբ գրչին հետ խղկին մէջ երկար առեն մնալու բաղդն ունեցաւ, իր լուրջ զբաղումն եղաւ մեծղի և հաստ Հայկարաններու մէջ, չանմոռանել տեղագրական և պատմական մեծապարած գրական տառղձներ։ Հայկարանները գործածելու ժամն կը հասնի. 1881էն սկըսեալ հետզհետէ կը հրատարակէ յաւէրժական հանճարի՝ և տաղանդի կոթող տեղագրական և պատմական՝ Շիրակ, Սիսուան, Այրարատ և Սիսական հայ բնադաւառներու նկարագիրը տիեզերական հմտութեամբ ճոխ ու հարուստ երկասիրութիւնները։ Ատոնց լոյս տեսնելէն առաջ Հ. Ներսէս Վ. Սարգիսեան Հայաստանի ճամբոր-

գուժենէն վանք կը վերադառնայ, իր հետ բերելով Հայրենի երկրին աւերակներու ականատես ճշգրիտ պատմութիւնը. որ Հ. Ալիշանի գործերուն առաջնակարգ օգնութիւնն և ստոյգ աղբիւրն կ'ըլլայ*։ Ամենէն առաջ

* Մեր միաբանութեան այդ վաստակաւոր, սիրելի հայրենասէր և հայասէր միաբանին Հայր Ալիշան շատ երախտապարտ է, և իր գրուածոց մէջ անոր հրապարակաւ շնորհակալութիւն յայտնած է։ «Հայոց մեծաց», տեղագրութեան յառաջաբանին մէջ գործին զանազան աղբիւրները յիշատակելէն յետոյ, գրած է. «... ի ձեռին ունելով զպատուականագոյնն եւ զչեւ եւս հրատարակեալ վաստակ մերոյս որդւոյ եւ հօգեկից եղբօր Հ. Ներսիսի վարդապետի Սարգսեան, բազմամեայ ուղեւորի ի մասն փոքուն եւ Մեծաց Հայոց եւ հաւատարմագոյն ընդօրինակողի հայ արձանաց տեղեացն յորս շրջեցաւ... յերիւրեցաք զայս Տեղագիր»։ Իսկ Շիրակ գաւառի տեղագրութեան յառաջաբանին մէջ կը կարդանք. «Յառաջ քան զօժանդակութիւն լուսագրութեան, ի տեղագրողս եւ յընդօրինակողս արձանացն՝ սակ աչաց զննութեամբ, քաջ ի բաց վերագոյն քան զընաւս զատ կրօնակիցն իմ հանդուցեալ Հ. Ներսէս Վ. Սարգիսեան, որոյ վաղ ուրեմն հրատարակեալ է Տեղագրութիւնն ի Փոքր և ի Մեծ Հայս, եւ ես զիմս զայս ի յիշատակ երախտեաց նորին նուիրեցի»։ Միաբանութիւնն՝ այս մեր միաբանը յղած էր ի Հայաստան, որ հայ բնագաւառի ամէն կողմ այցելելով, գրէ Հայաստանի ընդհանուր պատմութիւնը. մեր միաբանը եռանդով կը սկսի կատարել իրեն յանձնուած այդ գեղեցիկ պաշտօնը. կը կատարէ իր գրական ուղեւորութիւնը (1843–53) Փոքր Ասիայէն կ'անցնի Հայաստան (Զմիւռնիայէն–Ատրպատական). հոն շատ նեղութիւն կը քաշէ՝ ոչ հայ վանքերէն՝ ուր շատ գովելի հիւրասիրութեանց կ'արժանանայ, և կը գտնէ փոխադարձ համակրանք և եղբայրական սէր. այլ կը նեղուի բնաշխարհի այն գիւղերուն մէջ, ուր իր անխոնջ հոգնած մարմնոյն հանգստարան չի գտներ և ամիսներով կը թափառի գիւղացիներու աղքատին, փլած խրճիթներու մէջ. յետին աստիճանի չարքաշ կ'ապրի, իր ամենէն մեծ խնջոյքն կ'ըլլայ կտաւատի իւղով պատրաստուած փիլաւը... Փոյթ չէր այս ամէնը, իր նպատակը սիրելի էր թէ իրեն և թէ

կը հրատարակէ Շիրակ գաւառի տեղագրութիւնը, զոր գեղազարդ ձօնով մը կը նուիրէ Հօր Ներսիսի յիշատակին։ Ստուարահատոր գործերուն այդ անդրանիկ հեղինակութիւնը՝ բաղդատմամբ յաջորդաբար լոյս տեսածներուն, շատ փոքր է և աղքատ. սակայն նա իր անուանակիր ամբարներուն մէջ, կը բովանդակէ ցորենաշատ գաւառի ամբողջ աշխարհագրական և հնախօսական ընդարձակ պատմութիւնը. հայ գրականութիւնը անով՝ առաջին անգամ գաղափար կ'առնու կատարեալ տեղագրական երկասիրութեան. դա այնքան գնահատելի կ'երևի, որ նոյն ատենուան Խըմիրեան մրցանակի յանձնաժողովը՝ յանկարծ հեղինակին, կը վարձատրէ զայն 200 ֆրանքով։ Հ. Ալիշան իր տեղագրութիւնները եթէ կանխաւ հրատարակել սկսած ըլլար, նա այժմ իր խոստացած ամբողջ գաւառներու նկարագիրն գրած կ'ըլլար ուսումնատենչ բանասիրաց գրասեղանին վրայ, սակայն նա իր կենաց արեւուն խոնարհելուն ձեռք կը զարնէ անոնց։ Շիրակ գաւառի տեղագրութեան յառաջաբանին մէջ, նա արդէն կը յայտնէ, որ իր ընդարձակ աշխարհագրութեանց հատորներն կազմելու համար, ամէն կարևոր պատրաստութիւններն տեսած է. և ինչո՞ւ զանոնք հրատարակելու յանդգնութիւն չունենար. ահաւասիկ հետաքրքրական հարց մը։ Դիւրին է գուշակել որ Արարատի և Սիսուանի պէս պատկառելի գրքեր, տպագրական ծախ-

Ուխտիս։ Սակայն նա այդ խիստ շահեկան հետազօտութիւնները կիսատ ձգելով, կը ստիպուի վանք քաշուիլ. հրամանը վերէն էր, նոյն ատենի ազդեցիկ աթոռի մը վրայէն եկած...

քերու համար, մինչ մեկենասներու կը կարօտին, սակայն Մխիթարեան մամուլը ատոր այնքան կարեւորութիւն չի տար, նա շատ անգամ յոյսի խոստումնալից թելադրութենէն քաջալերուած, կը սկսի մեծածախ գործերը. բայց այսու հանդերձ Հ. Ալիշանի տեղագրութիւնները 1884 թուականէն առաջ անտիպ կը մնան. հեղինակը կը բաւականանայ փոքր գործերու հրատարակութեամբ. տակաւին միաբանութեանս մէջ Հ. Բագրատունին իր դասական դիւցազներգութեամբ և չքնաղահիւս քերթողներու գլուխ գործոցներու թարգմանութեամբ, ու իր հայերէնագիտութեան անընկճելի համբաւովը կը տիրապետէր Ս. Ղազարու գրական գործունէութեան վրայ, գրչի և տաղանդի շունչը իրմէ կը լուէր, անոր գրական փառքի արեւուն շլացուցիչ լոյսին մէջ, Նահապետին ճառագայթարձակ աստղը իր համեստութեան մէջ կը պղտորուէր. բանաստեղծ էր նա, և բանաստեղծին ասպարէզ պէտք էր, պէտք էր զայն քաջալերութեան վառվառուն հրով բորբոքել... Եւ Հ. Բագրատունիի փայլուն վերջալոյսի կապոյտին վրայ կը տեսնենք Նահապետի աստղը դէպի զէնիթ ձգտող՝ Բագրատունիէն յետոյ ամբողջ վանքը կը հնչէ Նահապետ և կը հռչակուի միայն անոր տաղանդով՝ Հ. Ալիշան իր բեղմնաւոր գրչով Բագրատունիի արեւմուտքը շուտով մոռցընել կու տայ՝ իր ամենէն մեծ և ազդեցիկ քաջալերողն և բարոյական մեկենասն կ'ըլլայ Ուխտիս ներկայ վեհ. Աբբահայրն Գեր. Իգնատիոս Վ. Կիւրեղեան՝ Սա Նահապետին հետ Թափայէլեան վարժարան եղած ատեն, գիտէր ու կը տեսնէր

թէ այդ ժիր գրիչը ինչպիսի մեծ գրական պատրաստութիւններ կը տեսնէ, նա կ'իմանայ որ այդ համեստ միաբանը յառաջ քաշելու ժամանակն հասեր է, և նոյն իսկ ուշացեր է. կրկին դիմումներով կը յորդորէ զՆահապետ որ տպագրութեան տայ իր պատրաստած տեղագրութիւններէն մին. Հ. Ալիշան պատճառանք կը բերէ գործին տպագրութեան անհամար ծախքը, որուն միաբանութեանս, տպարանը կարող չէ դիմանալ. Գեր. Արբան, այդ դժուարութեան հոգածութիւնը իր վրայ առնելով, տեղագրութեան առաջին գործը մամուլի կը յանձնուի։ Մի քանի տարի վերջը կը սկսի երկրորդ գործին Սիսուանայ տպագրութիւնը. Նիւթական ծախուց տակ ընկճուելու երկիւղ չկար. Գեր. Արբան մեծ յոյս ունէր որ ընկերագրութեամբ այդ ստուար գրքերը կարելի է շուտով սպառին և գոցուի ծախքը։ Յուսախաբութիւն չկար. իւրաքանչիւր հատորի համար ամբողջ ծախք կ'ըլլայ 20,000 ֆրանք, որ բաժանորդագրութեամբ գրեթէ — կը ստացուի. սակայն տպագրութիւնը կը դանդաղի. յաջորդաբար հատորները լոյս չեն տեսներ. այդ վիթխարի հրատարակութեանց համար, մեր տպարանը շատ գաճաճ էր, անոնց լոյս տեսնալուն՝ պէտք էր մի քանի տարիներ, և տպագրութեան ուշանալուն ամենէն մեծ պատճառներէն մին ալ էր հեռաւոր տեղերէ հանելիք պատկերները, կարեւոր տեղեկութեանց յապաղումն և հեղինակին խըղճամիտ փոփոխութիւնք, զոր կը կատարէր գործին տպագրուելու ատեն, և այս պատճառաւ յառաջացաւ հեղինակին ծերութիւնը և ետ մնացին միւս խոստացուած



Գեր. Աբրահամ Իգնատիոս Վ. Կիւրեղեան:

գաւառներու նկարագրութիւնք, զոր կատարելու համար, պէտք էր առոյգ և թարմ հասակ, տաղտկալի և անտանելի աշխատանաց և վաստակոց կարօտ գործեր էին անոնք։ Բայց ինչ որ ալ լինի, այսօր ամբողջ հայութինը իր ամենէն գժուարահաճ իրական և չինծու բանասէրներով և գրագէտներով ի միասին երկրպագու են Նահապետի այն գողգոջուն ձեռքին, որ հայ մատենագրութեան պարգեւեց իր չորս ստուար տեղագրութիւնները, ուր կը կարդանք մեր պատմական երեք լայնատարած գաւառներու աշխարհագրական, և քաղաքական պատմութիւնը, անոնց մէջ կը գտնենք իւրաքանչիւր գաւառներու լերանց, հանքերու, բուսոց, կենդանեաց վրայ ամփոփ և ցանուցիր տեղեկութիւններ. մեզ կը ներկայանան վաղեմի և ներկայ հայաբնակ ամրոցները, կրօնական հաստատութեանց վանօրայք, կանգուն ու կիսակործան եկեղեցիներ, ուխտատեղիներ, խաչարձաններ, աշտարակներ, հայպետաց ճիւղագրութիւնք. հայրապետներու, հայկազուններու անցեալ իշխանութեանց վրայ կը ստանանք պատմական տեղեկութիւնք, որոնք քաղուած են բազմաթիւ հայ պատմիչներու գործերէն, իսկ աշխարհագրական հմտալից կուռ ու հոծ տեղեկութիւնք հոն խտացած կը տեսնենք մեղուօրէն քաղուած ու ծծուած ազգային և օտարազգի ուղեւորաց պատմական և աշխարհագրական ընդարձակ և համառօտ բազմաթիւ գործերէ։ Այդ հատորները առ հասարակ ամէն հայ աշխարհագէտի, բանասէրի, և գրագէտի համար կը ծառայեն իբրև գրական հարուստ բովեր ուր գանձը յարգի և անսպառ է։ Այս ընդարձակ

հատորներու մէջ ամենէն աւելի գերազանցապէս գնահատելի աշխատութիւնն է, հեղինակին այն նոր ու թարմ տեղեկութիւնները, որ ոչ միայն նամակներով տուած է, այլ կարդալով Հայաստանի ամէն աշխարհագրական եւրոպական նոր հեղինակութիւնները. նա շարունակ եւրոպական գրքերու ցանկերը կը պրպտէր, կը թըղթակցէր օտարազգի գրավաճառներու հետ և կը ճարէր նոր լոյս տեսած անգղիերէն, գերմաներէն իտալերէն տեղագրութիւններ. շատ անգամ հնախօսական և աշխարհագրական ընկերութիւնները այդ հրատարակութիւնները ուղղակի իրեն նուէր կը յղէին. իր աշխարհագրական և հնագիտական մասնաճիւղը հռչակուած էր ամէն գիտնական կաճառներու և ընկերութեանց մէջ. ինքը Եւրոպացիէն՝ և հայագէտ Եւրոպացի գիտնականներն ալ իրմէ կ'օգտուէին, և օգուտը փոխադարձ էր.

## ԶԱՆԱԶԱՆ ԳՐՈՒԹԻՒՆՔ

*Քերթողական գրութիւններէ զատ, Հ. Ալիշան ուրիշ բազմաթիւ ինքնագիր և թարգմանածոյ գրութեամբ հարըստացուցած է հայ գրականութիւնը․ փոքր գրուածներէն շատերն կրօնական են․ Նա ատոնց մէջ ցոյց կու տայ իր աստուածային սիրոյ երկնային անզուսպ հուրը․ փոքր գրուածոց մէջ, անխոնջ մտքի աշխատութեան գողարիկ գոհարներ են Ցուցիկք հայրենեաց Հայոց, Շնորհալի և Պարագայ իւր, Հայբուսակ, Հին հաւատք հայոց, Հայ-վենետ, Արշալոյս և այլն, ատոնք ամէնն ալ նախ «Բազմավէպ»ի մէջ լոյս տեսած են և նոյն ամսագրի ամենէն պատուաւոր էջերն կազմած․ Իր այդ իւրաքանչիւր գրքի վրայ ծանրանալը մեր նպատակէն դուրս է․ Ատոնք թէև համեստ ծաւալով մեզ կը ներկայանան, սակայն կը պարունակեն իրենց նիւթին վերաբերեալ այն խոր հմտութիւնը, որ մի՛ միայն Հ. Ալիշանի տաղանդէն կը բխի․ — «Շնորհալի և պարագայ իւր» Կիլիկիոյ մեր ամենէն շնորհալի և սիրելի Ներսէս Հայրապետի լիակատար կենսագրութիւնն է, դա հոգեզմայլ գրութիւն մ՚է. պատմական, աշխարհագրական և բանասիրական անհուն տեղեկութիւններով լի, դա միանգամայն գեղազարդ իրական վէպի գաղափար մը կու տայ․ Օրինակ, մենք կարդանք անոր էջերուն մէջ նկարագրուած Հռոմկլայի ամրոցը, ահա մեզ կը ներկայանայ հայ գի-*

նուրական պատմութեան ամենէն գեղեցիկ էջերէն մին. Նա մեր առջև կը պատկերացնէ կոխներով կոթող կանգնուած հայ ամրոցին հնութիւնները, ուր կը շնչենք կրակ ու փառք...

«Հայբուսակ»ը մեր աղքատ ուսումնական բառերու շտեմարանին համար, անգին գանձ մ՚է, և կարելի է ըսել՝ աննման աշխատութիւն մը. ուր հայ բժշկարաններու խորթ բառերը մասամբ մը կը մեկնէ և կը լուսաւորէ։ Անով կը տեղեկանանք Արարատեան դաշտի և ամէն հայաշատ քաղաքներու և գիւղերու և ամբողջ հայ բնագաւառներու մէջ ժպտուն ծաղկանց, բուժող տերևներու, արմատներու բնիկ և հարազատ անուանց և անոնց առասպելաշնորհ յատկութեանց։ «Հայ Վենետ» և անոր նման հրատարակուած իր ուրիշ մի քանի հատոր երկերն, մեզ կը պատմեն Հայաստանի հողէն ու ջրէն կտրուած և օտարութեան մէջ ապրող, աճեցող և օտարին մէջ ձուլուող գաղթականութեան անցեալը։ Ատոնք հայ գաղթականութեան պատմութիւնը կազմողի մը համար անմիջական տաշուած ու կոկուած առձեռն պատրաստ ատաղձներ են։ Համեստ ծաւալով երկերու մէջ խիզախ առաւելութիւն մ՚ունի իր «Հին հաւատք»ը. դա չքնաղ գործ մ՚է, արդիւնք երկարատև քննութեանց։ Հեթանոսութեան մոխրէն յարութիւն առած ներկայ հայ քրիստոնեայ ժողովուրդը, զարմանքով կը դիտէ հին հոգի առնող հայ ոգիները, պարիկները, որոնք իրենց խորհրդական մոգիչ ձիրքերով կ՚ուզեն կախարդել ընթերցողին միտքը։ Այդ գործը պիտի ծառայէ իբրև հայ կատանց

մեհենագիր, անոր մէջ պիտի կարդանք մեր քուրմերու, քրմուհեաց, դիւցազանց բաղդը ու փառքը, որոնց ճառագայթները կը խաւարին Հայ. Եկեղեցւոյ «Արշալոյսի» ճաճանչագեղ լոյսին մէջ, լո՛յս լուսաւոր, շունչ և հոգի Լուսաւորչի...

Գրական հոյակապ հսկայ գործիչին համար, յիշեալ հատորիկներն մտքի կայծեր էին, որ մերթ ընդ մերթ կը փայլատակէին իր պարզուկ սենեակէն. Հետաքրքրական էր տեսնել անոր վերջալոյսը, որ աննշան պիտի չանցնէր. Հայ գրականութիւնը այդ ծերունի մտքի մեծ վաստակաւորէն այլ ևս չէր սպասեր հսկայ գործեր, ժամանակը մաշած էր անոր միտքը, սպառած էր անոր ուժը. Նա պէտք էր անցեալին փառաւոր և յաղթական արդեանց մէջ հրճուէր և հանգիստ տար իր հիւծած կազմուածքին, հանգիստ իր համբուրելի գրչին. Սակայն ազգասիրութեան հրդեհը իր մէջ բռնկած էր. Լուսաւորել հայրենիքը, ճոխացընել իր սիրատենչիկ ազգին մատենադարանը, իրեն հետ ապրող բոց մ'էր. որ ծագեցաւ իր հանճարին հետ, և շիջաւ իր արեւուն վերջին ճառագայթին հետ. և այդ բոցավառ գաղափարը անշարժ չի թողուց Ծերունիին գրիչը. Նա շարժեցաւ. երկու տարուան մէջ լոյս տեսաւ Ազգիս պատմութիւնը, ոչ այն ոճով և գրութեամբ՝ ինչպէս մինչև ցարդ պատմած են մեր ծանօթ ու կէս ծանօթ պատմիչներն. Նահապետական էր նաև այս գործի պատրաստութիւնը. Այս ևս իր հայկական գանձարաններու մէջ ամբարուած անկապ՝ անպատրաստ և բոլորովին կիսկատար երկ մ'էր.

փութաց հոգի շունչ տուաւ այդ գրական քաոսին, և ունեցանք ստուար վիթխարի հատոր մը, ուր կը գըտնանք մեր ազգի նահապետէն սկսեալ՝ մինչև ԺԷ. դար՝ հայ պատմութիւնը, ուղղակի մեր բոլոր հարազատ պատմիչներէ պատմուած, իրեն ծանօթութիւններով լուսաւորուած. հոն կը գտնանք ամբողջ մեր պատմիչներու կենսագրականը իր բնատուր գրչով գրուած։ Զայն անուանեց «Հայապատում» և նուիրեց ի յիշատակ Ուխտիս երկդարեան յոբելինի։ Այն եղաւ նոյն հանդիսին մտաւորական ամենէն չքեղ զարդը և իր պաշտելի աճիւնին դամբանաքարը... Հ. Ալիշանի գրական արդեանց մեծ մասը խառնուած է «Բազմավէպ»ի էջերուն մէջ։ Անոր մէջ ծագեցաւ իր մտքին անդրանիկ աստղն։ 1843 մինչև 1901 իր հանճարը սաւառնեցաւ այդ ամսաթերթի էջերուն վրայ։ «Բազմավէպ»ը իրեն սիրահար գրական ընկերն էր, ինքը իր դաստիարակ Հ. Գ. Այվազովսկիին հետ անոր կեանք տուած էր, և ամբողջ կենօք նա պէտք էր խնամեր զայն, հսկեր անոր վրայ. և այս գործը իրեն համար նուիրական էր. նա «Բազմավէպ»ի հոգին եղաւ, և իր կորովի հանճարին շունչը նախ անով տարածուեցաւ հայ հասարակութեան մէջ. իր նուագներուն, Ցուչիկներուն ամենէն գեղեցիկ կտորները նոյն ամսագրի մէջ հրատարակուեցան, ժողովուրդը յափշտակուեցաւ, անոր ազգաշունչ գրչով. «Բազմավէպ» անոր յօդուածներով դիւթեց ընթերցողները։ Ազգը գնահատեց ճանչցաւ «Բազմավէպ»ով։ Տիւզեանց աւագ տաներէց քերթողահայրն Բագրատունին, զմայլած էր Նահապետին

երգերուն. Կ. Պոլսէն առանձին նամակով վանքէն կ'ուզէ իմանալ, թէ ի՞նչ նորագիւտ նախնի մ'է այդ Նահապետը. նա չէր գիտեր թէ Ալիշանն է Բամ' փորոտանի հեղինակն։ Պէշիկթաշլեան և այլ նոյն ատենուան Կ. Պոլսոյ գրագէտ ու բանաստեղծ նոր երիտասարդութիւնը, Բագրատունիին հետ կը զմայլին Հ. Ալիշանի քերթողական հանճարին։

Դաստիարակութեան ատեն նա անդադար «Բազմավէպ»ի մէջ հրատարակած է ազգային կենաց և բարուց գեղեցիկ յատկութեանց վրայ ձուլուած բարոյական ճառեր։ Հ. Այվազովսկիէն վերջը, երբ 1849–51 կը վարէ «Բազմավէպ»ի խմբագրութեան պաշտօնը. իր գաղափարին համեմատ, կ'ուզէր որ «Բազմավէպ»ը ըլլայ ժողովրդական ամսագիր. բովանդակէ համառօտ բազմաթիւ յօդուածներ, և խմբագրուած ըլլայ մի՛ միայն ներքին երիտասարդ քահանաներու գրուածներով. նա զ«Բազմավէպ» նկատած էր Նորընծայ քահանայից գրչի վարժարան։ Ցկեանս նա մեր ամսագրին յօդուածներ տուած է և միշտ իր աշխուրժ դիտող աչքը, անոր վրայէն չէ բաժնած, գրեթէ ամէն խմբագիրներու օրով՝ մանաւանդ իր աթոռակալութեան ժամանակ, խղճի մօք սրբագրած է «Բազմավէպ»ի ամէն պրակներն։ Եւ «Բազմավէպ» իր բարձր համբաւը մեծ մասամբ, նահապետական յօդուածագիր բանաստեղծ և բանասէր Նահապետին հանճարին կը պարտի։

# ՅՈԲԵԼԵԱՆ

Հ. Ալիշանի համբուրելի ճակատը պսակած էին իր ձիւնափայլ մազերն. մտաւոր աշխատութեան, անընդհատ գրչի շարժման նշանն էր ժամանակէն առաջ անոր մազերու սպիտակութիւնն. 1840էն մինչև 1890 անցեր էին 50 տարիներ. այդ կիսադարեան միջոցին մէջ, նա ազգին տուած էր նախ իր դաստիարակութեան պտուղ մտքի և կրթութեան սաներ. հրատարակած էր իր ամենէն գեղեցիկ գործերէն մեծ մասը. իր արուեստը դիմած էր, բարձրացած գրականութեան զէնիթին. ուսկից շող ի շող ազգին վրայ կը սփռէր սէր և հուր հայրենի, հանճար և միտք տարփելի. Յիսուն տարուան մէջ, նա իր գրական երկերով յեղաշրջած էր ազգին մտաւորական անդաստանը, հանճարեղ գրագէտներէն, վիպասաններէն և քերթողներէն մեծ մասը, իրմէ ազդուած, սկսած էին նոր յառաջադիմական կենսական մղում մը տալ ազգային զանգուածին. երախտագէտ հայութիւնը մեծ բանաստեղծ և մեծ մատենագիր Հօր Ալիշանի անզուգական գրական վաստակը պսակելու համար, առիթ տուաւ անոր քահանայութեան յոբելեան հանդէսը, որ զուտ կրօնական չմնաց, այլ պսակուեցաւ գրական ցոյցերով.

1890 մայիս 25ի օրն Ս. Ղազարու Մխիթարեաններուն համար, ամենէն նշանաւոր օրերէն մին էր. նոյն օրը ամբողջ մեր ազգը ոգեւորուած, հեռագրով, նամակներով,

ուղեցին անմահացընել Նահապետի գրական գործունէութեան յիշատակը. յարգանքի և երախտագիտութեան ցոյցերը պաշտումի կերպարանք առին։ Տակաւին նոյն օրը իր գեղեցիկ և եռանդուն յիշատակներով, թարմ մնացած է մեր յիշողութեան մէջ։ Մուրատ Ռափայէլեան աշակերտաց բազմութեան հետ, միանալով յոբելեան հանդիսի յատուկ ազգային նուիրակներ, իտալական պայծառ և ծիծաղկոտ կապոյտին տակ, Ս. Ղազար իբրև բեկոր մը Արարատեան երկրի, կ'օրօրուէր վենետկեան արծաթաշող լճակի վէտ վէտ ալեաց մէջ։ Նահապետին երգերը կը թնդային երիտասարդ հայ կուրծքերէն. զանգակներու ղանգիւնը, յաղթական հնչիւն մը կը տարածէ. իսկ խորանին վրայ բազկատարած բանաստեղծ ծերունին՝ իր յափշտակուած դիրքով, յիշել կու տար Աւարայրի դաշտը, իր անուանակիր սուրբի հրաշունչ և հոգեշունչ արտաբուխ օրհնութիւնները։ Նոյն օրը ակադեմական հանդիսի առեն, երբ նա ցնցելով իր սպիտակ խոպոպները առիթի մը թափով սկսաւ աստուածային քերթուած մը կարդալ, հանդիսականաց վրայ տարօրինակ յուզում մը պատեց, նա իր գերբնական զգացումը ամենուս զգացուց. նոյն վայրկեանին իր հոգեկան զգայմանց հրաբուխը բացուած էր, ինքզինքը չէր կրնար զսպել. իր կերկերուն դողդոջուն ձայնը, խղդուեցաւ կեցցէ Նահապետ յաղթական որոտընդոստ երկարատև գոռում գոչումի մէջ։ Օտարազգի մեծանուն հանդիսականներ կը զարմանային առ Հ. Ալիշան ցոյց տրուած և եզական, տարօրինակ, և խնկելի յարգանաց հա-

մար. կը զմայլէին՝ երբ ընդ մէջ երաժշտական խմբերգներու, կը կարդացուէին բազմաթիւ հեռագիրներ։ Հեռագրատանց պաշտօնեայք զարմանօք՝ կը հարցընեն ո՞վ է Ալիշանը, ո՞վ Նահապետը. անոնց համար տակաւին անծանօթ մնացած էր մեր սարերը սասանեցընող, ամպերը բարկացնող և վհերը մռնչեցնող մեծ բանաստեղծը։...

Յոբելեանին առթիւ մեր Նահապետին եղան նաև նուիրական նուէրներ, Թրքահայք նուիրեցին մի ալապաստրէ մետալ՝ արծաթ քնարէ կախուած, մի կողմը քանդակուած էր Նահապետին կենդանագիրը, միւս կողմը գրուած «Հ. Ղ. Ալիշանի, ի յիսնամեակ յոբելինի գրականութեան. երախտապարտ հայութիւն. Կ. Պոլիս 1890 Յունիս 7/19». Նոյն համարակութիւնը նուիրած էր նոյնպէս նորագիւտ ինքնագիր ոսկեգրիչ մը, Մանուէլ Եսայեան էֆէնտի օրացոյց մը. իսկ Տրապիզոնի ազգային երախտապարտութիւնը գաւառին և գիւղերու հազուագիւտ ծաղիկներու հաւաքածոյն, գաւառական հայ հարազատ բարբառով*։ Ռուսահայք նուիրած էին փետրաձև ոսկեգրիչ մը, Բաշինջաղեան նկարիչն Արարատայ իւղաներկ գեղեցիկ պատկերն. Կ. Շահլամեան ուլունքով

* Հայբուսակի յառաջաբանին մէջ, գրքին սատարողները յիշուելէն յետոյ, կը յիշատակուի նաև հետևեալն. «...յիշեմք շնորհակալութեամբ՝ հաւաքում մ'ալ 30էն աւելի թէ բուսոց և թէ անուանց, վայելուչ գրքաձև կողից մէջ ամփոփուած, զոր Պ. Հմայեակ Խուշպաշեան ուսուցիչ, Պ. Պետրոս Մարիմեան և այլ քանի մի բանասէր երիտասարդք Տրապիզոնեցիք՝ քաղքին քով գեղերէն և լեռներէն ժողովելով, յամի 1890, յոբելինի առթիւ, ընծայեցին առ մեր Հ. Ղ. Վ. Ալիշան, և որ հաճոյ եղաւ իրեն քան զայլ յիշատակս»։

*բաժնուած Պատկեր Հայաստանի երփնագեղ ձեռագըրծը. և այն՝ վարժապետ և հրատարակագիր յոբելեարներու պէս չարժանացաւ նիւթական նուէրներու, բայց այդ*



*Հ. Ալիշան իր գրասեղանին առջեւ։*

*վաղանցուկ ու մոռցուկ նուէրներէն աւելի, անթառամ և անհամեմատ նուէրն ունեցաւ ամբողջ հայութեան երախտագիտութեամբ զգայուն, սիրուն սիրտը, որոնց թարգման եղան հեռագիրներն, նամակներն և լրագրաց մէջ հրատարակուած յօդուածներն։*

Յոբելեանի ժամանակ ամբողջ ազգային լրագիրները միաբերան, անխարդախ ովսաննաներ կը գոչէին, կը դըրուատէին ազգին Նահապետը։ Թէև յոբելեան հանդէսի հրաւէր ոչ ոքի չէր գացած և կանխաւ յայտարարուած էր թէ այդ հանդէսը վանական համեստ բան մը պիտի ըլլայ, սակայն այսու հանդերձ, ազգը մասնակցեցաւ այդ նշանաւոր տօնին։ Գեր. Ազգարեան Պատրիարքն հայ հռովմէական հասարակութեան կողմէն, Նուիրակ յղեց զԳեր. Մ՚խաքճեան Յով. վարդապետ, որ հանդէսի ատեն կարդաց քերթուած մը. Կ. Պոլսոյ ազգասէր դասակարգին կողմէն, հանդիսակից եղաւ Հ. Ալիշանի սիրելի սանն Պ. Ա. Արփիարեան, իսկ Արտասահմանի գաղթականութեան ներկայացուցիչ եղաւ «Արմէնիա» մաճառ լրագրի խմբ. Պ. Ղ. Բադրուպանեան. Յոբելեանի ժամանակ Նահապետն ընդունեցաւ 89 մաղթանաց նամակներ և 88 հեռագիրներ։ Ի հետաքրքրութիւն ընթերցողաց, կը յիշատակենք մի քանի հեռագիրներ և յոբելեանին առթիւ հրատարակուած յօդուածներէն կը քաղենք մեղրն և կը թողունք ծաղիկներն։

# ՅՈԲԵԼԵԱՆԻ ՀԵՌԱԳԻՐՆԵՐ ԵՒ ՅՕԴՈՒԱԾՆԵՐ

## ՀԵՌԱԳԻՐՆԵՐ

«Մշակի խմբագրութեան անդամք եւ Ձեր վրայ սքանչացողներու մի խումբ, կը ներկայացընեն իրենց ջերմագին բարեմաղթութիւնները Ձեր յոբելեանի ազգային մեծ տօնին առթիւ»: Գրիգոր Արծրունի

«Բաղդ ենք համարում շնորհաւորել մեր աշխարհի ջրալից բեկորներին շունչ տուող Հ. Ալիշանի գիտնական, գրականական արդիւնաշատ յիսնամեակն»: Արմաւենիքի խմբագրութիւն

«Արեւելք. Տարազի խմբագրութիւնը շնորհաւորելով մեծ յոբելեարին համբուրամն նորա հզօր աջին»: Նշադարեան

«Խմբագրութիւն Նոր-դարու շնորհաւորելով զարմանաւոր տօնախմբութիւն յիսնամեայ գրական գործունէութեան Նահապետին Ծերունու, մաղթէ կեանս երկարագոյնս ի վայելումն պտղոց անզուգական վաստակոց»: Սպանդարեան

«Ո՛վ ծերունի Հայր մեր արի,
Որ ծերունի Հայաստանի
Ազգաւ գրչովդ յիսուն տարի
Ոյժ տուիր որ ոտքի կանգնի.
Եւ յիսներորդ այլ խանդակաթ
Զոհել գաս առ մայրն Արարատ
Որ յուերակս մեր հայրենի
Իւր հին փառքով ելնէ կանգնի,
Արդ ինչ ձայն մեզ մաղթել քեզ,
Կեանք մինչ արդէն Դու անմահ ես,
Գէթ ընկալ քեզ պաշտող սիրտ մեր
Յոբելեանիդ օրուան նուէր»:
«Այրմենիա» Մ. Փորթուգալեան

«L'Arménie» ի խմբագրապետն Պ. Մ. Ձերազ, փոխան հեռագրի, յղած էր վերին առաջնանի գեղեցիկ, զգայուն և հանճարեղ նամակ մը, զոր հրատարակած է իր թերթին մէջ 1890 N. 8.

«Շնորհաւորեմ յիսնամեակ Հ. Ղեւոնդեայ Ալիշանայ. երկարեսցի արեւ կենաց Նահապետից հայրենեաց, պլպուլիդ վարդից Աւարայրի, երգչիդ սուրբ Մասեաց»: Արիստակէս եպիսկ. Սեդրակեան

«Պսակաւորիդ հանդիսին խնդակից, օրհնելով կենաց օրհնարան, անմահացելոյդ յերգս և ի մատեանս հայրենական, շնորհաւորեմ ի սրտէ փառաւոր յոբելեանդ»: Գարեգ. եպիսկ. Սրուանձտեանց

«Ձեր յոբելեան տօնախմբութիւն մէն է վասն հայ ազգին, որուն փառքն էք իբր բանաստեղծ, հայկազն գրագէտ, հրապարակագիր, աշխարհարան, պատմաբան, հնագէտ. հաճեցէք ընդունել զյարգանս իմ սքանչացման, և եղբայրակցական բարեմաղթութիւններ»: Խորէն Արքեպիսկ. Նարպէյ

«Առ յարգամեծար մեծ արժանաւոր պատմագիրն, աշխարհագէտն, հնագէտն, վիմագէտն, թարգմանիչն, բանաստեղծն, գրագէտն, տարէք ջերմագին բարեմաղթութիւնս»: Եպիսկ. Օրմանեան

«Ի խորոց սրտի կը պաշտէ զՁեզ, անկեղծօրէն կ'աղանչանայ Ձեր վրայ, և իր բարեմաղթութիւնները կ'ընէ Ձեզ»։ Ադամեան, ողբերգակ

«Հաճեցէք ընդունել բարեմաղթութիւններս· միշտ խորին մեծարանքով եմ, Ձերդ անձնանուէր»։ Այվազովսկի

«Հ. Ալիշանի կէս դարեան գործունէութեան հետ, ծանօթ հայ քրիստոնեաների սիրտը կը բաբախի այսօր, երբ տօնվում է նորա յոբելեանը. կեցցէ Հ. Ալիշան, շատ և շատ տարիներ հայութեան համար»։ Ռուբէն Հասան Ջալալեան

«Հայրենիքի սիրող մեծ պատմագրին, բանաստեղծին շնորհաւորում եմ յոբելեան, ցանկանալով երկար կեանք»։ Սանասարեանց

«Շնորհաւորութիւննե՛ր, հայակազմ գիտունդ Հ. Ալիշան»։ Տ. Քէլէկեան

«Կամէի որ դարեր ապրէիք· տրուպ Ձեր հիացող»։ Ֆէրմանեան

«Ռուս Աշխարհագրական Ընկերութեան Կովկասեան բաժինը, կ'առաքէ իր անկեղծ շնորհաւորութիւնները Ձեր գործունէութեան Յիսնամեկի առթիւ, և կը բարեմաղթէ որ Ձեր կեանքը երկարի շատ տարիներ»։ Քարտուղար Ջակուբուքի

«Սուրբ հայրենիքի քաղցր յիշատակներն աչքի առաջ կանգնող բազմավաստակ Ծերունիին, Բագուայ հայ երիտասարդութիւնը անկեղծ սրտով մատուցանում է շնորհաւորանքներ, նորա բազմավաստակ գրական գործունէութեան առթիւ»։ Ի դիմաց երիտասարդաց Քաջազնեան

«Ամենախորին ակնածութեամբ և երախտագիտութեամբ, շտապում ենք շնորհաւորել Ձեր յիսնամեայ կրօնական, գրական բեղմնաւոր գործունէութիւնն ի կողմանէ Բագուայ հայ վաճառականաց»։ Նիկողոս Մաշխատեանց

«Խնդութեամբ շնորհաւորում ենք մեր բազմաշխատ գիտնական հանճարաւոր քերթողին, ամենապատկառելի Նահապետիդ Սրբազան Հօր Ալիշանի գործունէութեան յիսնամեակ»։ Ռուսական դպրոցի Ուսանողներ

«Դարուս մեծ Հայ Հայր Ղևոնդ, Գանձակայ հայ հասարակութեան փոքրիկ խմբիկս մատուցանում է Ձեզ իւր ջերմ և սրտագին շնորհաւորութիւն Ձեր յիսնամեայ քրտնաջան ազգօգուտ և բեղմնաւոր գրականական գործունէութեան առթիւ. ի սրտէ խնդրում ենք Արարչից շնորհել Ձեզ, մեր պաշտելի և անփոխարինելի քերթողահայր, երկար կեանք ի բարօրութիւն ազգիս»։ Ստորագրութիւններ

«Արարատայ ձորէն տարածեմք մեր շնորհաւորութիւնները, կ'աղաչեմք Աստուծոյ որ շնորհէ երկար փառաւոր կեանք առ ամենասուրբ Նահապետն արդի հայ բանաստեղծութեան և գիտութեան»։ Ստորագրութիւններ

«Ձեր հանճարին երկրպագու հայ հասարակութիւնը Թիֆլիզի, շնորհաւորում է Ձեր յիսնամեայ ծառայութեան լրումն հայրենի գիտութիւնների ասպարիզում այսօր։ — Այսօր ի պատիւ Ձեր խմբուած Հայկայ տան զաւակներ, հայկական սեղանի շուրջ, տօնախմբում են մեր բնավայրի աւերակների վերականգնողի, մեր պաշտելի նախահարց փառքի պատմչին և վերջին բազմարդիւն սպասաւորութեան յիսնամեակը։ — Մեր բնավայրի Նուագների, Յուշիկների, Այրարատի անմոռանալի և տօնելի հեղինակին, մեր սրտագին երախտագիտութիւնն յայտնելով, Ձեր սիրած Հայոց աշխարհի զաւակներս մաղթում ենք Ձեզ

*երկար կեանք ի փառս մեր բնավայրի և հայկազեան գպրութեան»: Հարիւրաւոր սեղանակիցների կողմից Արգար Յովհաննիսեան*

*«Մեծահանճար պատմաբան, աշխարհագիր, գերագոյն բանաստեղծ Հայոց, տօնիւ Ձեր քահանայական և գրական յիսնամեայ յոբելեանի բոլոր կաթոլիկ հայերն Խարասու-Պազարի Ձեզ կը մատուցանեն բիւրաւոր անկեղծ մաղթանքներ»: Վարդապետք Պետանեան, Սափարեան*

*«Ո՛չ կարօտի ալեզարդ գլուխ Նահապետիդ՝ ձեռակերտ պսակի. զի պսակ անմահութեան բոլորեն ի գլուխ Ձեր. վերստին կենդանացեալ և պայծառացեալ քաջազուն նախնիք և քաղցր բընավայր: Եւ արդ մնայ մեզ սքանչանալ պանծալի գրչաւդ եւս և փառաւորեսցին և պանծասցին նորանոր վաստակօք»: Ուսուցիչք դպրոցաց Հայոց Նուխայ*

*«Ձեր յիսնամեայ յոբելեանին առթիւ կը մատուցանենք մեր ջերմագին շնորհաւորութիւններն և մեր սրտագին բարեմաղթութիւնները: Կը խնդրենք Աստուծմէ որ դեռ, դեռ շատ տարիներ երկարէ Ձեր կեանքը, նուիրեալ հայկական գիտութեան»: Եգոֆֆ, Քալանթար, Լոռիսմելիքօֆֆ և այլն.*

*«Ռումանիոյ Հայերը կ'առաքեն Ձեզ իրենց ջերմագին շնորհաւորութիւններն, և ի սրտէ կը մաղթեն որ Աստուած ըզՁեզ պահպանէ դեռ երկար տարիներ վասն փառաց և զարգացման հայ դըպրութեան»: Պուքուրեշթիու*

*«Կը կցենք մեր շնորհաւորութիւններն առ այն զոր Ձեր միաբանութիւն Ձեզ կը մատուցանէ այսօր շնորհաւորելով Ձեր յոբելեանը: Մեր յարգալից մեծարանքներն առ բանաստեղծն ժողովրդական, պատմագիրն մեծահմուտ, և անխոնջ հետաքննիչն աշխարհագրութեան մեր բնավայրի: Կեցցէ՛ հեղինակն Սիսուանայ և Վասպուրականին»: Ռուսճուքի բազմաթիւ հայեր*

*«Նահապետիդ ձայն աղեկէզ, պատմաբանիդ սիրտ զգայուն, սուրան թըռչին դէպ խանդակաթ յերկիրն մեր, Մուսայդ դու վեհ, դեռ շատ երկար հնչէ՛ հնչէ՛ տաւիղդ անմահ»: Օտեսայի հայ ուսանողներ*

## ՅՕԴՈՒԱԾՆԵՐ

Մշակ (1890 N. 53). *«Ո՞վ է Ալիշանը:... Ալիշան բանաստեղծ է: Երիտասարդական սիրտը երբ նա մանաւանդ ծայրայեղ զգայուն է և այդ զգայնութիւնը Ալիշան դեռ եա, այսինքն իր ծերութեան ժամանակ էլ վառ պահած է, նա իր զգացմունքը յանձնում է քընարին, մելօդիական, նոյն իսկ ողբերգական տողերով նա թռիչ է տալիս իր ոգուն... երգեցնում է իր «բլբուլին»: Այս ձայնը, այս եղանակը սկսվում են շատ կանուխ, շարունակվում են անընդհատ... ոգեւորում են հայ բանաստեղծներին, որոնք հետեւում են նըրան... — Ալիշան դաստիարակ է:... Նա կրթում է աշակերտը իբրեւ խնամոտ հայր, անվթար տպաւորեցնելով նրա մէջ բարոյականի սերմը... — Ալիշան հայրենագէտ գիտնական է: Գիտութեան՝ պատմաբանական, հնագիտական և մանաւանդ աշխարհագրական ճիւղերի մէջ, ոչ ոք մեր ազգում այնքան իրաւունք ունի այս կոչման, որքան Ալիշան:... Շիրակ, Սիսուան և Այրարատ հայ հայրենագիտութեան զարդերն են, որոնց հետ դժուար թէ նոյն իսկ ապագայում կարելի լինի մըրցել:... Ալիշան հայրենասէր է: Եւ կարո՞ղ էր ուրիշ կերպ լինել մի մարդ, որ իրան ամբողջապէս ընծայած է հայրենիքի ուսումնասիրութեան... Ալիշան կաթոլիկ է և ջերմեռանդ կաթոլիկ: Եւ երբ մի ոչ-լուսաւորչական հայ հայրե-*

նուէր է լինում, հաւատացէք, որ դուք նրա նմանը լուսաւորչականների մէջ էլ չէք գտնի»։

Արձագանք (1890) N. 12)։ «Այսպիսի ժամանակ երբ կայ մի անձն, որ իւր բոլոր կեանքը նուիրել է մեր անցեալի ուսումնասիրութեան, որը հսկայի ձեռներով վերականգնել է մեր նախնի կեանքը, ամենայն մտածական կարողութիւնը չկորցրած հայ, պարտական է երախտագէտ լինել այդ անձին և յայտնել իւր շնորհակալիքն նորան խրախուսելու և ուրիշներին դրդելու համար։ — Այն անձն որին տօնում են այսօր հայոց գրականութեամբ և անցեալով զբաղուող բոլոր հայերը, ահա կէս դար է, որ ներկայացուցիչ է մեր անցեալի ուսումնասիրութեան։ Այն անձն, որ այսօր իսկ տօնում է հայրենեաց նշխարների հաւաքելու, յուշիկները գրելու և նուագներն յօրինելու, է Ղեւոնդ Ալիշանը։… Հայր Ալիշանը կարօտ չէ գաւառական պսակների, նրա գործերն այնպիսի պսակ են բոլորում նրա ճակատին, որ դարեր չարունակ պէտք է յարատեւեն»։

Արեւելք (1890 Մայիս 23)։ «Հին թէ նոր հայ գրականութեան մեծագոյն անուանց անհամանափակ շարքին մէջ իրաւամբ նշանաւոր տեղ մը կը բռնէ Հ. Ղ. Ալիշան, ոչ միայն իւր հայրենագիտութեամբ, ինչպէս ականաւոր Մխիթարեանց ոչ սակաւք, այլ և իւր հայրենագիտութեամբ, հայ ազգին պատմութեան ցեղագրութեան և աշխարհագրութեան վրայ իւր խղճամիտ մանրակրկիտ ուսումնասիրութեամբք, իւր հիմնաւոր հմտութեամբ, և ի վեր քան զամենայն հայկական ոգւովն, որ իւր գրուածոց կու տայ զօրութիւն մը, զոր սոսկ գիտնական գրիչ մը չի կրնար ունենալ երբեք։… Որչափ եւս մեծ լինի Հ. Ղեւոնդ Ալիշանի արժանիքն իբրեւ ուսուցիչ, իբրեւ կրօնաւոր կամ իբրեւ բարոյական մարդ, բայց ինք պատմութեան մէջ անուն մը պիտի թողու իբրեւ մատենագիր միայն, — իբրեւ պատմագիր, իբրեւ աշխարհագէտ, իբրեւ ցեղագիր, իբրեւ գիտնական մը բառին արդի եւրոպական իմաստով»։

Հանդէս Ամսօրեայ (1890 Յունիս)։ «Յարգ. Հ. Ղ. Ալիշան՝ տօնեց իւր քահանայական պաշտաման և գրական գործունէութեան յիսնամեակն։ Հռչակաւոր Յոբելինաւորին պարծանք է իւր քահանայական և կրօնաւորական վիճակին եւ անհամեմատ մեծ արդիւնք ունի իբրեւ դաստիարակ եւ ուսուցիչ։… Իբրեւ մատենագիր՝ իւր հայերէն եւ եւրոպական լեզուօք հրատարակած նշանաւոր եւ մեծագործ երկասիրութիւններն իրաւամբք արժանի ըրած են զինքն այն մեծ համբաւոյն եւ համակրութեան՝ զոր կը վայելէ թէ՛ ազգային եւ թէ եւրոպական գիտնական աշխարհին մէջ։ Հին Հայաստանի աշխարհագրութեան և Հայոց պատմական — մատենագրական կնճռեալ ճիւղին մէջ առանց երկբայութեան առաջին տեղըն կը գրաւէ այսօր իւր բազմաթիւ եւ մեծագործ երկասիրութեամբք։… Իսկ իբրեւ բանաստեղծ՝ արդեամբք հայր է արեւմտեան գունէ արդի բարբառով գրող հայ բանաստեղծներուն, որոնցմէ նշանաւորագոյնք իւր ձեռաստուն աշակերտքն են։ Այս նկատմամբ մատդրութեան արժանի են իւր հինգմասեայ Նուագները և առանձինն Նահապետ ստորագրութեամբ իրեն սեպհական գրուելիչ լեզուովն և զգածեալ ոգւովն գրած բանաստեղծութիւնքն, որ անմահ պիտի մնան միշտ։ Այս մեծարգոյ Յոբելինաւորին արդեամբ ոչ միայն այս դարուս՝ այլ և բովանդակ հայ մատենագրութեան ամենանշանաւորաց կարգը կը բարձրանայ իւր երկասիրութեամբքն։ «Հանդիսիս» խմբագրութիւնը ջերմ շնորհաւորութեանց հետ՝ կը մաղթէ նաեւ այլ եւս երկար տարիներ, և կը սպասէ յուսով ուրիշ նորանոր մեծագործ երկասիրութեանց Մեծ. Հեղինակին անզուգական գրչէն»։

Արմենիա (1890 թիւ 68)։ «Գեր. Հ.

Դ. Ալիշան՝ հայ գրականութեան մեծափայլ աստղերէն մին է որ թէ՛ իր հայ հայրենակիցներ և թէ՛ օտարազգիներն լուսաւորած է և կը լուսաւորէ Հայաստանի պատմութեան և աշխարհագրութեան մէջ: Հ. Ալիշան իբրև բանաստեղծ իր ոտանաւոր և արձակ խանդավառ գրութիւններով հոգի ներշնչած, ոգեւորած և կենդանացուցած է մեռած և մինչև իսկ մեռած հայ սրտերէ շատեր: Իբրև պատմագէտ և աշխարհագրագէտ, երկարատև և զարմանալի համբերատար աշխատասիրութեամբ խուզած, պրպտած, ուսումնասիրած է Հայաստանի շէներն ու աւերակներն, անոնց վերաբերեալ պատմական յիշատակներով մէկտեղ: — Հայրենասիրական սաստիկ եռանդը միայն կարող է ներշնչել Հայր Ալիշանի գործունէութեան կորովը, այդպիսի գուրգուրանքով և համբերատարութեամբ եղած անվհատ և զարմանալի աշխատասիրութիւնը: Գեր. Հ. Ալիշան թէև Վենետիկի վանքին մէջ նստած, բայց այնպէս մանրամասնօրէն ուսումնասիրած է Հայաստանի ամէն մէկ սարն ու ձորը, լեռն ու քարը որ այդ պատկառելի ծերունի հայրենասէր իր խորին հմտութեամբ կրնայ իր խուցի մէջէն մի փորձառու առաջնորդ հանդիսանալ հայրենի երկրի վրայ պտտողներին և միանգամայն Հայ անունին փառք ու պարծանք բերել Եւրոպայի գիտնականներին առջև »:

Արեւ. Մամուլ (1890 Մայիս էջ 242): « Այս հոյակապ անունն՝ որու առջև կը պատկառի ամեն Հայ ինչ դաւանութեան և համոզման որ պատկանի, անտարակոյս ունի դիւթիչ շնորհ մը, խնկաւէտ բոյր մը, բնածին հրապոյր մ'որ Հայոց սիրտն ու միտքը կ'յուզեն կ'գրաւեն ու կ'յափշտակեն: Հ. Ալիշանի անուամբ հայութեան ոգւոյն նրբագոյն թելերը շարժող սրտաշարժ բանաստեղծութեան, զուտ հայրենասիրութեան և խորին հմտութեան քաղցրալուր ու ծանր շեշտերն են որ յառաջ կ'բերեն այդ հմայքն ու յափշտակութիւնը:

Աշխարհի փոթորկալի կենաց վտանգներէ հեռի, կրից և նախանձու ճիրաններէ ազատ՝ Հայ գրականութեան այդ նոր ու մեծ նահապետն կ'ընծայէ միշտ հայութեան աչքին սրբանուէր անդորրութեան, հոգեշունչ հայրենագիտութեան, հնախոյզ իմացականութեան երանելի պատկերը: Ո՛չ Մխիթարեան, ոչ միաբանական և ոչ դաւանական է այդ պատկեր, այլ համազգային և հայկական՝ որու կ'յառին ակնապիշ Հայ սրտեր և սիրով, լուսով ու յուսով կ'ներշնչուին ու կ'ոգեւորին: Այդ սէրն առ հայրենի նահապետն, այդ լոյսն որ կ'սփռի հին յիշատակաց վրայ, այդ յոյսն առ Աստուած, ամսոյս 13ին հռչակուած յոբելեանով չէ որ կ'նորոգուին Հայոց մէջ, այլ միշտ վառ կ'մնան, քանի որ յաւէտ պաշտելի պիտի մնայ իր գործոց հետ այն պատկառելի անձնաւորութիւնն, որ աչաց լոյս, անձանձիր ճգունք և արտասուք թափեց Ազգին համար, որ Հայ գրականութեան փայլուն և մերթ թագուն գանձեր ընծայեց և անշուշտ դեռ ևս պիտի ընծայէ, և որ իր անձուկ շրջանին մէջ անգամ" բարոյական մեծ արիութիւն ունեցաւ անվթար տանել իր հոգւոյն մէջ հայրենի խորանը:

Ինչպէս հին, նոր ազգեր սովոր են արձաններ կանգնել բարերար մեծ հոգիներու: — Հայք Հ. Ալիշանի հայրենանուէր և փառաւոր գործունէութեան համար ունին առ այժմ երախտագիտութեան սրտաբոյր խունկ՝ որ թերևս աւելի ախորժելի պիտի ըլլայ համեստաշուք Նահապետին քան թէ պաղ մարմարն ու պղինձն:

Այս խունկի հատիկն ալ սրտագին կ'նուիրէ Թերթիս խմբագիրն առ մեծ Քերթողն »:

*Այս մի քանի հեռագրաց եւ խմբագրական երախտանշոյլ ցոյցերէն կարելի է գաղափար մը կազմել Հ. Ալիշանի հանճարին վայելած տիեզերական համակրանքին վրայ, անոր եղած անկեղծ և զգայուն յարգանքին։ Սիրուն սիրտ և գգուելի հոգի հայ հասարակութիւնը կարող եմ ըսել թէ առաջին անգամն է՝ որ միաբերան երգեց անցեալ դարու հայ մտքի վրայ իշխող գրական մեծ դէմքի գեղաքանդակ գործունէութիւնը. մենք չենք յիշեր և ոչ ալ պատմութիւնը՝ որ Հ. Ալիշանի չափ անվիճելի համակրանք մը վայելած ուրիշ անձ մ՚ըլլայ։ Եւ այդ համակրանքը Ծերունի Նահապետին պլպլացող ճրագը բոցավառեց, նա քաջալերուեցաւ, սրեց իր գրիչը և դարձեալ արշաւեց հայ գրականութեան անմշակ անդաստանին վրայ. յոբելեանէն յետոյ նա 70 տարեկան պատկառելի վաստակաւոր ծերունի մ՚էր, չկթոտեցան իր ծնկունները, չի կարկամեցաւ իր բազուկը, այլ առոյգ երիտասարդի մը ամբողջ կորովովը և եռանդովը դարձեալ բազմեցաւ իր գրասեղանին առջեւ. սքնեցաւ, մաշեցուց իր միտքը և հայ գրականութեան պարգեւեց Հայբուսակ, Հայ-Վենետ, Հին հաւատք Հայոց, Այրարատ, Սիսական, Կամենից, Արշալոյս, Հայապատում և այլ փոքր գրքեր և գրքոյկներ։*

*Ընթերցողը պիտի հետաքրքրուի և պիտի ուզէ իմանալ թէ ի՛նչպէս կ՚աշխատէր Հ. Ալիշան որ անհամեմատ արագութեամբ դիզեր, բարդեր է այնքան հսկայ հատորներ և կոյտ մը թարգմանութիւններ։ Մենք կը յագեցընենք ձեր հետաքրքրութիւնը։*

# Հ. ԱԼԻՇԱՆ ԻՐ ԳՐՔԵՐՈՒՆ ՄԷՋ

*Ոսկիին երկրպագու Բրիտանական ազգի սովորական առածն* Time is money *իրագործուած կը տեսնենք Հ. Ալիշանի կենցաղին վրայ. ժամանակի ոսկին նա երբեք անտոկոս չձգեց. մանուկ հասակէն, ըմբռնած էր ժամանակին թանկագին արժէքը։ Զբօսանք, զուարճութիւն, անգործութիւն՝ այդ ամէնը իրեն համար հանճարի սնանկութիւն էին, մտքի ջլատութիւն, գրչի կարկամութիւն։ Հազիւ թէ իր մէջ կ'արթննայ ուսման տենչը, ժամանակի շահագործութիւնը իրեն զէնք առնելով. մանկութենէ մինչեւ գերեզման կը կառչի հեղգութեան դէմ, կ'ընկճէ պարապորդութեան թոյլ ոգին, և կը տիրապետէ անկապտելի գրական յաղթանակին։ Իր հայրը կը գուրգուրայ անոր վրայ, զայն կը գտնէ քերականի և սաղմոսներու ընթերցման մէջ ընկղմուած. և երբ պէտք ըլլայ զինքը կանչելու, «Եկուր ուսումնասէր զաւակս» ըսելով, զայն իր քովը կը նստեցնէ և կը համբուրէ այն ճակատը, որ ապագային խաւար հայրենիքի փարոսն պիտի ըլլար...*

*Եւ այս գաղափարով ծնած ու զարգացած մանուկ մը, դիւրին է գուշակել, որ ժամանակին պիտի յաջողէր գլխին մէջ ամբարելու վիթխարի գրական անհատնում պաշար մը։ Նա ամբարեց շատ բան, որով կրցաւ նաեւ շատ գործեր արտադրելու։ Ուսանողական ընթացքէն վերջը ազգին միտքը լուսաւորելու, և հայ մատենագրու-*

*թիւնը ճոխացընելու ասպարէզը իր առջեւ բաց էր․ ժամանակ, գիրք և գրիչ, ահա իր երջանկութիւններն․ Առօրեայ կրօնական խոկումները, եկեղեցական պաշտա-*



*Հ. Ալիշանի մատենադարանները։*

*մունք, նիւթական ծառայութիւնք իր ժամանակը բթացընելու և սպաննելու ուժ չունէին, նա կարօվամիտ, յամառ աշխատող մ՚էր, իր այդ գեղեցիկ բնաւորութեան հետ միանալով նաև իր տարօրինակ արագութիւնը, նա*

կրցաւ ծնունդ տալ՝ բազմաթիւ գրքերու։ Իր կեանքը անդադար խօսում՛ էր, իր հանգիստն և զբօսանք գրքերու ընթերցումն էին, իսկ գրասեղանի հարազատ բարեկամներն՝ գիրք և գրիչ էին։ Մեր վանքի մատենադարանի ամբողջ ձեռագիրներն (1600) նա կարդացեր և քններ է խղճամիտ հետաքրքրութեամբ, այդ անծանօթ մնացածներէն քաղեր է հայ պատմութիւն, գիտութիւն, արձանագրութիւն, նա իրեն համար մեր գրչագրաց մէջ աւանդուած նիւթերուն յատուկ ցանկն կազմած էր, որ իր հնախօսական գրուածքներուն առաջնորդ կ'ըլլար։ Իր մասնաճիւղերուն վերաբերեալ ամէն տպագրուած ազգային և օտարազգի գրքերը, հանդէսները և լրագիրները կը կարդար, փոքր թղթերու վրայ կը նշանակէր կարեւոր տեղեկութիւնները. զանոնք յետոյ կ'անցրնէր առանձին տետրակներու մէջ. ունէր մատենագիտութեան բաժնուած գրքեր, ուր կը խտացրնէր օրուան մէջ կարդացած գրքերու կարեւոր տեղեկութիւնները։ Աննման կարդացողութեամբ իր քաղած չնչին ծանօթութիւններէն հսկայ գործեր կազմելու հոյակապ կարողութիւն մ'ունէր։ Կցկտուր տեղեկութիւնները իր կորովամիտ տաղանդովը և բանասիրական ընդունակութեամբը, ի մի կը ձուլէր և անկերպարան նիւթին կուտար հոգի, շնորհք ու գեղ։ Իր քաղած տեղեկութեանց մեծ մասը կը բովանդակուէին ստուարահատոր մեծածաւալ «Հայկարաններու» մէջ. Իր ապագայ գրքերու ապաղձները առանց մէջ հաւաքելու համար, միայն իր ուժը և իր նիւթական քաջութիւնը չէր բաւեր. միաբանու-

թեան անդամները օգնութեան կը հասնին. իր դասընկերներէն սկսեալ մինչեւ Ռուսիա ներկայ ուսանողները՝ անդադար Հայկարաններու համար ընդօրինակած են տեղեկութիւններ, պատմութիւններ զոր գրչագիր և տըպագիր գրքերու մէջ կը գտնէր ինքն Հ. Ալիշան։ Միաբանութեան մէջ չէ եղած և չկայ մի հեղինակ, որ Հ. Ալիշանի չափ իր կրօնակիցներէն արժանացած ըլլայ անընդհատ նիւթական աջակցութեան. և այս առանձնաշնորհը Նահապետ իր գրքերու մէջ մեծ սրտի գոհութեամբ յիշած է և երախտագէտ մնացած։ Այդպիսի տաղանդաւոր և բեղմնաւոր հանճար մը, արժանի էր այդ տեսակ նիւթական աջակցութեան. մինչեւ իր վերջին գործը Հայապատումը կազմուած է մեր միաբաններու սիրով ու սրտով հաճելի անձնանուէր ձեռնտուութեամբ։ Գրեթէ ամէն երախտապարտ քահանայ, երբ իր ուսումնական ընթացքը կ'աւարտէր, կը ներկայանար Նահապետին, իրեն ընդօրինակողի պատրաստականութիւն ցոյց կու տար. սակայն շատ անգամ՝ մեր. համեստ Ծերունին կը մերժէր այդ բացառիկ շնորհքը. նա կ'ըսէր. «իմ աշխատութիւններս փտած են, ինծի համար ձեր ծաղիկ ու զուարթ ժամանակը մի զոհէք...»։ Եւ այսու հանդերձ պէտք եղած ամէն աջակցութիւն չէր զլացուեր։ Արժանի էր այդ ծառայութեան, քանի որ նա միաբանութեան ոևէ ծառայութենէ խոյս չէր տար. իր գրիչը և գրքերը զինքը պախարակելի անձնասիրութեան (égoïsme) չի մատնեցին. հասարակութեան սէրը իր մէջ բունկած էր, նա ոգւով չափ նուիրուած էր միաբանութեան ամէն

գործերուն, որուն մէջ սոէպ յօժարակամ կը թողուր գրիչ ու գիրք և վանքի այցելուաց տաղտկալի առաջնորդ-



Հ. Ալիշան Գրքերու մէջ.

դութեան պաշտօնը կը կատարէր. ամէն օր տպարանէն եկած առհասարակ ամբողջ գրքերու թերթերը կը կարդար, կը սրբագրէր և կարեւոր դիտողութիւններ կ՚ը-

ներ. կարելի է ըսել նա հասարակաց նիւթական գործերու աւելի ժամանակ սպառած է քան թէ իր անուամբ լոյս տեսած գրքերուն։ Եւ ի հարկէ այսպիսի մի անձնանուէր պատկառելի հասարակասէր անդամին, պարտք էր ամէն ձեռնտուութիւն. և այդ պատճառաւ մենք իր վրայ գուրգուրալու, իր համար աշխատելու ամենամեծ հաճոյք կը զգայինք և չէինք զլանար մեր նիւթական տկար աջակցութիւնը։

Գրքերու մէջ մնած, կաղդուրուած, մեծցած ու ծերացած Ծերունին, թէև ինքն իր գրական գործերուն մէջ ունէր անըմբռնելի գեղեցիկ կարգադրութիւն մը, թէև գիրք մը գրելու, նոր նոր գրական նիւթերու վրայ ըզբաղելու խիստ կոկիկ և գնահատելի մեծ կարողութիւն մը ունէր, սակայն զուրիշը այդ գործին մէջ առաջնորդելու յատկութիւն չունէր. և սա զարմանալի չէ, վասն զի այլ է հանճար, հմտութիւն և այլ առաջնորդութիւն, որով մենք պէտք ենք ըսել որ թէև կը կարծուի թէ նա միաբանութեանս գրական յառաջադիմութեան մեծ հսկող մը և առաջնորդ եղած է, սակայն սխալ է այդ. Նա կ'ուզէր որ ամէն միաբան սիրէ գիրք ու գրիչ, աշխատի գրականութեան, բայց իր քաշուած և առանձնացեալ բնաւորութիւնը, զինքը այդ գործին առաջնորդ չէր կըրնար ընել. եթէ մեր հանճարեղ Ծերունին ունենար այդ մղիչ կարողութիւնը, բնականաբար իր հոյակապ գիտութեան շնորհիւ, միաբանութեանս մէջ մի գրասէր անդամ հսկայաքայլ կը յառաջադիմէր գրական ասպարիզի մէջ, մենք ինչ որ գիտենք, նա իր կենաց մէջ մի միայն

ամենամեծ առաջնորդ եւ ձեռնտու եղած է Նորայր Բիւ-
զանդացւոյ բառարանի կազմութեան համար։ Շատեր
իրմէ առաջնորդուելու համար իրեն դիմած են, սակայն
յուսախաբ մնացեր են։ Եւ մեր այս յիշածը, իբրև
թերութիւն մը իրեն չենք վերագրեր, այլ կ'ուզենք ուղ-
ղել մի քանի անձանց գաղափարը, վասն զի ոմանք կը
կարծեն և նոյն իսկ հրապարակաւ գրած են, թէ Հ. Ա-
լիշան Ս. Ղազարու մտաւորական առաջնորդն եղած է և
թէ ամէն երիտասարդ, իրմէ շատ օգտուեր է։ Ոչ այդ-
պէս։ Այո՛ նա իր անխոնջ, յարատեւ, անզուգական
սիրով, գրականութեան նուիրուելով, ամբողջ միաբաննե-
րուն մէջ գրականութեան տենչը վառ պահելու ամենա-
մեծ օրինակն էր, սակայն դա բարոյական և լռելեայն ա-
ջակցութիւն մ'է, որ մի միայն ուսումնատենչ միաբան-
ներու, գրական յառաջդիմութեան նախանձախնդիր
երիտասարդաց յորդոր մը և ազդու մղում մը կըր-
նար համարուիլ։ Եւ այդ օգտակար էր ու խիստ կա-
րեւոր. իր ամբողջ կենօք ներկայ եղած գրաւէր երի-
տասարդութիւնը ազդուեր է անոր աշխատանքի բուռն
տենչէն, և ըստ այնմ, ամէն անհատ սիրեր է գիրքը և
գրասեղանը։ Հ. Ալիշան միով բանիւ մեր վանքի գրա-
կանութիւնը յառաջադէմ ներկայացուցած է ինքն իր
գրչով և ոչ յառաջադէմ յաջորդներ պատրաստելով,
նա իր գրքերուն մէջ մնանելով, եղած է մեր վանքին
և ամբողջ ազգին գրականութեան փարոսը, փառքը, և
թանկագին գանձը. այսչափը բաւական էր զինքը պաշ-
տելու, և յաւէտ յիշելու իր անզուգական գրական կա-

թող վաստակը։ — Մենք դարձեալ դառնանք գտնենք զինքը իր գրքերուն մէջ։

«ՅԱթենականըն քաղաքի
Զանձն խնամեալք ու կրթեցի»

Այսպէս կը հառաչէր Շնորհալին ի հարս՝ Շնորհալին Ներսէս. նոյնպէս կարող էր ըսել նաեւ Ս. Ղազարու Շնորհալի Նահապետը, որուն Աթենական կաճառը իր խրճիթն և գրքերն եղան. նա մեծ հանճար մը, գերագոյն համբաւ մը ունենալու համար չյաճախեց Եւրոպայի կաճառները. ինքնօգնութեամբ, զարմանալի ջանասիրութեամբ ստացաւ մտքի մեծ զարգացում, նոյն ինքնօգնութեամբ, նա ոչ կաճառականներու նախանձորդ, այլ նախանձելի եղաւ. իր գիտութեան համբաւը փայլ ընդ փայլ տարածուեցաւ նաեւ Եւրոպայի մէջ. համեստ վանականին հանճարին հետաքրքրուեցան օտարազգի հռչակաւոր Բրօֆեսորները և աշխարհագիր հեղինակները. Նա կրօնաւորական պարզուկ ճգնարանին մէջ, որուն և հոգւոյն սիրելի և համբուրելի բարոյական շղթայով կաշկանդուած՝ կրցաւ ուշադրաւ ըլլալ թէ իր բնիկ ազգին և թէ օտար գիտնոց. Աշխատանք, ժամանակ և կամք զինքը անմահացուցին. գրքերով նա իր գլխին մէջ անջնջելի կերպով նկարեց Հայաստանի ճշգրիտ պատկերը. Իր ամբարած գիտութեան կը տիրապետէր, քաղած ծանօթութիւնները կ'իւրացընէր, որով իր ամէն գրուածներն իրմէ կը բղխէին, նա չունէր անբնական, գողունի գաղափարներ. կարդալով իր մեծ աշխարհագրական գիրքը, մենք կը կարծենք որ իրօք նա շատ տարիներ ճամա-

պարհորդեր է հայրենիք, հոն երկար ատեն մնացեր, դիտեր, քններ ու գրեր է։ Իր այս աննման յատկութիւնը ձեռք բերած է անդադար գրքերու մէջ թափառելով. հսկայ միտք մ'էր, որով կարդացածը դիւրաւ իր մէջ կը տագորուէր։ Գրուածքը՝ հեղինակութիւն էր, վասն զի հապճեպով յանպատրաստից զայն չէր հրատարակեր։ Իր ոեւէ հրատարակութեան անսխալ ըլլալուն՝ վրէժխնդիր էր. պէտք էր ամենայն ինչ ստուգէր և զայն յետոյ հրապարակ հանէր։ Նախ գրքին ատաղձը կը պատրաստէր, յետոյ իր կարդացած գրքերէն հաւաքած ծովածաւալ տեղեկութիւնները՝ անոր վրայ ճարտար գրչով կ'ագուցանէր, ի վերջոյ անոր անծանօթ կէտերը կը լուսաբանէր բազմաթիւ թղթակցութեամբ. և եթէ թղթակցութեամբ հանդերձ չկարենար ստուգել իր տարակոյսները, նոյն գրուածքը անգործութեան կը դատապարտէր. և այս անբաղդութեան մատնուած էր իր «Եւրոպայի հայ վանորէից պատմութիւնը», որուն հրատարակութեան համար մեր երիտասարդներէն մին տասն անգամէ աւելի դիմեր է պատկառելի Ծերունիին, սակայն նա միշտ մերժեր է այդ առաջարկը առարկելով՝ թէ ստուգելի կէտեր կան... և իրօք կային. Նա մի քանի անգամ՝ նամակներով աշխատած էր անոնց ստուգութեան համար, սակայն չէր յաջողած. իր ամենէն վերջին խօսքն եղաւ՝ որ այն երկասիրութեան մութ կէտերը լուսաւորելու համար անպատճառ պէտք է ճանապարհորդել։ Եւ այսպիսի խղճամիտ հեղինակ մը բնականաբար նոյն իսկ դժուարահաճ Եւրոպացի հռչակաւոր գիտնոց պատկառելի և գնահատելի պէտք էր ըլ-

լար։ Հայագէտները իրեն հետ թղթակցելով, կամ իրեն այցելութեան գալով, հայ դպրութեան և պատմութեան գոհացուցիչ ծանօթութիւններ կը ստանային։ Նոյն եւրոպացի գիտնոց հետ ունեցած յարաբերութեամբ, տէրութեանց ուսումնական կաճառները կը լսեն իր գիտութեան համբաւը, և այդպիսի ստարազգի մը իրենց ընկերութեան անդամակից ընելը պատիւ կը համարին. այս կերպով նա զանազան կաճառներու անդամ կ'ըլլայ և տէրութեանց պատուանշաններու կ'արժանանայ։

Տակաւին թէ հասակաւ և թէ գրական արդեամբք խիստ ծաղիկ ու թարմ, նա իր անդրանիկ գրութեամբ ուշադրաւ կ'ըլլայ. 1847ին տեղւոյս Թագաւորական ուսումնական գիտնոց ժողովոյն կաճառորդ կ'ըլլայ։ 1886ին Գաղղիոյ Ակադեմիոյ պատուոյ լէգէոնին կ'արժանանայ։ 1887ին Պապուց անդամ կ'ըլլայ Իտալիոյ Ասիական ընկերութեան։ Յոբելեանէն վերջը դեռ աւելի կը տարածուի իր գրական մեծ գործերուն համբաւը. նա մինչեւ նոյն ատեն հրատարակած էր իր աշխարհագրական, հնախօսական և պատմական կոթող գործերը, որոնք կը գնահատուին գիտուն և բանասէր ընկերութիւններէ. 1894ին Մոսկուայի Հնաբանական ընկերութիւնը զայն իրեն կաճառորդ կ'ընէ, երկու տարի յետոյ 1896ին տեղւոյս հին ու պատկառելի Վենետկեան կաճառը զինքը իր պատուոյ անդամներու մէջ մտցընելու հաճոյքն կ'ունենայ։ Նոյն տարին Պետրպուրկի Հնաբանական ընկերութեան անդամ կ'ընտրուի, իսկ 1897ին Ենայի փիլիսոփայական ակադէմիոյ։ Այս ամէն պատիւ իրեն համար ունայնու-

թիւն էին. Նա խօսք կու տար ծանօթանալէ, փառաւո֊րուելէ, սակայն փոքր իր եռանդն կը փախէր և իր գըր֊քերուն մէջ կը պատկէր անոր անխոնջ ճակատը։

Հ. Ալիշան գրքերու մէջէն հանեց իր չքնաղ գրքերը. իր երկասիրութեանց մեծ մասը հաւաքումներ են, բայց այնպիսի հաւաքումներ, որոնք իրեն հանճարին վայել ամենամեծ գեղապանցութիւն մ՚ունին, և իրեն կարողու֊թեան բնատուր․ Իր այդ երկասիրութիւնները տաղանդի այն բարձր բնադրոշմը կը կրեն, որուն ուրիշ մէկը հաս֊նելու համար, շատ մեծ հմտութիւն և մաքի առատ պաշար պէտք է ունենայ։ Հ. Ալիշանի համար հաւաքիչ ըսելով չենք կրնար նսեմացընել իր ոսկեղրուագ մատենագրա֊կան անհուն հմտութիւնը. եղան խեցբեկ գրիչներ, որ իր հսկայ գործերուն վրայէն նախանձի արհամարհոտ թոյն մը փչեցին. սակայն հսկայ հեղինակը անվրդով մնաց և պատասխանեց. «Ջհանոզը լաւագոյնը թող ցոյց տայ»։ Նա իր երկարաձիգ գրական ընթացքին մէջ ունեցաւ բացառութիւն կազմող խմաստակ ու հոսհոսական քննա֊դատներ, մենք չենք կրնար ըսել թէ Հ. Ալիշան անսխալ էր, իր ամէն գրութիւնք անվիճելի ճշմարտութիւններ էր զուրկ էին. ոչ. այս յաւակնութիւնը ոչ նոյն ինքն հեղինակն ու֊նէր և ոչ ալ մենք նոյնը իրեն կրնանք վերագրել. միայն կրնանք ըսել որ նա (յարգելով բացառութիւնք) չու֊նեցաւ անաչառ քննադատներ։

Նա իր գրական ընթացքին մէջ աւելի ովասննաներու և ազգիս միահամուռ պաշտումին արժանանալով, բացա֊ռութիւն կազմող քննադատներու նպատակաւոր խայթոց֊

*ները զինքը չվհատեցուցին. որով նա չհեռացաւ իր գրքերէն և մինչև ցյետին շունչ, ձեռքէն գրիչը չթողուց, կարդաց, գրեց և դիզեց այն գրքերը, որոց մեծ մասը լոյս տեսան և սակաւք միայն անպատրաստ ու անտիպ մնացին։*

*Ահա՛ թէ որոնք են իր այդ մատենադարան մը կազմող տպուած և անտիպ երկասիրութիւններն և թարգմանութիւններն։*

# ՀԱՅՐ ԱԼԻՇԱՆԻ ԳՐՔԵՐՆ

## ՏՊԱԳՐՈՒԱԾՔ

Աբգարու Թուղթ. երկասիրութիւն Լաբուբնեայ ասորի մատենագրի. պատմութիւն Եդեսացւոց քրիստոնէութեան և թղթակցութիւն Աբգարու՝ Քրիստոսի հետ։ Նախնեաց թարգմանութիւն մ՚է, զոր բազմաթիւ հնագիտական ծանօթութիւններով հրատարակեց 1868ին։

Աբուսալհ Հայ. – այս արաբագիր պատմըչին վրայ հնագիտական տեղեկութիւններ կու տայ, կը ծանօթացնէ անոր 1338ին գրած Եգիպտոսի հայ վանօրէից, կալուածոց և երեւելի ազգայնոց պատմութիւնը, զոր կը թարգմանէ անգղ. թարգմանութենէն։ փոքր գրքոյկ մ՚է հրատարակուած 1895ին։

Աղօթք Աբեղայի. իր մաքրափայլ և երկիւղած սրտէն արտաբուխ հառաչներ և աղերսներ են առ Բարձրեալն ընծայուած. Երկնքի գութը շարժող և ապաշխարող աբեղային ընդարմացած հոգին յուզող զգայուն աղօթքներու խընկարան մ՚է, փոքրածաւալ հատորիկ մը 1876ին հրատարակուած։

Աշխարհագրութիւն Հայաստանի. – Տես գիրքս 125 էջն Տեղագիր Հայոց մեծաց։

Աշխարհագրութիւն քաղաքական. – Տես գիրքս 124 էջը։

Այրարատ. աշխարհի տեղագրական, քաղաքական կրօնական պատմութիւնը և նկարագիրը հին և նոր խոր և մանրակրկիտ հմտութեամբ գրուած։ Կազմուած 590 երկսիւնեան մեծադիր պատկերազարդ էջերէ. հրատարակուած 1890ին։

Արշալոյս. – Ի հայս քրիստոնէութեան մուտքի բանասիրական և բանաստեղծական պատմութիւնը, որ մեծադիր և միջածաւալ հատորի մէջ ամփոփուած հրատարակուեցաւ 1902ին։

Գիրք Վաստակոց. – Տնկաբանական, երկրագործական, տնտեսական նախնեաց գրչագիր գործ զոր 1877ին հրատարակեց խիստ շահեկան յառաջաբանով մը և կարեւոր ծանօթութիւններով։ Այս շատ մը բանասիրաց քննութեան և քննադատութեան ենթարկուեցաւ։ Հրատարակութիւնս շալակած է նաև Գէորգ Պալատեցւոյ կազմած «Անծանօթ բառից բառգիրքը»։

Երկրագործութիւն հայկական. — Բառացի թարգմանութիւն իտալ. Ge nomia armen. բառին։ Այս փոքրիկ հրատարակութիւնն թարգմանուած է Վենետկոյ Համազգային երրորդ աշխարհագրական ժողովի առթիւ, իտալերէն լեզուով իր խօսած ճառին վրայէն. իտալերէնն ալ հրատարակուած է 1881ին։ Հեղինակը նոյն ճառով գիտուն հանդիսականաց կը ներկայացնէ Վենետկոյ հայ Գաղթականութեան համառօտ պատմութիւնը. կը խօսի մեր նախնի աշխարհագրական երկասիրութեանց վրայ։ Գըրքին վերջը զետեղած է այն ուսումնական աշխարհահանդէսին ի ցոյց գրուած մեր և օտար ազգայիններէն Հայ երկրի վրայ խօսող աշխարհագրական երկասիրութեանց ցուցակները։

Զանգակ. – Հռչակաւոր գերման քերթողի Շիլլէրի զանգակի վրայ խորհրդածութեան թարգմանութիւնն. հրատարակուած 1871ին։

Զառանցանք Աստուածային սիրոյ. — Ս. Ֆրանչիսկոս Ասիզացւոյ հոգեւորական քերթուածի թարգմանութիւնն է զոր մահուընէն մի քանի օր առաջ, տպարանին յանձնած էր. և նուիրած Ուխտին Ներ-

կայ Վենետիկ Գերապ. Հօր անուան տօնի յիշատակին: Մահուընէն մի քանի շաբաթ յառաջ տպուեցաւ:

Ընդ Եղեւնեաւ. — Բանաստեղծական ոգւով, ճարտասանական ոճով, իր իմաստասիրական, բարոյական եւ հոգեւորական հիանալի խորհրդածութիւններն են, զոր գրած է Վիչենցա գաւառին Պասսանօ գիւղաքաղաքի գերեզմանատան մէջ: 1874ին հրատարակուած, եւ ամփոփուած մանրատառ փոքր գրքի մէջ: Գրաբար:

Ընթրիք Տիտոսի. — Թարգմանութիւն Պոսսուէի Տիտոսի ընթրեաց աւետարանի մեկնութեան: Գրաբար. հրատարակուած ի յիշատակ իր յոբելինի 1890:

Խմացք ի չարչարանս Քրիստոսի. — Հոգեւոր խորհրդածութիւնք, խրատք Քրիստոսի չարչարանաց աւթիւ. գրութիւն Գայետանոս Պերգամացի: Հ. Ալիշան ասոր գրաբար թարգմանութեան կցեր է չարականներէն քաղած երգեր, եւ ուրիշ զանազան աղօթքներ աւելցուցած է: Հրատարակած է 1879ին:

Խոսալիս. — Տես գրքիս 45 էջն Lord Byron, « Childe Harold's Pilgrimage ».

Լիկուորեայ Պատրաստութիւն մահու. — Մարդուս վախճանին վրայ գրուած հոգեբուխ եւ հոգեշատ իտալերէն գրութեան աշխարհաբար թարգմանութիւնը. որուն կցած է նոյն հեղինակին հոգեւոր քերթուածներուն թարգմանութիւնը: Հրատարակուած 1852:

Խոսրով Անձեւացի. — Եպիսկոպոսի գրած պատարագի մեկնութեան հրատարակութիւն 1869ին, կարեւոր ծանօթութիւններով: Գրքին սկիզբը դրուած է նաեւ իր գրած Խոսրովի կենսագրականը:

Խորհրդածութիւնք. — Ս. Օգոստինոսի. հռչակաւոր սուրբին աղօթքներու եւ խորհրդածութեանց թարգմանութիւնն է, զոր ժամանակին պատրաստած է Հ. Ալիշանի դասախօսակից Հ. Ա. Ծովկեան. այս գրքոյկին Հ. Ալիշան կցեր է իր ճարտարահնչիւն գրչով շարադրած այդ դասախօսակին եւ նոյնպէս իր աշակերտին վկայագրական պատմութիւնը, 1893ին կը հրատարակէ:

Կամենից. — Տարեգիրք Հայոց Լեհաստանի եւ Ռումանիոյ, հաւատաչեայ յաւելուածովք. հայ նշանաւոր գաղթականութեան ուշագրաւ պատմութեան ճոխ գանձարան մ'է, զոր կազմած հրատարակած է, հմտալից յառաջաբանով եւ շահեկան ծանօթութիւններով: 274 էջէ բաղկացած գիրք մ'է, որուն հրատարակութեան թելադիր եւ մեկենաս եղաւ Ռումանիոյ վեհափառ տանն դաստիար մեծայարգ Պ. Գրիգոր Պըլըրջեան: Հրատարակուած է 1896ին.

Կիրակոս պատմիչ. — Հրատարակութիւն Կիրակոս Վ. Գանձակեցւոյ ազգային պատմութեան. սկիզբը գրած է տասը էջով բանասիրական հմուտ ներածութիւն մը, եւ հրատարակութիւնը լուսաբանած է զանազան ծանօթութիւններով: Տպագրուած է 1865ին:

Հաղորդատուք. — Տես գրքիս 83 էջը:

Հայբուսակ. — Տես գրքիս 135 էջը:

Հայ-Վենետ. — Տես գրքիս 132 էջը: Հեղինակը այս շահեկան պատմութիւնը նաեւ իտալերէն լեզուով թարգմանած է. երկու հատոր, մին գաղթականութեան պատմութիւնն, միւսը Հայոց Վենետկեցւոց հետ ունեցած յիշատակարաններու բովանդակութիւնը: Լոյս տեսաւ 1893ին:

Հայոց երգք Ռամկականք. — Մի քանի ազգային ռամկական երգեր, որոնք հայ եւ անգղիերէն լեզուով հրատարակուած են 1852ին:

Հին հաւատք հայոց. — Տես գրքիս 135 էջը:

Հրեշտակք. — Ս. Ալոզիոս Գոնձակայ. հրեշտակ հասակի մանկանց պաշտպան նազելի սուրբին հրեշտակաց ճառին թարգմանութիւնն է, զոր հրատարակած է 1352ին:

Յուշիկք Հայրենեաց Հայոց. — Մեր ազգին ծանօթ եւ կէս ծանօթ մի քանի քաջաց, գիւղացւոց եւ նշանաւոր ու սիրելի հայկազանց վիպական հրապուրիչ պատմութիւնն է. ուր հեղինակը հայրենիքի վառ բոցով կը լարէ մեր ուշա-

գրութիւնք. մեզ ցոյց կու տայ Նուագող բնագաւառի պատկերները և կրակուրոց քաջարդունքը և հրեշտակաձեւան սուրբերը՝ հոգւով պաշտելի և ազգային հրով տարփելի։

Նմանողութիւն Ս. Ալոյզիոսի. — Բանաստեղծական և երկնային քնարով երգուած հոգեվառ կենսագրութիւն Ս. Ալօզիոսի։ Հրատարակուած է 1853ին։

Նշմարք եւ Նշխարք Հայաստանի. — Տես գրքիս 125 էջը։ Աստ անդ. գաղղ. և գերմաներէն թարգմանութիւններն ալ հրատարակուած են։

Նուագք. — Հինգ հատոր գերազանցօրէն հիանալի քերթուածներ։ Տես գրքիս «Բանաստեղծական երկեր բաժինը. էջ 103։

Նուէր Տղայոց. — (Յոյզք Աստուծոյ) Թարգմանուած մանկական գեղեցիկ արձակ բանաստեղծական խրատներ. տըպուած է 1866ին։

Շիրակ։ — Տես գրքիս Տեղագրական երկեր» բաժինը էջ 124։

Շնորհալի եւ Պարագայ իւր. — Տես գրքիս. «Զանազան գրութիւնք» բաժինն էջ 134։

Ոսկեփորիկ. — Խոնարհութեան, համեստութեան առաջնորդող ու յորդորող կեղինիկ գրքոյկ մ՚է, թարգմանած և հրատարակած 1878ին։

Սողոմի Հաւաքածոն. — Լատինացիքեր քերթողի՝ Հաւապատուրի կայսերական ընտանեաց վրայ գրած չափաբերական վիպասանութեան թարգմանութիւնը, զոր նուիրած են Աւստրիոյ Փ. Յովսէփ Ա. կայսեր, երբ սա 1856ին իր վեհաշուք տիկնոջ հետ մեր կղզւոյն այցելութեան եկած է։ Նոյն գիրքին հետ հրատարակուած է 500ի մօտ մեծադիր էջերով։

Սիսական. — Տես գրքիս «Տեղագրական երկեր» բաժինը. էջ 123։

Սիսուան. — Տես գրքիս «Տեղագրական երկեր» բաժինը. էջ 124։

Սերբոս Գառնըստայի Առերգք Աստուածայ։ Գաղղ. եւ հայերէն, Աստուծոյ պարունութեան, օրէնքներու, խրատաց և իշխանութեանց բաղանդակութիւնը, հըմտալից ներածութեամբ և ծանօթութիւններով։ Հրատարակուած է 1876ին։

Սնունդք սրտի եւ հոգւոյ. — Հոգի ու սիրտ առ գերբնականն բարձրացնող իմաստալից աղօթ խրատականք, զոր քաղեր է Ս. Գրքերէն, հին և նոր հըռչակաւոր մատենագրաց գրքերէն։ Տըպագրուած է 1888ին։

Սոփերք Հայկականք 22 հատոր փոքրագիր մանրատառ նախնեաց գրականութեան պատմական, իմաստասիրական և կրօնական հատեր, կենսագրականներ և խրատներ են. ի բաց առեալ վերջին երկու հատորները, միւս ամէնն ալ Հ. Ալիշան հրատարակեր է, ամանց ակիզբն ալ դրած է մի մի ներածութիւն։ Նախնեաց այս անտիպ գրութիւնները ի լոյս ընծայած է յօգուտ և ի զբօսանս և հետաքննիցն բանասիրաց և՝ գեղակիրթ համբակաց, և մանաւանդ յետնոցս նախանձու յարդարել զնոսին առ կատարեալ և խմբագիր մատենագրութիւն հայ դպրութեանց .- այս էր իր աշխատութեան զուտ նպատակը։ Հ. Ալիշանի այս ձեռնարկէն առաջ, հարքն Բագրատունի, Ներսէս Սարգիսեան, Ս. Թէրեանց և Այվազովսկի մեծադիր էջերով, հրատարակած էին Նախնեաց ուրիշ անծանօթ կարեւոր հեղինակութիւնները և գեղեցիկ թարգմանութիւնները. Սոփերքը նոցա հետեւորդներն կ՚ըլլան։

Վասն վանօրէից որ ի Ս. Քաղաքն յԵրուսաղէմ. — Գաղղիոյ Société de l'Orient latin ընկերութեան նախագահին խնդրանօք, Հ. Ալիշան փութանակ տետրակի մէջ ամփոփելով Է. դարու վերջերուն կամ Ըին սկիզբը՝ Հայոց Անաստաս վարդապետէ՞ շարադրուած յիշեալ վանօրէից պատմութիւնը և գաղղիերէն թարգմանելով, յղած է յիշեալ ընկերութեան նախագահին։ Այդ տետրակը 42 միջակ էջերէ կազմուած է գաղղիերէնին հետ կը բովանդակէ նաև բնագիրը՝ փոքրիկ յառաջաբանով մը։ Հրատարակուած է 1896ին։

Վարդանայ Վարդապետի Հաւաքումն

Պատմութիւն. — Աշխարհիս սկիզբէն մինչեւ ցամ Տեառն 1267 հաւաքած ազգային պատմութիւնը ԺԳ. դարու նախնեաց գործ, զոր շահեկան ծանօթութիւններով հրատարակած է 1862ին։

Քնար Ամերիկեան. — Ամերիկեան քերթողներու գեղեցիկ և զգայուն քնարէն կտորներ, զոր թարգմանելով, բնագրով ի միասին՝ մանրատառ 85 փոքրադիր էջերու մէջ ամփոփած հրատարակած է 1874ին։ Այս երգերը մեր բանաստեղծին Լոնտրայի մէջ անցուցած մելամաղձոտ օրերուն ներդաշնակ բամբռահարներն էին։

Tableau succinct de L'Histoire et de la Littérature Arménienne. Մուրատեան վարժարանի մէջ իր ուսուցչութեան օրով պարգեւաբաշխութեան առեն ազգային մատենագրութեան վրայ կարդացած համառօտ ճառն։

Physiographie de l'Arménie. Տես գրքիս 72 էջը։

Laboubnia. — Lettre d'Abgar ou Histoire de la conversion des Édesséens. — Լաբուբնայ (Ղերուբնայ) ասորի մատենագրի երկասիրութեան գաղղ. թարգմանութիւնն է, բազմաթիւ ծանօթութեամբ և մի գեղեցիկ ներածութեամբ։ Տես գրքիս 52 էջը։

Elia d'Alessandro. Վենետահայ գաղթականութենէն պատմութիւն մը, Աղեքսանդրեան ընտանեաց վրայ տեղեկութիւններ։ Այս փոքրիկ գիրքը հրատարակուած է 1876ին, 30 օրինակ (որով հազուագիւտ), 16 մեծադիր էջերէ բաղկացած։

Ուրիշներու ձեռքով թարգմանուած են իր հրատարակութիւններէն Սիսուան (գաղղ.), Կարմիրն Վարդան (իտալ.), Հայկայ շրջանը (գաղղ.), Լեւոն մեծագործ (գաղղ.) Թէոդոր Ռշտունի (գաղղ.)։ Սիսուան տեղագրութեան գաղղ. թարգմանութեան յառաջաբանը ինքը գրած է, այդ դեռ աւելի ընդարձակ էր և աւելի Հայրունիի վառ բոցաշունչ և խիզախ ոգւով. տակայն վերջը ստիպուեցաւ զայն կրճատելու և բոցաշունչ ոգին մարելու...

## ԱՆՏԻՊ ԳՐՈՒԹԻՒՆՔ

Երգարան. — Մեզ համար անծանօթ մնացած էին իր շատ մը անտիպ գրքերն, զոր կը ծածկէր իր դարաններուն մէջ։ Ամենէն ծանօթ մնացածն Երգարանն է, զոր մահուընէն յետոյ գտանք։ Իր անտիպ գրուածոց մէջ տպուելու պատրաստ միակ գիրքին գործն սա կարելի է համարել։ Կազմուած է քսանըվեց (26) ութածալ թերթերէ, էջք միջադիր, գրութիւն կոկ և մանրիկ ու կոկիկ։ — Կը բովանդակէ Մ. Մ. Մխիթարեանցի ծանօթ Քնար Հայկական երգարանին նման ամէն տեսակ երգեր, որոնք հին աշուղներէ, տաղերգուներէ գրուած են, և ժողովրդեան մէջէն լսուած և ընդօրինակուած։ Երգերէն մեծ մասը գրչագիր անտիպ մատեաններէ քաղուած է Մխիթարեանցի երգարանին մէջ կը գտնուին այս երգարանիս մէջ եղածներէն մի քանի հատ։ Այդ երգարանէն կը տարբերի Հ. Ալիշանինն իր պարունակած հին երգերով։ Հ. Ալիշան անցեալ դարու կէսէն սկսեալ, շատ մը ծանօթ ազգային բանաստեղծներու երգերն իր հաւաքածոյին մէջ ընդունած չէ, մինչդեռ Մխիթարեանցի գրեթէ երգերուն մեծ մասը՝ անոնք կը կազմեն։ Հ. Ալիշանի Երգարանին գլխաւոր աղբիւրներն են Ֆրիկ քերթողի ոտանաւորներն։ Ոտանաւոր առացեալ է Ֆրիկն որդի Թագվոշին Եղբօրորդի Գոդոնայի, ի վերայ իւր մեղացն, ի վանս բանաստիրաց. այս քերթողին ոտանաւորներու ցանկին վրայ այդ վերնագիրն կը կարդանք. Ֆրիկի բանաստեղծութիւնք բարոյական, խրատական և կրօնական են։ — Նոյնպէս իրեն աղբիւր եղած են մեր մատենադարանի գրչագիր Մաշտոցներու և Ռակեփորիկ անուանեալ հաւաքածոյներու մէջ գտնուած երգերն. ժողված է Նաղաշի, Սալաձորեցւոյ, Խաչատուր Եթովպացւոյ, Թոխաթցի Ստեփաննոսի, Աղթամարցի Գրիգորի, Գրիգոր Ծերենցի աշակերտ Առաքել Վարդապետի, Ստեփաննոս Ուրպելեանի, Պետր. Վարդ. Պա-

փանցւոյ, Պետր. Ջուղայեցւոյ. Յովհաթան Շռոոթեցւոյ, Յովհ. Երզնկացւոյ զանազան երգերն։ Վաղեմի հանդիսից և օրագրաց մէջ ցանուցիր գտնուած երգերն ալ իր այս երգարանին աղբիւր եղած են։ — Երգերու մեծ մասը իր Նահապետ տպագրութեամբ ոտանաւորներուն լեզուով է. գա արոշ է որ մեր Նահապետ բանաստեղծն լեզուի տեսակէտով, անոնցմէ ներշնչուած է, անոնց աշուղային զգացմունքը իրեն քնարին վրայ ազդեր են։ Բայց պէտք է խոստովանիլ որ այդ ամբողջ երգարանին մէջ, մենք չգտանք մի երգ, որ բանաստեղծական տեսակէտով հաւասարէր Նահապետին բարձրաթռիչ ոնէ զգայուն մի երգին։ Քննելով երգարանին այդ երգերը և բաղդատելով հուագներուն հետ, և չգտնալով պատմութեան կամ ծրագրի նմանութիւններ, մեզ համար կրկին գնահատելի ու փարելի է իր ազգաշունչ փողն և բոցաշունչ բամբիռն։

Անտիպ երգեր. — Անշուշտ շատեր կը կարծէին թէ բանաստեղծ Նահապետը պէտք էր ունենայ բազմաթիւ անտիպ երգեր, սակայն կը ցուցնենք որ մենք ալ նոյն շատերուն հետ այդ գեղեցիկ կարծիքը ծով կը նետենք։ Իր գրագարանին մէջ գտանք մի փոխո տետրակ, ուր ամփոփուած են մի քանի երգեր որոնց մեծ մասը արդէն իսկ հուագներուն մէջ տըպուած են, կը մնան անտիպ մի քանի հատ, որոնք ընդհանրապէս կրօնական երգեր են, զոր հրատարակելու անարժան գտեր է, մենք ալ անշուշտ անոնց տր մէջ մը տալու իրաւունք չունինք։ Ասոնց մէջ կը տեսնենք ոտանաւորներ, զոր խղճմտութեամբ սրբագրեր է, ասոնք ապացոյց մ'են թէ, այդ վարժ բանաստեղծը որքան կ'աշխատէր իր ոտանաւորներու գեղեցկութեան և կատարելութեան համար։ Սրբիս մէջ մենք երկարօրէն գրեցինք Լոնտոնի մէջ Հօր Ալիշանի պանդխտութեան պատմութիւնը. այս բաժնին մէջ, լաւ կը համարենք հրատարակել իր հետեւեալ անտիպ մի ոտանաւորն, որ իր պանդխտութեան նեղսիրտ և անհաճոյ օրերուն հնչուն հառաչն է, և որ տպագրուած է Յորմ սենեկին յար վեց ամիս անձկութեամբ բնակեցի ի Լոնտոն, 1852, ի 54 Bernard- treet, Russel Square։

Զիս ինչ յերկրի՝ որոյ փախճան ոչ կանխէ,
Ժամանակ՝ որ զհամայն՝ զինքն իսկ ծախէ։
Այլ, ո՜հ, թէ սիրտ քան զամանակն է հզօր,
Կաթող կըրիցն արժանացի ատանոր։
Պանդո՛ւխտ, որ յետ իմ յայս սենեակ գաս, գիտեա՛
Զի վեց ամիսք աստ ծըխեաց սիրտ Ղեւոնդեայ։

31 Օգոստոս 1852

Հ. Ալիշան իր հատուկտոր այս անտիպ ոտանաւորներուն մէջ, գրած է նաև մի ցանկ՝ իր ամէն քերթուածներուն, ուր նշանակած է ու գրած ոտանաւորներու տարեթիւը և օրը, որ իր տպած երգերէն շատերը չեն կրեր. կենսագրականին համար այդ կարեւոր է։ Պլպուլն Աւարայրի գրած է 1847ին, աշխատած է Յունիսէն Յուլիս. Մասիսու սարերն 1849. Մարտ 2ին. Հայոց աշխարհիկ ը 1847. Մայիս 12-3ին, Շուշանն Շաւարշանայ (իր սիրած և գնահատած ամենէն գեղեցիկ երգն) 1857. Հոկտ. 18ին, Հայ հանճար 1863. Յուլ. 5ին, և այլն։

Հայաստանն Հայկազանց ցՏիգրանն. — Ձեռագրիս առաջին էջն կը բացուի վերնագրով. «Հայաստան յառաջ քան զՏի-

նեյն Հայաստան . . — Այս վերնագիրը մեզ երազել կու տայ մեր բնաշխարհի վաղեմի անծանօթ պատմութիւնը, մենք ալ կու տանք մեր երեւակայութեան, կ'ուզենք պատկերել Հայաստան Հայկէն առաջ, մենք գուցէ կ'երեւակայենք հոն տեսնել նորատեսիլ վայրենի ազգ մը, որ հայկազուն քաջերէն առաջ՝ հոն կ'ապրէին, կ'իշխէին, որով կ'ուզենք հետաքրքրուիլ թէ ինչ էր մեր երկրի նախորդ տեարց և նահապետաց պատմութիւնը: Սակայն մեր հնասէր Նահապետը իր ընթերցողը Աստուածաշունչի սահմանէն դուրս չի հաներ. նա իր ամբողջ պատմական և հնախօսական հմտութեամբ կ'ապացուցանէ, թէ մեր բնիկ ու հարազատ աշխարհին նախկին և անդրանիկ տէրն էր նախասկիզբ մարդն Ադամ, որուն մախիտապատուած Դրախտն Ադինական էր նոյն ինքն մեր աշխարհ Հայաստան: — Այս անտիպ երկասիրութիւնը բաղկացած է 141 մեծադիր էջերէ, որ մանրատառ գրութեամբ՝ Նախամարդէն մինչև ցՏիգրան կը հասցընէ Հայոց պատմութիւնը: Ամբողջ գործը բաժնած է հետեւեալ գլխակարգութեանց:

Ա. Գիրք. — Հայաստան յառաջ քան զլինելն Հայաստան: Ա. Հայրենիք մեր սկզբնավայր մարդկութեան. — Դրախտն Ադինայ:

Յայդ. — Բ. Արտադրախտին Նահապետք ի Հայաստան

Գ. Որդիք Աստուծոյ և Որդիք Մարդկան:

Դ. Ջրհեղեղ–Տապանն–Նոյ:

Ե. Նոյեան բնակիչք մինչև ի բաժանումն սերնդոցն:

Զ. Բաժանումն ազգաց և լեզուաց: — Հայաստան, վիճակ Յաբեթեանց մինչև ի Թորգոմ:

Է. Սկզբունն Հայ ազգի և լեզուի: — Անուն մերոյ Հայրենեաց:

Ը. Թորգոմ–Տուն Թորգոմայ:

Թ. Հայկն:

Ժ. Հայկազունք յԱրամ: — Արմենակ. — Արամայիս. — Ամասիա. — Գեղամ. — Հարմա:

ԺԱ. Արամ:

ԺԲ. Արայն Գեղեցիկ. — Շամիրամ. — Արայեան Արայ (Կարդոս) — Անուշաւան:

ԺԳ. Հայկազունք կողմնակալք Ասորեստանեայց մինչև ցթագաւորութիւն Մարաց և Հայոց (–797 Ն. Ք.):

ԺԴ. Քայքայումն ինքնակալութեան Ասորեստանեայց եւ թագաւորութիւն Հայկազանց:

Այս ցանկէն փոքր ի շատէ կրնանք գուշակել, թէ ինչ է Նահապետին մեզ թողած իր այդ Հայոց պատմութեան գլխաւոր նիւթը: Ճիշդ է որ Հ. Ալիշան այս երկասիրութիւնը ձօնած չէ մեր այժմեան քննասէր կոչուած բանասիրաց նոր հետազօտութեանց վրայ, սակայն Զամչեան վարդապետի ոճով, նա իր քննութեան զէնք առած է բազմաթիւ օտար պատմիչներու վկայութիւնները: Այս գործին մէջ հին պատմաբանական հմտութիւնը խիստ ընդարձակ է: Աւելի Հայոց պատմութեան քննադատութիւնն և լուսաբանութիւնն է, քան թէ պատմութիւն մը միամտօրէն վիպական կամ նահապետական: — Ասոր վրայ մանրամասն խօսիլն աննպատակ կը համարինք, քանի որ նա շնորհիւ Ռուսահայ Պ. Գ. Քէօրօղլու ազգասէր մեկենասին, մամուլի յանձնուած է: Հրատարակուելէն յետոյ ամէն բանասէր կարող է ըմբռնել անոր քննադատական և ուսումնական արժէքն: Կը կանխենք ըսելու որ գրութեանս մեծ մասը աշխարհաբար գրուած է: Լայն լուսանցից մէջ խառնուած է մեր և օտար հայապատում ամեն պատմիչներու հետաքրքրական ծանօթութիւններն: Պատմական և աշխարհագրական անուանց ստուգաբանութիւնք հմտօրէն կը ներկայացընէ:

Հայ Եկեղեցի. — Հայ Եկեղեցական պատմութիւն մը չէ, այլ, եկեղեցականաց մասին կցկտուր տեղեկութիւններու հաւաքածոյ: Կազմուած է 56 միջադիր էջերէ, զոր ամբողջովին չէ գրած: Բովանդակած նիւթերու վերնագիրներն են. Ազատութիւն, Պատիւ Հայ. Եկեղեց.

ւոր—Միաբանութիւն ընդ Հռովմայ. — Միաբանութիւն Հայոց ընդ Հռովմայ յօծման Լեւոնի ի Թագաւոր. — Աթոռ Հայաստանեայց. — Ազգային ժողով եկեղեցական. — Կաթողիկոս (Ընտրութիւն). — Ինքնիշխանութիւն Կաթողիկոսի. — Բարձրագահ Եպիսկոպոսունք. — Եպիսկոպոս. — Քորեպիսկոպոս. — Սկիզբն կրօնաւորութեան կամ վանաց ի Հայս. — Պատճառ շինութեան առաջնոց վանորայից ի Հայս. — Զի ոչ միայն ներանձնաձեռն ճգնաւորք այլ և տեսուչք ժողովրդեան և վարդապետք էին ի վանականաց առաջնորդք, Եպիսկոպոսունք, և այլն: — Ի նախնումն Եպիսկոպոսք ի քաղաքս նստէին և ոչ ի վանս. — Ի Ժ. դարու առ Բագրատունեօք, թուի սկիզբն հաստատութեան Եպիսկոպոսաց ի վանորայս. — Վանահայրք և Վանաց Երիցունք միանէին ի ժողովս ընդ Եպիսկոպոսաց. — Պատիւ վանականաց. — Ազատութիւն շինելոյ վանս — Աշխարհականք վանաշէնք. — Կաթողիկոսի և Եպիսկոպոսաց իշխանութիւն ի վերայ վանաց. — Ինչք վանականաց. — Քաղկեդոն. — Բաժակն. — Յաղագս բաժակին — Ս. Աստուած — Խաչեցար. — Հոգւոյն Սրբոյ Բղխումն. — Այս ամէն պարբերութեանց վերնագիրք հայ ծիսական, կրօնական կամ աւանդական ուրր գիտութեանց հետամուտ գիտնոց շատ հետաքրքրական կ'երեւին, և գուցէ մեծ փափաք ունին յայտնեն այս մասերը տպագրուած տեսնելու, բայց մենք կը փութանք ըսելու, որ ասկից մեծ լոյս մը կարելի չէ սպասել. քանի որ ամէն վերնագրի տակ չկայ գուշակուած գիտութիւնը և մեկնութիւնը, այլ ազգային եկեղեցական և պատմական գրքերէ քաղուած երկու կամ առ առաւելն երեք չորս վկայութիւններ. տեղ տեղ նաև լատին գրքերէ, ըստ նիւթին, կը գտնուին լատիներէն վկայութիւններ. Իրօք գործը, մեր սրբազան գիտութեան համար խիստ շահեկան է, սակայն կը յուսինք ըսելու որ զայն Հ. Ալիշան բոլորովին անկերպարան թողուցեր է, և հաւաքածն ալ, այդ կազմակերպութեան նիւթին ընտիր բեկորներ են, որոնք նոյն գործին հետեւող բանասիրի մը համար օգտակար են և իբրև ծրագիր նաև փոքր առաջնորդ կրնան ըլլալ:

Ժողովք. — Հայաստանեայց Եկեղեցւոյ ժողովքներու պատմութեան համար հաւաքածոյ մ'է. փոքրիկ, մանրիկ թերթիկներու վրայ մանրատառ նշանակած է այլ և այլ ժամանակ կրօնական խնդիրներու առթիւ կազմակերպեալ ժողովներու մասին խիստ անկատար տեղեկութիւններ: Այս Հաւաքածոյին մէջ կը գտնուին նաև մի քանի թերթերու վրայ նշանակուած եկեղեցական վիճակագրութեան ցանկեր: Հետաքրքրական է Կ. Պոլսոյ Հայ Հռովմէական Պատրիարքարանէն տրուած կանոններն՝ հետեւեալ վերնագրով. Յարաբերութիւնք Թեմական և վանականաց. Խորհրդածութիւնք և պատասխանիք 2ի կանոնաց առաջարկելոց յերից Եպիսկոպոսաց ի Կ. Պոլիս . Թուական չունի: Կը գտնուի նաև հետագայ վերնագրով տետրիկ մը. Դիտելիք ինչ և զգուշալիք յառաջարկս կամ ծրագիրս Պատրիարքական ժողովոյն. փոքր սակայն խիստ շահեկան գրութիւն մ'է այս, ուր Հ. Ալիշան ազգային եկեղեցական պատմութեան փաստերով, նոյն Հռովմէական ժողովոյ կանոնները կը լուսաբանէ: Հաւաքածոյից զանազան մասերն մի առ մի յիշելն մեր գործի նպատակէն դուրս է:

Հայ Վանօրայք յԵւրոպա. — Պատկանելի հաւաքածոյ մ'է այս. ուր խմբուած են Եւրոպայի մէջ գտնուած ամէն վանքերու, եկեղեցիներու, ուխտերու նկարագրութիւնն և պատմութիւնն: Աս բոլորովին անկատար է, հաւաքած նիւթերը ճոխ և մեծ մասը Եւրոպական լեզուով: Ամենէն աւելի բազմաթիւ հայ վանքեր գտնուած է Իտալիոյ ծանօթ և նշանաւոր քաղաքներու մէջ: Ինչ որ կերեւի Հ. Ալիշան այս գործին համար շատ աշխատած է. այն քաղաքներու մէջ ուր վանքեր գտներ է, սկսեր է թղթակցութեամբ, անոնց մասին տեղեկութիւններ

առնել տեղւոյն քաղաքական թանգարանի քարտուղարներէն. քններ է իւրաքանչիւր քաղքի տեղագրական պատմութիւնները։ Վանքերու պատմութեան հետ յիշած է նաեւ նոյն քաղաքներու մէջ ժամանակաւ գտնուած ազգայինները։ Այս աշխատութիւնն եւս որոշուած է մամուլի յանձնուելու, որով վրան մանրամասն գրելն աւելորդ կը համարինք։

Անկազմ Հայկարան. — Այս անուամբ կը կոչենք այն նոր հաւաքած Հայկարանն՝ անջատ իր ի վաղուց կազմած հատորաւոր հին հայկարաններէն։ Հայ վկայաբանութեան, եկեղեցական պատմութեան քաղաքական և աշխարհագրական պատմութեան վերաբերեալ քաղուածներով կազմուած ձեռագիր մ'է։ Բաղկացած է քսան մեծադիր ութածալ թերթերէ։ Հայկարանիս ամենէն ուշագրաւ մասերն են Աղուանից աշխարհին պատմութիւնը, Ս. Բարսղի թղթերն, Հայ Եկեղեցւոյ տօնելի մի քանի օտար սրբոց վկայաբանութիւնները և հայազգի Ֆր. Աւգոստինոս Բաջենց Եպիսկոպոսի կենսագրութիւնը։

Փոքրիկ Պատմիչք. — Գեղեցիկ, կոկիկ հաւաքածոյ մ'է և այս, ուր կը գտնանք եւրոպական պատմիչներէն հաւաքեալ պատմական կտորներ, որոնք կը վերաբերին ամենէն աւելի մեր Կիլիկեան պատմութեան։ Թարգմանուած չեն, կը մնան բնագրին լեզուով։ Կազմուած է 15 մեծադիր ութածալ թերթերէ։

Կոնդակք. — Հսկայ մեծղի հատոր կազմող ձեռագիր, կատարեալ գործ մ'է, ուր Հ. Ալիշան ամբարած է Հռովմայ Քահանայապետոց մերազնեայ կաթողիկոսներու, թագաւորներու, եպիսկոպոսներու յղած կոնդակներու և անոնց պատասխաններու օրինակներն բնագրին լեզւով։

Յիշատակարանք. — Պատկառելի և հոյակապ վաստակոց և յամառ աշխատութեան արդիւնք, սքանչելի գործ մ'է, մեզ ծանօթ և անծանօթ հայ գրչագրաց յիշատակարաններու այս հաւաքածոյն, որ կը բաղկանայ երեսունըհինգ մեծադիր թերթերէ. իւրաքանչիւր թերթ ունի քսան մանրատառ էջեր։ Այս գործը որքան կարեւոր, որքան հետաքրքրական և շահեկան է, զայդ լիովին կարող են ըմբռնել հայ պատմութեան և բանասիրական ուսման հետամուտ լուրջ գիտնականք և քննադատք։

Գործիս երկրորդ հատորը, առանձին Հայկարաններու մի խոշոր հատորն կազմած է։

Դրիմ-Կաֆա. — Այս քաղաքներու պատմութեան վերաբերեալ, օտար պատմիչներէն քաղուած պատմական նիւթեր, իւրաքանչիւր նիւթ եւրոպական լեզուով է։ Վախ է այս հաւաքածոյն։

Թուղթք - Դաշինք. — Եւրոպական պետութեանց՝ մեր ազգային գործոց հետ ունեցած վերաբերութեանց զանազան թղթեր և դաշնագրութիւնք, զոր եօթը մեծադիր թերթերու մէջ հաւաքեր է առանց եւրոպական բնագիրները թարգմանելու։

Հայ-Վենետ. — Այս անուամբ նա ունի տպած փոքր հատորիկ մը, սակայն նա ատկէ զատ իր գրադարաններու մէջ պահած էր Վենետկոյ հայ գաղթականութեան վերաբերեալ կոյտ մը ձեռագիրներ. որոնք եթէ ամբողջովին հրատարակուին կը կազմեն Սիսուանի ծաւալով վեց կամ ութը պատկառելի հատորներ. ասոր մենք կարող ենք գուշակել, թէ այդ ձեռագրաց մէջ Վենետահայ գաղթականութեան մասին ինչ անհուն և անսպառ պատմական գանձեր կան, զոր առանձին ճիւղերու և մասերու վերածած հաւաքեր դիզեր է մեծածաւալ թերթերու մէջ։ Այս հաւաքածոյները սկսած է պատրաստել իր երիտասարդութեան ամենէն զալար ժամանակէն, և նոյն գործը շարունակեր է մինչեւ ծերութիւն։

Առձեռն Բառարան. — Ծանօթ առձեռն բառարանէն պակաս հազարաւոր բառեր հաւաքած է իր ամենօրեայ կարդացած, քննած և ուսումնասիրած, պատմական, կրօնական, և այլ անհամար անտիպ նախնեաց գործերէն։ Պակասաւոր կը համարուի այս գործս, այն պատճառաւ, որ Հ. Ալիշան իր հաւաքած ամէն բառերու աղբիւրներն չէ նշանակած։

Իմաստուն գրոյցք. — Եօթը տետրակներու մէջ մանրիկ տառերով և խիտ տողերով մարգարտաշար ժողվեր է ընդհանուր ազգաց և մերազնեայ հեղինակաց իմաստուն խօսքերը, ուսկից միայն կրօնական մասերն քաղելով՝ հրատարակած է «Անուոյ հոգւոյ» անուամբ գրքով։ Այս ձեռագրաց մէջ մարդկային գրեթէ ամէն առաքինութեանց և թերութեանց վերաբերեալ խիստ շահեկան և շինիչ խրատներ կան։

Այս տեսակ գործ մ'ալ կազմած է, իր ինքնաբուխ առժամայն մտազդեցութիւններով. տես գրքիս «Դրուագ»ներու Բաժինը։

Սուրբ Խաչ. — Վենետկոյ Ս. Խաչ ազգային հին գաղութի հաստատած եկեղեցւոյ ընդարձակ մանրամասն պատմութիւնն է։

Վարք սրբոց. — Միջադիր հաստ հատորի մը մէջ խիտ և մանր գրութեամբ ամփոփած է համազգային սրբոց համառօտ կենսագրութիւնը։

Հայաստան. — Ստուար միջադիր գիրք մ'է, ուր ամբարած է Հայաստանի վերաբերեալ ամէն տեսակ գրական նիւթերու ճոխ ատաղձներ։

Հայկարան. — Ութը հսկայ հատորաւոր գրչագիր մատեաններ, ասոնց մէջ իր ամբողջ գրական կենօք, անդադար դիզեր է մեր ամբողջ նախնի մատենագրաց պատմական, աշխարհագրական, աստուածաբանական, կրօնական, իմաստասիրական, եկեղեցական, քաղաքական և այլ զանազան ճիւղերու վերաբերեալ լիառատ պատմութիւնը, զոր ընդօրինակած են իրեն հաւաքակից և կրտսեր եղբայրներն։

Տեղագրականք. — Ազգային մտադրեալ հրատարակելիք հայ բնագաւառներու պատմութիւնը ամփոփած էր մեծադիր թերթերու մէջ. այս հաւաքածոյին մէջ ամէն գաւառի վերաբերեալ տեղագրական նիւթերն տակաւին անպատրաստ վիճակի մէջ էին, անոնց կենդանութիւն տալու համար նա ունէր առանձին բազմաթիւ յուշատետրներ, ուր նշանակած էր իւրաքանչիւր գաւառի գլխաւոր աշխարհագրական մասերը, կոկիկ կարգով մը խնամքով շարած էր ամէն քաղաքներու, գիւղերու և գետերու անունները, որոնց առջեւ գրած էր անոնց նկարագրութեան հին և նոր ազգային և օտարազգի աղբիւրները։

Եւրոպայի Հայ Սուրբեր. — Մի քանի թերթերու մէջ, Եւրոպայի իր գտած զանազան Հայ Սուրբերու կենսագրութեան համար ճոխ ատաղձ մ'է, զոր հաւաքած է թէ իր մի քանի անգամ ճամբորդելու ատեն և թէ կարդալով օտար վարք սրբոցներ։ Դա Եւրոպայի հայ վանորէից պատմութեան ամբողջացուցիչ մասն կը կազմէ։ Նաեւ այս գրութիւնը զուտ հաւաքածոյ մ'է, և Եւրոպական լեզուով։

Զանազանք. — Ունի բազմաթիւ անտիպ կրօնական ճառեր և խրատական գրքեր, որոնք իր բնատուր բանաստեղծական եռանդով գրուած են, ոճն բարձր, յուզիչ, զգայուն և ազդեցիկ։ Այս զանազան գրուածոց մէջ կը դասենք բազմաթիւ մեծ ու փոքր յուշատետրներ, ուր իր հեղինակութեանց համար նշանակած է աշխարհագրական, վիճակագրական, կենսագրական ցանկեր, թուականներ անհամար տեղեկութիւններ, որոնք իրեն գրական ովկիանոսին փարոսներն էին։

Գրչագրաց զարդեր պատկերներ. — Անտիպ երկասիրութեանց մէջ կրնանք դասակարգել նաև մի գեղեցիկ աշխատութիւն։ Հ. Ալիշան շարունակաբար նախնեաց գրչագրաց վրայ պարապելով նա միևնոյն ատեն սիրած է անոնց մէջ գտնուած հայ վրձիններու գեղեցիկ ճաշակի սիրուն զարդերու և պատկերներու վրայ. նա մտածեր է հայկական գեղարուեստի հատոր մ'ալ կազմելու, բայց այդ ըղձացեալ գործը կատարեալ կերպով հրատարակելու համար, նա շատ դըժուարութեանց կը պատահի. բայց գործին յաջողութեան համար, նա կը շարունակէ իր աշխատանքը. գրչագիրներու ամենէն գեղեցիկ պատկերները և զարդագրերը առանձին նկարիչներու և վանքիս

ու Ռափայէլեան վարժարանի յաջողաձեռն աշակերտաց օրինակել կու տայ յար և նման մեծութեամբ, գոյներով և գծերով։ Այս հաւաքածոյին կազմութեան համար, տարիներ կ'անցնին, կը կազմուի բաւական մի կոկիկ հատոր· սակայն անոր տպագրութեան համար, հարկաւոր էր պատկառելի գումար մը· նա կանխաւ կը գուշակէր որ այդ գործը իրօք շատ գեղեցիկ էր, սակայն բազմածախս. Արաբատ ներու հատորներու պէս շատ բաժանորդներ չէր կրնար ունենալ, որով կրնար տուժել միաբանութեանս տպարանը։ Այս մտածութեամբ նա անգործ թողուց, նոյն գեղարուեստական անման գործը։ Սակայն նա կ'ուզէր հայ հրատարակչական արհեստը չզրկել բուն հայ մտքէն բղխող ամենէն գեղեցիկ գործէն. մանաւանդ մի տարի առաջ, նա յայտարարութիւն մը հրատարակեց, որով կ'իմացընէր թէ 1000 տարի առաջ գրուած յուրգի աւետարանի մը պատկերներն մտադիր է հրատարակելու. և գործը կը յանձնէ մամուլին։ Իր գգուելի գործն չտեսած, նա գոցեց աչուըներն. և այժմ շնորհիւ Ռուսահայ մեկենաս Պ. Յովհաննէս Պալեանի, նա կը պատրաստուի և ի մօտոյ լոյս կը տեսնէ իբրև նմոյշ մը մեր նահապետական ձեռագրաց գեղեցիկ ճաշակին։

---

# ԱՆԾԱՆՕԹ ԳՐՔԵՐՆ

Մենք ցոյց տուինք Հ. Ալիշանի բեղնաւոր գրչի անբացատրելի արդիւնքը, բացինք իր մեզ համար միշտ գոց մնացած այն դարանները, որոնց մէջ կը գուշակէինք, թէ պէտք ենք գտնալ չքնաղ գործեր, սակայն մեր յուսախաբութիւնը կատարեալ էր, ինչպէս վերլուծեալ ցանկէն տեսաք, նա իր անտիպ գրուածոց մէջ չէ թողուցած Հայրունիին տղգագորդ հայրենաշունչ ոգւով մի գործ, որուն վրայ հրաւիրէր իրեն երկրպագու հայ հոգիներու ուշադրութիւնը. մենք զմայլեցանք տեսնելով այդքան գրական մեծ ամբար մը, որ տակաւին անսպառ գանձարան մը կը մնայ. կը սքանչանանք մանաւանդ թէ սքանչացանք, տեսնելով գրչի արդիւնք մը, որ քան սոսկական գրագէտներ կարող չեն նոյնքան տպուած գործերու հետ, ունենալ այնքան անտիպ գործեր ալ, որ մի առանձին միտք հաւաքեր, կազմեր ու գրեր է: Եղական էր այդ գրիչը, ուսկից եղական ձեռագիր մ'ալ ակնկալելու իրաւունք ունէինք: Եւ միթէ բանաստեղծ Հ. Ալիշանը չունէ՞ր մի այդպիսի գործ: Խնդրոյն խորը թափանցենք: Դուք ընթերցողք եթէ ուշադրութեամբ չէք կարդացած իր շողշողուն մաքի «Արշալոյսին» վերջալոյսը, դարձեալ զայն մենք ձեր ուշադրութեան կը յանձնենք. ահա թէ ինչ կը գրէ, ինչ կ'ըսէ Հ. Ալիշան.

«Արդ, ի վերջանալ յիշատակաւ «Արշալուսոյ» մերոյ

Ներու՞մ արդեօք յիշել իբրեւ երազ մի 60 անցեալ ամաց, կամ իբրեւ զցնորս մանկութեան և անգիտութեան, եթէ այն կենաց դալար եռանդուն երիտասարդութեան պահուն՝ մտածէր ոմն դիւցազներգութեամբ կամ վիպասանութեամբ հռչակել զՏրդատ ։ Արդէն ողջաձեւն կազմուած էր, և այն ժամանակի հասուն քերթողի մի ցուցուած՝ նորա դատաստանն իմանալու, յորմէ չառաւ խրախոյս. բայց ինքն աւելի իր երկու մտմտուքով ետ կեցաւ փափաքէն ։ Մի, որ դժար երեւնար իրեն՝ Տըրդատայ երկու կենաց (նախ հեթանոսութեան հրապոյրքն և ապա քրիստոնէութեան շնորհքը) համահաւասար փայլեցնել, առանց ոչնչացընելու առաջնուն խատուտիկ տեսիլը՝ երկրորդին լուրջ կերպարանօք ։ Երկրորդ, որ ինքն ինքնին վախցաւ իր երեւակայութենէն, զոր շատ դժար է սահմանաւորել այն կանաչ տարիներում ։ Ցնդեցաւ երազն. ջնջեցաւ ատաղձն ։ Բայց, եթէ հիմայ կամ երբ և է ազգային ոք համարեալ եռանդուն և խոհական, համարձակի համեստօրէն իրագործել զայսպիսի երազ, դուցէ չի գտնէր լաւագոյն նիւթ կամ անձն՝ քան ըզՏրդատ. միայն թէ իր բանաստեղծութիւնն այլ արժանաւոր ըլլայ այդ մեր ամենարժան Տրդատայ ։ Թողարկեալ է այս գրութիւնը, մենք վար կ՚առնենք այդ քողը և ցոյց կուտանք այն գեղեցիկ մտածութիւնը, որ ամիսներ առաջ նոյն քողով «Բազմավէպ»ի մէջ ներկայացուց Հ. Ալիշան, սակայն ոչ ոք գուշակեց անոր գեղեցիկ միտքը, և չկրցաւ անդրադառնալ անոր վրայ ։ Վաթսուն տարի առաջ, կանաչ հասակի մէջ, բանաստեղծ երա-

զատեան՝ նոյն ինքն է Հ. Ալիշան, իր բանկած երևակայութեան ամենէն ուժեղ վառվառուն ու սիրուն հասակին, գրած է վիպասանական ողբերգութիւն մը, որուն դիւցազն եղած է ազգիս պաշտելի արքայն Տրդատ և օրինակ կուսանաց խնկելին Հռիփսիմէ։ Երկիւղածն Հ. Ալիշան, զայն իր անկողնոյն տակ սապատի մը մէջ ծածկած՝ երկար ատեն կը պահէ. խղճի փափուկ և նազուկ ձայնը կը բողոքէ իր երևակայութեան ծնունդ այդ սիրուն և սիրելի ծնունդին դէմ. նա կ'արհամարհէ այդ բողոքը, սակայն երբ հասակը կ'առնու, դեռ աւելի խիղճի նոյն ձայնը կը զօրանայ, կը դոռայ կը սպառնայ. կ'որոշէ նոյն գեղեցիկ ծնունդը զոհաբերութեան խարոյկին վրայ նետելու. և լուռ ու մունջ կը յանդգնի այդ զոհաբերութեան, ամբողջ ողբերգութեան ձեռագիրը թերթի մը մէջ ծրարած, կ'առնու կը տանի խոհանոց։ Կը յանձնէ զայն աշխատաւոր Եղբօր մը (Պէշիկթաշլեան Թատրոնի անուանի գործիչ Մեսրոպ Ջօհրապեան) և կը խնդրէ որ կրակ նետէ։ Եղբայրը կ'ըսէ. շատ լաւ, քիչ ատենէն կը նետեմ. Ծերունին կը ստիպէ որ անմիջապէս իր աչաց առջև կատարուի այդ զոհաբերութիւնը. ընդդիմութիւնը անհնարին էր, մանաւանդ որ Եղբայրն ալ արդէն ոչինչ չէր գուշակեր, կը հնազանդի. մի քանի վայրկենի մէջ, հրոյ ճարակ կ'ըլլայ այն մեծ Ողբերգութիւնը, որ ազգային էր և ազգին ամենէն մեծ ու անըման բանաստեղծի լուսաշող, հրավառ հասակին մէջ գըրուած։ Այս գործը կատարուած է երեք չորս տարի առաջ, և ըստ յիշեալ Եղբօր, նոյն գործը կազմուած էր

մեծագիր բազմաթիւ թերթերէ. տասը Հատոր մըն էր։

Բայց դուք ընթերցողք չի զարմանաք Հ. Ալիշանի այս գործին, ահա նոյն պատկառելի գրիչն է որ այդ Ողբերգութեան կեանք կու տայ, կը ստեղծէ զայն, և նոյն գրիչն է որ կը խլէ անկից կեանքը և զայն կ'ոչընչացընէ։ Նա գրուատելի գաղափարով կը պատրաստէ զայն և արգահատելի սրբապղծութեամբ կը փճացընէ։ Զարմանալի և տարօրինակ կը թուի ձեզ, սակայն դուք կարո՞ղ էք թափանցել երկիւղած ծերունիին հոգւոյն մէջ, որուն սիրտը, ի լուր խղճի որոտընդոստ ձայնին, կը սկսի աշնանային թարշամած հողմակոծ տերևի մը պէս թըրթռալ ու ծփծփալ։ Ժամանակը ամենայն ինչ կը կերպարանափոխէ։ Հ. Ալիշան իր հասակին ներշնչած հոգւով կ'ընթանար, երիտասարդութեան առեն մուսաները իր վառ երևակայութիւնը կը պաշարէին, նա իր պատկառուկ բնաւորութեամբ, կը լսէր անոնց ձայնը, քաղցր էր անոնց ագինաշունչ երգերն ու նուագները, քնարի ու սրնգի ձայնով կը ներշնչուէր ու կը ներշնչէր. սակայն հազիւ թէ կը սկսին սպիտականալ մազերը, կը փախուին իր գաղափարները, բանաստեղծութիւնը այլ ևս իրեն համար երազ ու ցնորք կը համարուի. նա իր լուրջ տարիքին մէջ կը սիրէ հաստատուն ուսումնասիրութիւնները, և այդ պատճառաւ մենք չենք ունենար իր հմտութեամբ բազմաբեղուն հասակին մէջ պատրաստուած բանաստեղծական գործ մը. ժամանակին ազդեցութեան պտուղն է այս։

*Ցիշեցինք իր գործերէն մին, որ առանց լոյս տեսնելու, հրոյ ճարակ կ'ըլլայ. այժմ կը յիշենք մի ուրիշ գործ, որ միայն իր պաշտելի գլխուն մէջ կը ծնի և հոն կը մեռնի։ — Մի օր երիտասարդ քահանայ մը իր մի*



Հ. Ալիշան, 1901 սեպտեմբերին։

*շարունակաբար հրատարակած յօդուածներուն համար տեղեկութիւններ կը խնդրէ. Ծերունին կը պատասխանէ թէ՝ այդ հայ մատենագրութենէն զատ, միւս ամէն ճիւղերու համար աշխատած է և հաւաքած բազմաթիւ տեղեկութիւններ. և միևնոյն առթիւ կ'ըսէ. «Մտադիր*

էի իբրև անձամբ ուղևոր մը՝ ամբողջ Հայաստանը ա-
կանատեսի մը գրչով փոքր Ասիայէն սկսեալ, մինչև Ա-
տրըպատական մանրամասն կարգաւ նկարագրելու. սա-
կայն այժմ այլ ևս չեմ կարող այս փափաքս կատարե-
լու»․ կը յայտնէր այս փափաքը, խմացընելով որ նա մտա-
դիր էր դեռ շատ գործելու, սակայն, մեր Նահապետին՝
Նահապետական դարաւոր կեանք պէտք էր... Մենք նկա-
տելով իր այնքան անպատրաստ գործերը, կ'ըսենք որ նա
դեռ պէտք էր բաղձէր իր գրասեղանին առջև, որ կարե-
նար հոգի փչել այդ անկենդան թուղթերուն։ Բայց Եր-
կընքի որոշողութեան դէմ մենք չենք յանդգնիր ճշդած
վճիռներ արձակելու։ Նահապետը Երկնային պարգև մ'էր,
իր հրեշտակային վարքը ու բարքը մարդկային գետնա-
քարշ ստոր վիճակէն շատ բարձր գերընականին մօտ տիպար
մը զինքը կը ներկայացընէին. մենք կ'անցնինք զինքը իր
կրօնաւորական սև զգեստին մէջ դիտելու։ Տեսանք զին-
քը իբրև հեղինակ, բանաստեղծ, աշխարհագէտ, պատ-
մաբան, ճառախօս, հնագէտ ու բազմագէտ. այժմ սի-
րենք դիտել զինքը Ս. Ղազարու կրօնական պարիսպնե-
րէն ներս։ Ի՜նչ էր այդ մեծ մատենագրին կենցաղը,
բարքը, վարքը։

---

## Հ. ԱԼԻՇԱՆԻ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԲԱՐՔՆ

**Հ.** Ալիշանի ամբողջ կեանքը եղած է ճգնութեան խնկարան և դպրութեան թանգարան։ Նա իր աչաց առջեւ ունէր հին միաբաններու ժամանակակից՝ հոգւով հոգեկից՝ մտօք փառակից, Հ. Աւգերեան մատենագիր աստուածաբանն, Ինճիճեան մեծ հայրենագէտ և Պինդարական դասուն մրցակից հոյակապ հայկաբանն Բագրատունի։ Նա կարդացած էր իր միաբանութեան հիմնադրին և հաստատուն սեանց վարքն ու բարքն. կարդացած էր Հայաստանի մենաստաններու մէջ ճգնող և ազգին հոգին ու միտքը վերականգնող Սահակայ, Մեսրոպայ, Խորենացւոյն, երեք Ներսէսներու և աղանի Նարեկացւոյն և այլ բազմաթիւ հարազատ սուրբերու հեռաւելի վարքն. անոնց ամենուն միտքն ու հոգին իրեն սրտին ու գրչին առաջնորդ առած, նա կ'անցնի պատկառելի ժամանակին վրայէն՝ թողլով իր ետեւը հրեշտակաց նախանձելի խնկարկը հոգւոյ մշտնջենաւոր ողջակիզում, և հայ հանճարներու զարմանք ու զմայլանք առթող մտքի և գրչի վաստակ, բարդ ի բարդ գրքեր՝ իր համեստ, ազնիւ, քաղցր և երկիւղած բնաւորութիւնը՝ միանալով բնատուր տաղանդին, հանճարին և յիշողութեան, ձուլուեցաւ աննման ճգնաւորն և մատենագիրն Հ. Ալիշան։

Ամբողջ կենաց նա աշխատեցաւ նմանելու իր ցանկալի սրբոց. իր երգերէն, իր այն հրացայտ, զուացող և որս-

տացող բոմբիւններու ոգիէն, կարող ենք գուշակել թէ ի՜նչ անզուսպ, հրատապ բնոյթի, բորբոքած բարքի տէր անձ մ՚էր նա, սակայն իր վրայ կը տեսնենք հակապատկեր-ներ, իր անզուսպ կամքը կը զսպէր առանց ցոյց տալու իր անձին նուաճումը. բանաստեղծական զայրացկոտ և մաղձոտ արիւնը կը խաղաղէր, կը քաղցրացնէր ճար-տարօրէն և գողունի։ Ամբողջ ազգը անկեղծօրէն փառք, ալէլու կը ծափահարեն իրեն, նա աւելի երկիւղածութեան մէջ կը մխէր իր հոգին. կ՚ահարեկէր երկրային փառա-բանութիւններէ. իր հանճարի փառքը կ՚ուզէր վերագրել մի միայն Երկնքին՝ ուսկից իր գլխին մէջ կաթած էին տաղանդի բեղմնաւոր և հոգեւոր կայծակնացայտ ճառա-գայթները. փառքն իրեն սեփհականելու, և իրեն իւրա-ցնելու արժանիք մը չէր տեսնէր, որով կը մնար ու կ՚երեւար համեստ մանիշակ մը՝ ծածկուած իր փիլոնին տերեւին տակը, և հանճարով ու համեստութեան խառն խնկաւէտ բուրումն էր, որ զինքը կը մատնէր իր վրայ սքանչացող ամբողջ հայութեան։

Մենք մօտենանք այդ սքանչելի աբեղայ մանիշակին, վայելենք իր խնկաւէտ կենցաղին հոգերգու ներդաշնակ ժամերը. իր մի օրը ամբողջ պատկառելի կենաց ան-թերի պատկերն էր. և ի՞նչ էր իր այդ օրուան նկարա-գիրը... Ս. Ղազարու խաղաղ ճգնարանը՝ գիշերային խաղաղութեան մէջ կը ննջէ. իր պարիսպները համբուրող վէտ վէտ ալեաց քնքուշ ու մեղուշ օրօրներն, կը հմայեն աբեղաներու երազներն. սակայն հոգւոյն մէջ խնկաբոյր և գրքերու մէջ քրտնաթոր Նահապետը, իր սպառած, հիւ-

ծած մարմնոյն նոյն իսկ չափաւոր հանգիստ ու կազդուրում չի տար. նա գիշերուան ժամը երեքին արթուն է. օրուան ամենէն գեղեցիկ տեսարաններու կեր-



Հ. Ալիշան պարտէզին մէջ.

պարանափոխութեան ականատես էր, գիշերուան փարոս լուսնակի և աստղիկ ճրագներուն տխուր խաւարումէն առաջ, կ'ուզէր անոնց ծիծաղկոտ և լուսաշող այտերը դիտել ու հրճուիլ. իր այն գեղեցիկ մուսաներուն միաք

բարով ըսելով, կ'ուզէր ականատես ըլլալ Հորիզոնի առաւօտեան Հրդեհին և բարեւ բանել արեւին, որ ամէն օր վառած էր իր վառ երեւակայութիւնը... Նա գուցէ այս բանաստեղծական գաղափարով կը զոհէր իր առաւօտեան հանգիստը. սակայն շատ հաւանական է որ այդ զոհը աւելի ճգնաւորական ողջակէզ մ'էր, զոր սուրբ խորանին վրայ բարձրանալէն առաջ, կ'ընծայէր փրկարար Փրկչին։ Առաւօտեան ժամը չորսին նա վեղարը ի գլխին, սեւ ջբեմին մէջ պլլուած, և ի ձեռին լապտեր մը բռնած՝ արագաքայլ կը վազէր Աստուծոյ տաճարը, ինքը կը բանար անոր դուռը և ինքն էր Սրբութեան սրբոցի առաջին երկրպագուն։ Ջինափայլ, հրեշտակափայլ ամբծութեամբ և կերկեր ձայնով ու բեկբեկ սրտով, կը սկսէր Ս. Պատարագը. անոր նոյն պահու երկիւղածութենէն և անպարագրելի ամփոփութենէն՝ եթէ հրեշտակները կը ցնծային, մենք կը հրճուէինք ոսկումով. կենդանի սուրբ էր նա, մանաւանդ երբ նոյն պահուն սրբութիւն կը շնչէր, սրբութիւն կը շօշափէր, սրբութիւն կը համբուրէր և Սուրբ Սրբութիւնը կ'ողջակիզէր...

Առաւօտ չորս ժամ, մինչեւ ժամը ութ իր միտքը հրեշտակաց հետ, սուրբերու մէջ և Աստուծոյ քովն էր. մատենագիր ըլլալէն առաջ կատարեալ հաւատացեալ, կրօնաւոր և Աստուծոյ պաշտօնեայ մը կը ջանար ըլլալու, և ըստ այնմ օրուան մեծ մասը՝ Երկնքի նուիրագործելու չէր խնայեր. երիտասարդ հասակէն մինչեւ ցծերութիւն և հիւանդութիւն, նա անբաժան էր խորանէն, աղօթարանէն, սաղմոսերգութեան հասարակաց խըմ-

րէն։ Անպատում յափշտակութեամբ ունկնդիր կ՚ըլլար մարգարէներու քնարէն հնչած, հայ վանորէից սերովբէներու սրտէն ելած երգերու, մեղեդիներու, քաղցրանուագ ժամասացութեան։ Աւետարան կրօնական պատմուց լրանալէն յետոյ, շուտափոյթ նախաճաշ մ՚ընելով, կը քաշուէր իր սենեակը. չի կարծենք որ օրնիբուն հոն ինքզինքը գրականութեան նուիրած է. ոչ, նա հոն մեզ կը ներկայանայ ուրիշ նոր Շնորհալի մը. գրքերուն մէջ, չի մոռնար Երկինքը, մերթ ընդ մերթ կը թողու գրել, գրասեղան և գրաւոր վաստակոց հետ սիրուն առ Բարձեալն կը նուիրէ, կ՚ամփոփէ իր միտքը, նա չի մոռնար որ ինքը ճգնաւոր մ՚է, անապատական Շնորհալիներու հետեւող աբեղայ մը, որ միտքը զարդարելէն առաջ, պարտք ունի հոգւոյն աստուածային բոցը միշտ արծարծել պահելու, և այդ մտածութիւնը, երկնային գաղափարը և հրեշտակային գործը՝ վաստակոց խոչընդոտն չէր, այլ զօրավիգն, մտաց սթափումն և բարձրացումն, աշխարհի ժխորէն անջատումն. այդ կերպով իր մէջ կը հնչէր Արքայութեան զանգակը և գրականութեան չափորը. որոնց ներդաշնակութեան մէջ նա կ՚ապրէր խաղաղ և անդորր։ Իր օրուան ամբողջ քսանը չորս ժամուան հինգ ժամը կը նուիրէր քնոյ. հանգիստ չունէր, պարտէզը մի քիչ շունչ առնելու ատեն, իրեն մտքին հետ խօսուն ընկերն էր գիրքը։ Պարտէզի մէջ բանաստեղծական էր նա. կը հանգչէր Պայրընի բլրան ձիթենեաց ստուերին տակ. կը կարդար, կը խոկար. մեզի համար մոգիչ էր այդ տեսարանը. «Չայլտ Հարոլդ»ի հեղինակ

հոյակապ բանաստեղծին՝ հոն կը փոխանակէր ազգիս պատկառելի անձնան քերթողը և քերթողահայրը. ոչ որ կը վրդովէր անոր այդ Պատմոսական հանդիստը : Նա հոն վենետիկցի Լճակին Սափոն էր, բայց անբիծ սէրը, պաշտելի Հայրենիքը երգող և Հայկականներու սիրտը տրոփող Սափոյ մը... Օրուան վերջալոյսի ատեն, մենք յափըշտակուած կը դիտէինք զինքը. ահա՛ նա լայն գանկին վրայ Ցանդէական թաշկինակ մը փռած, ստուերի մը պատկերի նման՝ նոճիներու խնկաւէտ ճիւղերուն քսուելով մեն կու գայ կղզւոյս ծառուղիին մէջ. դարձեալ նա բանաստեղծական է, կամ գիրք մը կայ իր ձեռքը, կամ բազուկները ամփոփած, գլուխը կախ իբրեւ պարկեշտ շուշան մը, մեն կու գայ խորհրդաճեմ... Մոգական էր նա, և այդ պատճառաւ ճշգրտօրէն՝ քերթողն Հ. Բագրատունի զայն «Մոգ» կ'անուանէր. այո՛, նա մոգ մ'էր, Հայաստանի բաղդի աստղը փնտռող մոգ մը... Իր մեղմօրօր քայլերը կ'ուղղուին դէպ ի Պայրընական հանգըստավայր՝ վանքին ամենէն գեղեցիկ կողմը՝ Ութանկին կոչուած գեղագիտարանը. Նահապետին ստուերէն մենք աչերնիս չէինք հեռացըներ. ահա նա օրուան մէջ ամբարած գիտութեանն ծանրաբեռնեալ գլուխը՝ կքած երկու բազկած մէջ անշարժ բռնած, պէչ պէչ կը պշնու աղմին մէջէն բարձրուղէշ դաքակերտ վենետիկոյ վրայ կը դիտէ խորազգած, կը դիտէ Ադրիականի այն շիկնող հորսին դէմքն երկնածիծաղ. դաքակերպս, հոյակապ ապարանքները լուռ մնջիկ կը խօսին իրեն հետ, կը պատմեն իրենց վաղեմի արիւնոտ խժդուժ փառքն ու պարծանք.

Ապստամբութեան խիզախ երգերուն, և գերահռչակ Գառ-
նայի վեհապանծ քնարի արձագանգներուն տեղ, կը լսէ
վանքին պարիսպներու ափունքէն անցուդարձ աղքատ
ծերուկ ձկնորսներու կուրծքէն թնդացող հայրենի յաղ-
թական երգերն… ստրկութեան դժոխային շղթան հա-
լած էր, ընկճուած կուրծքերը ուռած, վերստին երգերով
բռնութեան վրայ քմծիծաղ կը նետէին… Նա կը տես-
նէր որ ժամանակը՝ դիւթող հսկայ մ՚է, անոր ափին մէջ
է բաղդն ծիծաղկոտ և թշուառութիւնն արիւնոտ. և
այս խորհրդաւոր խոկումներով, դէպ ի արեւելք կը
դարձնէր իր ճակատը. դիմացի հորիզոնը վերջալոյսի
մաղձոտ, մռայլ շողին մէջ թալկացած ըմբիշ մը կը ներ-
կայանար. նա ոչ ժպիտ, ո՛չ յոյս, այլ ողբ, անյուսութի՜ւն
կ՚ողբերգէր…

Կը հնչէ Ս. Ղազարու զանգակատան պղինձը,
երկնակամարի կանթեղները կը պլպլան. փոխուած
է տեսարանը. Հ. Ալիշան ամբողջ հասարակու-
թեան հետ, վանքին տաճարին մթութեան մէջ, աղօթա-
րանին վրայ ծունր դրած է. խղճին հետ կը խօսի, և
սրտին բուրաստանին մէջ ինքզինքը այպանելու, քարկո-
ծելու նուաստացնելու համար փուշեր կը փնտռէ… Եւ
ի՜նչ փուշ, ի՜նչ թերութիւն կարող էր գտնել. արեղայ
մը որ միանձնական կեանքի մէջ բոլորովին կղզիացած,
մենասէր, ժուժկալ կեանք մը կ՚անցընէ, հեռի ընկերու-
թենէն, հեռի հասարակաց խօսակցութենէն, հեռի օտար
խոկումներէ, կ՚ապրի իբրեւ վարդ մը առաքինութեան և
գրականութեան հովտին մէջ։ Սակայն այդ վարդը իրեն

*հոգւոյն առջեւ փշոտ տունկ մ՚էր. և այս անիմանալի համոզմամբ, խոնարհ ու համեստ կ՚ապրէր, փոյթ չէր այդ տեսակ խոնարհութիւնը, երկինք ու երկիր զինքը վեր կը բարձրացընէին․*

# ԴՐՈՒԱԳՆԵՐ ԵՒ ԶՐՈՅՑՆԵՐ

**Հ.** *Ալիշան նեղ է չըլլար մենաւէր, չունենար պատկառուկ բնաւորութիւն մը, և ընկերութեան մէջ կատարեալ լռակեաց մնալ չի յարգէր, իր բանաստեղծական կազմուածքովը, այժմ ամբողջ կենաց մէջ, իր հանճարեղ խօսուածքներէն մեզ կը մնային գեղեցիկ յիշատակներ. կը ցաւինք ըսելու որ նա իմաստասիրական ամփոփուած լռակեցութեան մէջ մնալով, այժմ չունինք իր կենցաղէն պատմուած ճոխ դրուագներ* (épisode), *հանճարեղ կտրուկ զրոյցներ։ Անոնցմէ մի քանին, որոնք մեր մէջ կը մնան, իբրեւ իր յիշատակին թանկագին և հազուագիւտ աւանդ կը յիշենք։*

*Տարիներ առաջ նա իր օրուան մէջ մտքէն անցած թռուցիկ հոգեկիրթ սրբական մտածութիւնները՝ գրքի մէջ ամփոփելու սիրուն գաղափարն կ՚ունենայ, և զայն կ՚իրագործէ. մենք բաղդաւոր ենք իր սիրուն մտքի ծաղկեփունջը (Առժամեայ Մտագրեցութիւնք 1841–1855) մեր ձեռքն ունենալու և անոնց գեղեցկագոյններն մեր ընթերցողաց հաղորդելու։ Ուշ դնենք այդ իմաստասէր, բարոյախօս ու բանաստեղծ հանճարին.*

## ԶՐՈՅՑՆԵՐ

*Ծղօտ մի ջախջախ կամ փետուր բացընկեցիկ և երկու կայլակ մելանի՝ որպիսի՜ խռովս յարուցանեն և շարժեն զաշխարհ։*

*Ոսկի և գոհար, — չարաւ քարանց և կղկղանք հողոյ։*

*Ի մէն մի շնչառութեան իմում՝ մեռանի մին յիմոց նմանեաց։ Եւ ի ձգել անդ զառաջին շունչ նորածնի ուրուք՝ զյետին ես շնչեցից զիմ։*

*Մանուշակ՝ խոնարհութեան օրինակ, և որպէս առաքինութիւնն այն առաջին պատուականութեամբ, յետին անուամբ, այսպէս ծաղիկն պատկառանօք յետնեալ, յառաջադէմ երեւեալ ի գարնայնի։*

*Ամենայն բոպէ մանրացոյց է յաւիտենականութեան։*

*Ճանապարհ քրիստոնէի ձգի ի մարէն մինչ ի Խաչն։*

*Գովեստ առաւել քան զարժան՝ երգիծանք են։*

*Օձի հանդէտ զալարուն*
*Քան զօձ խայթող է լեզուն։*

*Ի տխրորակ չիթս անձրեւու ծնանի ծիածան։*

*Սէր մանկութեան դիւրավառ է որպէս զյարդ, իսկոյն վառի ի նա հուր հեշտութեան, և թէ խուն մի անագանէ՝ ո՜հ, խայտառ ճարակի և խամրէ։*

*Անձուկ են մուտք գերեզմանին, և հանեն ի լայնարձակ ճանապարհս յաւիտենից։*

*Սէր, քոյր անմահութեան։*

*Քաղցրիկ վանգիւնք զանգակին կոչեն զհաւատացեալս յեկեղեցի, որպէս համբոյր խախոջք առուակի զծարաւեալն յարբումն։*

*Նախանձոտն ամենեցուն նախանձի. և չէք որ չատիցէ զնախանձոտ։*

*Ողկոյզք կախեալք՝ արբեցութեան դայեակք։*

*Աշխատութիւն՝ միանգամ խոնջեցուցանէ, դատարկութիւնն՝ հանապազօր։*

*Բազում անգամ դոյզն մակոյկ փրկէ զկորուստ մեծալաստ նաւուն։*

*Մխիթարիչ սգաւորաց, սիւն ի ծառս հողմակոծեալս։*

*Մահիճ հիւանդի նախագերեզման։*

*Տրտմութիւն՝ պատուար է ընդդէմ ըղձից։*

*Գործեա ի հաճոյս այլոց, այլ մի՛ վասն հաճութեան։*

*Են միտք որ յօդս քաղաք կառուցանեն, և տգեղոյ ճանճի միոյ ժոյժ ոչ ունին։*

*Ի դաստիարակութեան յուղղել զդիւրաթեք բարունակս՝ զգոյշ լեր մի՛ ուղղակի փարսեսցես զնեցուկն, գուցէ հատեալ զարմատ տնկոյն և ցամաքեսցի։*

*Ճշմարիտ բարեկամք նմանեսցին զուգից աչաց որք ոչ երկու՝ այլ մի տեսանեն։*

*Տարի բոլորեալ՝ սիւն մի խորտակեալ ի տաճարի ժամանակի։*

*Ազդէ ի սիրտ՝ ելեալն ի սրտէ։*

Հեշտութիւնն գայ որպէս զաղաւնի, դառնայ որպէս բազէ։

Ծով է սիրտ, մրրկի ի յուզելն, հոսի անյայտ։

Ողորմութիւն՝ խունկ անոյշ է, ի ձեռս աղքատաց բուրէ ի վեր։

Նախանձ գայլս ատամնակեր ածէ, զանձն ժանեօք մաշէ։

Վարդ ի ստորեւ թերթիցն ունի զփուշ
Այլ հեշտութիւն և ի թերթս անդ քնքուշ։

Կոյր է սիրտ անզգայ երաժշտութեան։

Ցօղ գիշերոյ նստեալ ի նոճ, արտօսր ի սեաւ արտեւանունս։

Առաջին դաստիարակ մանկանց, աչք մարց իւրեանց։

Բանաստեղծ ընդ մէջ երկնից և երկրի բազմի. զմարդ յերկինս հանէ, զմիտս յերկնից իջուցանէ։

Խնկանոցն արծաթի և խունկք իւր ազնիւ քան զարծաթ. այսպէս սիրտ և խորհուրդք նորա մաքուր։

Բանաստեղծին թեւ, պատմաբանին ջահ։

Ընդ թուխ հերաց գայ սպիտակ
Այլ բերէ նոճ սեւորակ։

Վարք մատենագրին՝ կէս մասն մատենին։

Խարտոցուոր է լեզու քսուին եզգանձն մաշէ։

Արծաթ գինի և սէր
Բոլոր երկրիս են տէր։

Գրիգոր ծառ տերեւալից պտղաւէտ, Տրդատ Նեցուկ հաստարմատ. այլ փափուկ կաղ Նոցին Հռիփսիմէն։

Քնար անխօս, տաղքինի անգործ։

Յաւերժահարսունք Եդեմին կուսանք վաղամեռիկք։

Հեծեալ սրավար կայծակն ամպավար։

Արշալոյսք անստուերք՝ դեռածին վաղամեռիկք։

Զանգակ տան դրան հարկանել, զմեռեալն ողբալ։

Զեփիւռ, մի՛ շնչեր յոյժ
Մի զարթուցաներ զհոգիս։
Ըզգոյշ լեր մանուկ ըզգոյշ.
Ընդ մի հեշտին հազար փուշ
Եւ գեհենին անվախճան տոյժ։

Զմռայ նման է մեղամաղձ. հատ իւր անոյշ, համակն դառնահամ։

Տրտմութիւն ոչ խլէ այլ հալէ։

Գրիչ՝ է՛ զի ցօղ ածէ և է՛ զի կարկուտ։

Ոչ ամք այլ արդիւնք են մնաց լրմունք. և մերք լրացեալք վեհագոյն են քան զալիս։

Խօսելն՝ վայելուչ. լռելն՝ իմաստուն. գիտելն զժամանակ խօսելոյ և զլռութեան՝ սքանչելի։

## ԴՐՈՒԱԳՆԵՐ

*Միաբանութեանս անդամներէն մին Հայաստանէն վանք վերադարձած ատեն, Հ. Ալիշան կ'ողջագուրէ զայն և առաջին խօսքն կ'ըլլայ՝ «կօշիկնե՛րդ, կօշիկնե՛րդ տո՛ւր ինծի»: Նահապետը կը փափաքի նոյն ուղեւորին կօշիկները զգուելու, վասն զի անոնք արժանացեր էին Հայաստանի նուիրական հողերը համբուրելու.....*



*Հ. Ալիշան՝ այցելուներուն շրջանակարեալ։*

*Ազգային մը որ վանք այցելութեան գար, զՆահապետ՝ Հայաստան կը հրաւիրէր. նա թէև անհամեմատ բանկած սիրով կը տենչար տենչալի Հայրենիքը տեսնելու, սակայն գիտնալով որ իրմէ և միաբանութենէն բոլորովին անկախ պատճառներով*

չէր կարող այդ փափաքը կատարելու, մինչև վարպետ պատասխանով խոյս կուտար, օրինակ իմ՛նա կ'ըսէր. «Ես Երուսաղէմ պիտի հանապարհորդեմ» ըսել կ'ուզէ, Արքայութիւն։ Պատճառանք կը բերէ իր տկար կազմուածք, և կ'ըսէ, «Հայաստանէն ողջ չեմ կրնար դառնալ»։ Գրագէտ այցելուներէն մին Պ. Ա. Աճարեան՝ զինք տեսնելուն ըսաւ, «Հայր Սուրբ, մենք ամէն հայերս գրեթ կ'ուզենք տեսնել». պատասխանեց ծերուկը. «Է՛հ, թող գան և կը տեսնեն». — «Այո՛, (ըսաւ այցելուն) բայց նրանք կ'ուզէին, որ դուք լինէք Հայրենիքում, որ ամենքը տեսնեն, որ իրանց Նահապետն իրանց մէջ լինի». — դարձեալ պատասխանեց Ծերունին. «Է՛հ. երբ հոս գան, ես ալ իրենց մէջ տեղը կը գտնուիմ»։

Ըստ իր Մուրատեան աշակերտաց վկայութեան, ըսած է հետեւեալ նշանաւոր ազգասէր խօսքը. «Կրօնք և Ազգասիրութիւն իրարմէ չեմ կրնար բաժնել։ Զգիտեմ թէ ազգատեաց ոք ո՛րպէս կրնայ մտնել յարքայութիւն երկնից»։

Ուխտիս ներկայ Վ.Հ. Աբբան, Արևելք ուղևորելու օրը՝ ամբողջ Միաբանութիւնս ի միասին կ'երթայ մինչև շոգենաւ. ամէնքը շոգենաւ կը բարձրանան, սակայն Հ. Ալիշան վարը նաւակին մէջ կը մնայ. չուզեր վեր բարձրանալ ըսելով որ միանգամ պատրաստուեր է Հայրենիք երթալու, և պատճառով մը այդ ուղևորութենէն ետ կեցած ըլլալով, շատ կը ցաւի. և նոյն օրէն՝ կ'որոշէ երբեք շոգենաւ չմտնել։

Մեր ազգը տաող ուսագ անձ մը մի օր Մուրատեան վարժարան կ'երթայ, և խրոխտալով Հ. Ալիշանի կ'ըսէ, որ վարժարանի փառաւոր շէնքը վաճառեն, և տղաքները բնակեցնեն փարիզու շրջակայները մի գիւղ, պարզ գեղջուկ շէնքի մը մէջ։ Նահապետ բանաստեղծնիս փոխանակ պատասխանելու՝ գլուխը կը քաշէ կ'երթայ իր գործին։

Թրքահայոց գրագէտներէն մին, մի օր վանք այցելելու առեն՝ բաղդ կ'ունենայ Հ. Ալիշանի առաջնորդութիւնը վայելելու։ Վանքին գլխաւոր տեղերը ցոյց տալէն յետոյ, իրեն կ'առաջնորդէ ձեռագրատուն, ուր Լամբրոնացի Ս. Ներսէսի ձեռքով գրուած Աւետարանի մը մեկնութիւնը ցոյց տալէն առաջ, դոյն կը սեղմէ իր կուրծքին վրայ գորովով և «Պագնելու ես որ ցոյց տամ» կ'ըսէ ժպտելով։ Հընդկաստանէն եկած յարգի ձեռագիր մ'էր այն։ Ցաւելով կ'ըսէ այցելուին. «Աւա՜ղ, որ իւր միւս ընկերներն Ովկիանոսի կոկորդն սուզեցան»։

Վերջերս մի գրագէտ (ինչ որ լսեցի յանդէսս) յօդուածով մը կը նսեմացընէ Հ. Ալիշանի բանաստեղծական անզուգականն, հոյակապ համբաւը. Նահապետ, թէև անհամեմատ համեստ, սակայն վշտացած ու վիրաւորուած սրտով, դրա-

դէտին նոյն յօդուածը կուտայ մեր հատակաւոր քահանաներէն միոյն և կ'ըսէ՝ «Կարդա և տես թէ ինչ ազգ ենք...»

Վանքի քահանաներէն մին դէպ ի մեծ Հայաստան ուղևորելու ատեն, Հ. Ալիշան իր տեղագրական գործերէն անդրանիկն՝ Շիրակայ ձեռագիրներն, կը յանձնէ անոր, և կը խնդրէ որ զայն իբրև պարգև հայրենեաց, նետէ Ախուրեան գետը։

Նոյնպէսը դաստիարակական պաշտօններու աւարտումէն յետոյ, երբ վանք քաշուեցաւ, այն օրէն ի վեր շարունակ սիրեց վանք մնալ և ոչ իսկ զբօսանքի համար վանքէն մի օր հեռացաւ. տարուան մէջ երբեմն կ'երթար քաղաք ամենակարևոր գործերու համար. շատ անգամ ամբողջ միաբանքս իրեն առողջութեան համար՝ աշխատած ենք զինքը մեր մերձաւոր Ադրիական ծովափն տանելու, սակայն նա միշտ ուզած է անապատական ճգնաւորէն աւելի ճգնաւոր մնալ։ Գիւղագնացութեան եղանակին երբեմն հազիւ մի քանի օր գիւղ կ'երթար՝ պարզ հնազանդութեան ստիպողական ձայնին հպատակ մնալու համար։ Անցեալ տարի իր հիւանդութենէն վերջը, մի օր՝ տարօրինակ բացառութեամբ, երիտասարդ քահանայի մը հետ կ'երթայ վերայիշեալ ծովափը, ուր ծովը տեսնելուն, իր միտքը կ'իյնան բանաստեղծութիւնները. մեծ մեծ հեւալով կը շնչէ Ադրիականի մաքուր ու զով օդը և մերձաւորին կ'ըսէ. ծովը ինչ մեծ գաղափարներ կը ներշնչէ, մեր նախնիք շարականներուն մէջ ծովին վրայ ինչ գեղեցիկ ու զօրաւոր բանաստեղծութիւններ գրեր են։ Եւ կարդալ կը կրկնէ շարականին մէջ եղած ծովի վերաբերեալ իմաստները։ Միևնոյն ատեն՝ կը պատմէ մի դէպք, որ 60 տարի առաջ կատարուած էր և բոլորովին անծանօթ մնացած. կ'ըսէ. «Երիտասարդութեանս ատեն դեռ հազիւ երկու տարի էր որ քահանայ եղած Ռափայէլեան վարժարան կը գտնուէի. մի օր աշակերտներուն հետ եկայ. նոյն ատեն հոս բոլորովին անմարդաբնակ անապատ էր, միայն ծով, լողալ չի գիտնալով, քիչ մնաց որ պիտի խեղդուէի. և ահա զիս գիտող մարդ մը ծով նետուելով, եկաւ զիս ազատեց. և ըսաւ. — հանգչայ որ լողալ չես գիտեր և վտանգի պիտի ենթարկուիս. անոր համար ազատեցի որ փրկութեան հասնիս. — Եւ ահա նոյն օրէն սկսեալ, որոշեցի այլ ևս ծով չի մտնել»։ Կը շարունակէ իր քայլերը, կը ծծէ Անդրիականի զեփիւռը. և ծերունիի այտերուն վայել գգուելի ծիծաղով մը կը պատմէ թէ նոյն ծովափին վրայ տարիներ առաջ Լորտ Պայրըն և Շաթոպրիան ման գալով, իրենց մտքին մէջ կը հիւսէին մեծ մեծ բանաստեղծութիւններ։

Իր կենաց թելը կտրելու ուրիշ վտանգէ մ'ալ ազատեր է մահուընէն չորս տարի առաջ։ Մի օր Վենետիկոյ դիւրասահ կամուրջներէն անցնելու ատեն, վտանգաւոր կերպով իյնալու վրայ կ'ըլլայ. ընթերակայ անձինք շուտ մը կը բռնեն զինքը։ Ծերունին իր անապական հաւատքով այդ փրկութիւնը իր պաշտպան հրեշտակին վերագրելով, իրեն նոր եկած ընծայ դրամները կը տանի Գեր. Արքահօր, և կը խնդրէ որ անով վանքիս աւագ խորանի երկու արձանէ հրեշտակներու գլուխը ար-

ծախէ պատկեր գրուէն. կ'ըսէ. «Պահապան հրեշտակները զմեզ շատ անգամ մահուընէ ազատած են, ինչպէս այսօր ալ զիս. անոր համար, մենք անոնց կերպով մը պէտք ենք գոնէ նուիրական զարդով երախտագէտ ըլլալ»:

Նահապետի համեստութիւնը արդէն իսկ հանրածանօթ է, սակայն այսու համերձ Սիսուանի մէջ հակառակ իր կամքին, վանքիս տպարանի վարչութիւնը կը դնէ իր կենդանագիր պատկերը. գրքերու կազմուելու ատեն, Նահապետ վրայ կը հասնի, տեսնելով իր պատկերը, խոնարհութեան կրակով բորբոքած, կը պատռէ ձեռքն ընկած իւրական պատկերները, և գործաւորներուն կը պատուիրէ, որ բացարձակապէս գրքերուն մէջ չդնեն իր պատկերն:

Իր կենաց դրուագները աւելի պատահած են վանքիս այցելուները ինքը անձամբ առաջնորդած ատեն: Այցելուները առանց իրենց առաջնորդին ով ըլլալը ճանչնալու, երբ հարցուցած են Ալիշանի վրայ տեղեկութիւններ, նա միշտ փախստական պատասխաններ տուած է. երբ փափաք յայտներ են զինքը տեսնալու, նա միշտ պատճառանք բերած է, թէ ինչ պիտի ընէք զինքը, նա այժմ թմբած ծեր մ'է, չարժեր տեսնել: Այսպիսի պարագաներուն, երբ մենք վրայ հասնէինք, շուտով կը մտնէինք Նահապետին խոնարհութեան, բանաստեղծական վարպետ քօղը կը բանայինք, այցելուք ապշած կը մնային և ոտքերունին խոյս կու տար...

Մի օր այցելու մը զՀ. Ալիշան տեսնելու համար յատկապէս իր քաղքէն ելլալով, կու գայ Վենետիկ. կը դիմէ Ռափայէլեան վարժարան, ուր նոյն ատեն Նահապետը տեսչութեան պաշտօն կը վարէր: Այցելուն՝ փոխ – տեսչին կ'իմացընէ որ կը փափաքի զՀ. Ալիշան տեսնել. նա շատ լաւ կ'ըսէ և խմաց կու տայ Հ. Ալիշանին. սա վրդոված կ'ըսէ. «Նա ո՞վ եմ որ կ'ուզեն տեսնալ» – փոխ – տեսուչը կը պատասխանէ՝ թէ այցելուն յատկապէս զինքը տեսնելու համար Վենետիկ է եկած: Հ. Ալիշան նոյն ատեն ինքզինքը մի վայրկեան ցոյց տալը համեստութեան հակառակ համարելով, խեղճ այցելուն կը զրկէ իր տեսութենէն.... փոխ–տեսուչը վարպետ խօսքերով և ցաւօք սրտի կը ճամբէ զանիկայ: Ահաւասիկ անհաւատալի դէպք մը, որուն ականատեան դեռ ողջ է, և զարմանքով կը պատմէ:

Մուշեղ անուն Սասունցի՝ մի քաջակորով երիտասարդ, տասը տարի առաջ վանք գալով, ուզեց տեսնել զՀ. Ալիշան. սա նոյն ատեն ի սեղանատան սուրճ կը խմէր, Մուշեղ հեռուէն զինքը տեսնելով՝ ակսաւ ծնկուըներուն վրայ քալելով մօտենալ Հ. Ալիշանին: Ցուցիչ տեսարան մ'էր. Հ. Ալիշան զայն տեսնելուն, կը մօտենայ վեր կը հանէ զՍասունցին... Նահապետի աջին վրայ Մուշեղի տաք տաք համբոյրները կը շարունակուին. մեր ոտքերունին շուարած, կը հարցընէ երիտասարդին — «Ո՛վ ես. ինչ կ'ուզես». — կը պատասխանէ. — «Սասունցի երիտասարդ եմ՝ այս ձեռքը

համբուրելու համար եկած եմ»: — Նահապետ իր ձեռքով կը հրամցնէ բաժակ մը սուրճ: Մուշեղ զայն առնելուն շուարած կ'ըսէ—«Ի՞նչ կ'ընես Հայր Սուրբ. ես քու ծառայութեան արժանի չեմ»:

Մեզի համար իր գրական յիշատակներու ամէն գործիները գուրգուրալի էին՝ մանաւանդ իր կաղամարը, որ իրեն չափ հին էր և նահապետական: Մի օր զայն կ'ուզէ ազգային այցելուի մը տալ. ի հարկէ այդ գանձը առանց դժկամակութեան չէինք կրնար մեր վանքէն հեռացընել: Նոյն վայրկենին մերձաւոր քահանաները չեն թողուր որ այս ընծան կատարուի: Հ. Ալիշան, մի քիչ ներելի, մանաւանդ թէ բարեպաշտիկ այլայլութեամբ կ'ըսէ. «Ի՞նչ, կաղամարիս ալ տէրը չե՞մ...»:

Սակայն այսու հանդերձ թոյլ չի տուիր որ նա նոյն վայրկենին անոր տէրը ըլլայ: Զարմանալի էր մեր բանաստեղծը. նա որ երբեմն սուրբ և գողտրիկ պարծանօք ըսած էր. «Է՜հ... այս կաղամարին մէջէն ելած են Սիսուաններ, Այրարատներ», նոյն ատեն մոռնալով իր այն խիստ նշանաւոր և անմոռանալի խօսքը, կ'ուզէր անկից զմեզ զրկել...

Հ. Ալիշան, մեր քահանաներուն միոյն ըսած է որ «Սիմէոն Ծերունիին պէս պիտի ապրիմ ու պիտի սպասեմ...»: Կը հասկնաք ընթերցողք. բայց Նահապետին հայ Մեսիան չեկաւ: Երգեց, աշխատեցաւ և այն մեսիային տենչով հալեցաւ, մաշեցաւ, սպասեց և ծերացաւ. ոգէառ ոգին ալ սպասեց, բայց չխաբուեցաւ երկրիս վրայի կեղծապատիր խաբեբաներէն... Եւ հնչեց յաւիտենականութեան հրաւէրի զանգակը... Ծերունին պատրաստեցաւ յաւիտենականութեան:

---

# ԱՆԱԿՆԿԱԼ ԵՐԿՆԱԶՈՒ

Առանց արտասուաց հեղեղներու չէինք կրնար գիտել փարոսի մը վառ ի վառ հրացայտ ճրագին անակընկալ շանթահար շիջումն. առանց սրտախոց յուզումներու չէինք կարող համբուրել այն սիրտը, որ 82 տարի անդադար տրոփեր էր՝ սէր երկնային, սէր հայրենի, և սէր եղբայրական. առանց սարսուռի՝ չէինք կարող դիտել այն թալկացեալ լայն ճակատը, ուսկից ցայտեր ու բղխեր էր Հայ Հայրենեաց աւերակաց կեանք; լոյս, յոյս. կարելի չէր հանդուրժել տեսնելու այն ոսկեթաղանթ շրթունքները, որոնք քարացեր էին, որոնք կէս դարէն աւելի սգաւոր ազգիս ողբերգու, սրտերգու և հոգերգու սրինգն եղած էին. կարելի չէր առանց օրհասական քրտամնելի գողդղանքի՝ զգալ այն ձեռքը, ո՛ր մեր աւերակաց վրայ ընկած կիթառի լարերն թրթռացընելով, մեր սրտի սուրբ ատրուշաններու կրակը, բոցը արծարծեր էր... Մեզ համար եղեռն մ'էր Նահապետին վերջալոյսին վրայ մտածելն. կեանք մը որ լոյս և հոգի եղած էր մեզի պէս խաւար ու աւեր ազգին, պէտք էր որ անմահ մնար, սակայն եթէ կայ սխալ մը տիեզերական ներդաշնակութեան մէջ, Նահապետի պէս անձերու անմահ չըլլալն է... Բայց անբիծ հաւատքը տիեզերաց օրէնքներու ճշմարտութիւնը կ'երգէ. և մենք մեր մնաց անդունդէն՝ խոնարհելով այդ երկնացայտ օրինաց Օ-

րէնոտըրի գարշապարին, պատկառելով կը մօտենանք այն մահճին, ուր հոյակապ միտք մը փլչելու վրայ է... Ս. Ղազարու լռակեաց որահները անտոփոր և տարօրինակ վրդովանքի և յուզման մէջ են. գիշերուան մեռելութիւնը կ'ողբայ, հայ ուխտականներու սրբազան աճիւններուն մեծ ոգիին՝ մխրոյ կոյր դառնալու պատրաստութիւնը։ Ահա Նահապետն՝ շունչ կ'ուզէ քաշել և չանսեր. աչերն դուրս կ'ելնան, դէմքը վարդ ի վարդ կը կարմրի երբեւ վարդ, ոսկորը կը գոսայ, ամբողջ մարմինը կը պատի յաւիտենականութեան մարգարիտ ցօղով. ի տես տեսարանիս, սրտերնիս արիւն կուլայ, մէկ մէկու կը նայինք, դէմք դէմքի վրայ կը՛ կարդանք վրդով ու գորով... Սիրտս խշխշաց, խոյս տուի դէպ ի սենեակս, գրեցի գուժեցի հետագայ բօթը...

Խորտակուած սրտով կը գուժենք Մխիթարեանութեանս և Ազգիս պաշտելի Հօր Ալիշան Վարդապետի չանթահար բօթը։ Տարւոյս սկիզբները վտանգաւոր շնչարգելութիւն մը կը սպառնար Նահապետին թանկագին կենաց. սակայն Երկինքը գթաց մեզի՝ մի քիչ կասեցընելով ալէզարդ Ծերունոյն յաղթական արեւմուտքը։ Ապրեցաւ Նահապետը և տեսաւ իր անզուգական արդեանց և իւրայնոց անխոնջ վաստակոց պտուղը, որ հիւսուած էր իր հոգեշունչ երգերով սնած ու ապրած երախտագէտ ազգայնոց ձեռքով։ Նոյն մխիթարական օրէն վերջը, իր պատկառելի հասակը՝ իրեն երազել կու տար Երկինքը՝ որուն կը տենչար, կ'աճապարէր մի օր առաջ հոն թռչ-

չելու, ուր թաւ թողլով համայն Մխիթարեանքս ան-մխիթար սգոյ մէջ.

Ընծայման տօնին [1901. 21/11 Ն. Տ.] ոչինչ չունէր, և սովորականէն աւելի ընկերութեանս մէջ իր քաղցր ու պատկառելի լռութեամբ կը խօսէր ու կը հարցընէր. ի միասին զուարթութեամբ տօնին առթիւ մի փոքրիկ հանդէս կատարելէն յետոյ, նա իր սովորականին համեմատ քաշուեցաւ իր սենեակը։ Ամբողջ միաբանութեանս համար ննջելու զանգակը հազիւ թէ զարկաւ, վանատան մէջ արտաքոյ կարգի յուզում մը տիրեց, երիտասարդք ու հասակաւորք շուարած սրահներու մէջ կը վազվզեն, անտեղեակներուն հաղորդելով ալեզարդ Նահապետին ծանր վիճակը։ — Գուրգուրալի Ծերունին անկողին մտնելուն պէս՝ խղդուելու աստիճան շնչարգելութիւն մը կ՚ունենայ. Ուխտին վեհը և մեծ ու պզտիկ կը խուժենք սենեակը, օրհասական էր իր վիճակը. մինչեւ որ բժիշկը կը հասնի, սովորական դեղերը կը մատակարարենք. Նորա անկաշկանդ լեզուն կաշկանդուած էր, չէր մարած իր յիշողութիւնը, մեր հարցմանց կը պատասխանէր համբուրելի գլխուն շարժումներով։ Հասաւ բժիշկը որոշեց անորոշ վտանգը, ու պատուիրեց հանդերձեալ կենաց ամէն պատրաստութիւնները տեսնել. բժշկի այդ պատուէրը քամմելի անակնկալ հարուած մ՚էր. Ըմբռնած էինք թէ մահուան ոգւոյն դիմադրել չկայ, անդուլ ճշմարտութիւն մըն էր.

Քիչ առնէն ամենուս դէմքին վրայ մխիթարութեան նշոյլներ կ՚երեւին, Ծերունին դեղեր առնելէն յետոյ, մի

քիչ կը սկսի հանգչիլ, և կէս գիշերին գրեթէ բոլորովին իր սովորական առողջ վիճակը կը ստանայ. մերթ ընդ մերթ հեղձամղձուկ հազ կ'ունենայ, բայց շուտով կը հանդարտի։ Արշալոյսի մօտ՝ ժամը չորսին, իր գրպանի զանգակահար ժամացոյցը ձեռքը առնելով ականջին կը դնէ, կը նայի ժամացոյցը. մինչև ժամը վեց անկողին կը մնայ, յետոյ իր ձեռքով և ընթերակայ երիտասարդ-վարդապետներու օգնութեամբ կապան կը հագուի, ան-կողնէն վար կ'իջնէ և աթոռին մօտենալով, բազկա-տարած եռանդագին կը համբուրէ խաչելութիւնը, կը խաչակնքէ և միևնոյն ատեն վրան սաստիկ դողդողանք մը գալով և բերնէն արիւնախառն հեղուկ մը դուրս տալով, հանդարտութեամբ ու անշշուկ կը մարի իր հան-դարտ կենաց բոցավառ հոգին։

Կարևոր և պատշաճ տեղեր, ազգային և օտարազգի լրագրաց և պարբերականաց հեռագրով ու մահազդի թըղ-թերով՝ փութացինք գուժել մեր մեծ կորուստի՝ տխուր լուրը։ Հեռաւորք հեռագրաւ և մերձաւորք ներկայու-թեամբ՝ մասնակցեցան մեր սուգին։ Ցեղական ամէն լրա-գիրները յուղեալ բառերով տարածեցին մեծ բանա-ստեղծին բօթը. մահուան երկրորդ օրը [23/11 Ն. Տ.] կէսօրին ժամը երկքին իբրև յուղարկաւորք ներկայ էին քաղքիս ազգային ընտանիք, Ռափայէլեան վարժարանի բոլոր աշակերտները, փատուայէն ուսանողներ, օտար ազգի բարեկամներէն՝ հայագէտ Դէզա, վենետկոյ գի-տութեան կաճառին բարձրապատիւ Քարտուղար Պէրշէ, քաղաքական հիւանդանոցի բժշկապետներէն մեր վանա-

տան ծերունի բժիշկն Տոքտոր Տա Վէննցիա [որ տաս-նեակ տարի առաջ իր վերին ատոմճանի խնամքով մա-հուընէ ազատեց մեր հանգուցեալ լուսահոգի Ծերունին] վանատանս փաստաբան Ճիւղէփփէ Չէրուլթթի, քաղ-քիս Բենեդիկտեան վանապետը, երկրագործութեան վար-ժարանի աշակերտները, օտար ազգի յօդուածագիրներ, իր բազմաթիւ գրաշարները, և այլն։ Դագաղը զարդա-րուած էր ոսկեհիւս շուռջառով*, վրան դրուած էին տէ-րութիւններէ և կաճառներէ ընդունած պատուանշանները, ամենայարգի սաղաւարտ մը, վարդապետական գաւա-զան մը, սկիհ մը, վանատան աշակերտաց ձեռքով կազ-մուած երկու գեղեցիկ իրական ծաղիկներով պսակներ և Ռափայէլեան վարժարանի արուեստական պսակ մը՝ հետեւեալ ձօնով։ «Սիրեցեալ Նահապետին Ազգիս Հայոց Հայ մանկտին Մուրատ–Ռափայէլեան վարժարանի»։ Յուղարկաւորութեան եկեղեցական արարողութիւնը սո-վորական պարզութենէ դուրս՝ պատշաճութեան համե-մատ վսեմ էր. ողբական ու լալկան կոչնակը կը հնչէր, և կը հնչէր մեր յիշողութեան մէջ հանգուցելոյն տխրունի երկու տողերն.

Հնչեաց զանգակ քո, նուաղ զանգակ գիշերի,
Ի յաւիտենականս անցեր եւ դու յերկրի...

* Ի միաբանութեանս սովորութիւն եղած է քահանայից դագաղը սեւ քօղով մը ծածկելու, սակայն Ուխտիս Գեր. Աբբահօր հրամանաւ, ըստ արարողութեան Հայ. Եկեղեցւոյ, Հ. Ալիշանի դագաղին սուգի կերպարանք չտրուեցաւ։

Ողբերգու մեղեդիներով Նահապետին դագաղը կ'անցնի վանքին սրահներէն. ու կը մտնէ տաճարը։ Կը շարունակուին երգեր ու սաղմոսներ։ Հուսկ ուրեմն, հայագէտն Դէզա, իր համառօտ դամբանականով շիջեալ Հանճարին յաղթական բանին որոտալով, կը յիշեցնէ նորա անցեալին անմահութիւնը. կը մխիթարուինք կը քաջալերուինք։

Կը հնչէր Նահապետին անարշալոյս գիշերուան սգաւոր պղինձը. պաշտելի մարմինը տաճարէն գերեզման կը հանեն. հոն, ընծայման տօնին յիշատակաւ՝ Երկինքին ընծայ կ'ընէ Միաբանութիւնս անզուգական Ծերունին...

Մենաւէր հոգին մենաւոր մնաց, յուղարկաւորները գացին հեռացան. տխուր էր օդը, տխուր և օրը. վերահաս գիշեր՝ հաստ ցուրտ ու մանչող հողմով. յիշեց լուսնակը Նահապետին այն պատուէրը զոր տուած էր իրեն՝ Հայոց գերեզմաններէն. Պատռեց ամպերը, վանեց խաւարը, բայց քամին սեւ ամպերը կը մղէր, կու գային անոնք զինքը թաղելու. որոտաց ձայն մը մեր գերեզմանէն. կա՛ց, մէկ վայրկեան մ'ալ կա՛ց իմ լուսնակ, հոս քար մը կայ ծանօթ Նահապետիս, եկուր հոս կաթէ լոյսիդ արտասուք, Նահապետին է այս Գերեզման...

# ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆՔ

Անփոխարինելի ազնուութեամբ՝ Ազգը մեր խոր վշտին վշտակից եղաւ հեռագիրներով, նամակներով: Ընդունեցանք 76 հեռագիրներ. 100էն աւելի նամակ, 70 քարտեր: Եւրոպայի հայ գաղթականութեան հոգեւոր հովուապետ Գէորգ Եպիսկ. Խաթիսեան, կարի յոյժ զգածեալ, իր իշխանութեան ներքեւ եղած ազգային գաղթականներու տաճարաց մէջ ի յիշատակ հանգուցեալ Նահապետին հոգեհանգիստներ կատարել տուաւ: Ուսանողք Վէհ. Հայրիկով ի միասին՝ ցոյց տուին անսահման յուզում և զգացում. իրենց անկեղծ ցաւակցութեանց հաւաստիքներն էին առ մեզ ուղղեալ բազմաթիւ մխիթարական հեռագիրներն և հանգուցեալի հոգւոյն զանազան տեղեր կատարած հոգեհանգստեան պաշտօնները: «Մշակ» երկու երեք ամիս շարունակաբար յաւերժացուց մեծ բանաստեղծ և ազգասէր Նահապետի յիշատակը: Առ հանգուցեալն «Մշակի» ցոյց տուած երախտաճանաչութիւնը անհամեմատ ազնուութեան բարձրացաւ: Արծրունիի թերթէն զատ, միահամուռ մեր միւս ամբողջ պարբերական մամուլը մի կարճ յօդուածով անկեղծօրէն դրուատեց Հանգուցեալին յիշատակը: Անմոռանալի է նոյնպէս ի պատիւ Հ. Ալիշանի գրական գործունէութեան զանազան տեղեր սարքուած գրական հանդէսները:

Յատկապէս կը յիշենք Գերշ. Գեր. Պօղոս. Եմմանուէլեան կաթողիկոսի չուտափոյթ ցաւակցական հեռագիրը՝ որով կը յայտնէր իր և ամբողջ եպիսկոպոսաց վշտակցութիւնը:

Մեր Վիեննայի եղբայրներն ալ փութացին լացին մեզ հետ Գեր. Աբրահամ Աբբահօր վշտակցական հեռագրով:

Իբրև պատմական յիշատակ կը հրատարակենք մի քանի հեռագիրներ, յօդուածներ. իսկ նամակները և ճառերը ուրիշ առթիւ:

## ՀԵՌԱԳԻՐՔ

«Մշակի» խմբագրութիւնը խորին ցաւ զգալ, տեղեկանալով ձեր հեռագրից, մեր ամենից սիրելի Նահապետի, Ղեւոնդ Ալիշանի անսպասելի մահը: Յայտնում ենք միաբանութեանդ մեր խորին ցաւակցութիւնը»: Խմբ. «Մշակ»ի

«Ներսիսեան դպրոցի ուսուցչական խումբը, յուզված հայր Ղեւոնդ Ալիշանի մահվամբ՝ խորին ցաւակցութիւն է յայտնում ազատ միաբանութեանդ. մաղթում է, որ երջանիկ ծերունու անմահ ոգին, միշտ սաւառնի մեծագործ միաբանութեան վրայ»: Թիֆլիսի Ներսիսեան դպրոցի ուսուցչական խումբ:

«Բագուի Հայոց Մարդասիրական ընկերութեան վարչութիւնը, նշանաւոր հայ

գիտնական, հայր Ալիշանի մահվան առիթով, յայտնում է միաբանութեանդ իր խորին ցաւակցութիւնը»։

«Բաթումի հայ երիտասարդութիւնը ողբում է պաշտելի Նահապետի մահը եւ յայտնում է միաբանութեանդ իր խորին ցաւակցութիւնը»։

«Խորին վիշտ պատճառեց բոլորիս հայր Ղեւոնդ Ալիշանի մահը. կորուստը անդառնալի է. հանգիստ գրականութեան մեծ վաստակաւորին»։ Սեւանի միաբ. կողմէն Սարգիս Եպիսկոպոս։

«Էկատերինոդարի հայ համայնքը խորին ցաւով ողբում է Աւարայրի բուլբուլի անմոռանալի մահը եւ խոնարհաբար խնդրում է ձերդ բարձր սրբազնութեան՝ մեր վշտերի թարգման հանդիսանալ պատկառելի միաբանութեանդ առաջ»։ Երեցփոխ. Սարգիս Խորագիւղեան հոգե. կողմէ։

«Ընդունեցէք մեր ցաւակցութիւնը պաշտելի հայր Ալիշանի ողբալի մահվան պատճառով»։ Դորաստրագարի մի քանի հայեր։

«Ալիշանի մահը մեզ խորը վշտի մէջ գցեց. այսօր Օրթագիւղի հայ հասարակութիւնը հոգեհանգիստ կատարեց»։ Արմաւենկի հայ հասարակութիւն։

«Եալտայի գաղութը միաբանութեանդ յայտնում է իր խորին ցաւակցութիւնը հ. Ալիշանի մահվան առիթով»։

«Հեռագիրը հաղորդեց մեզ մի բօթաբեր գոյժ։ Չը կայ այլ եւս Ալիշան, բայց նրա յիշատակն անմահ կը մնայ իր սիրած հայրենիքի զաւակների սրտերում։ Ընկճուած անակընկալ հարուածի տակ, Մոսկվայի հայ ուսանողութիւնը ողբում է ազգիս հռչակաւոր ծերունու մահը, միացնելով միաբանութեանդ դառն կսկծին իր խորին զգացմունքները»։ Մոսկվայի հայ ուսանողութիւն։

«Գողթանը ողբում է հայկական հնութիւնների անմահ երգչի, հայրենասէր Ալիշանի մահը»։ Ագուլիսի հայ երիտասարդներ։

«Միացնում ենք մեր արցունքները միաբանութեանդ խոր վշտի հետ, Ալիշանի մահուան առիթով։ Այսօր կատարվեց հոգեհանգիստ եւ ցերեկոյթ նրա յիշատակին։ Ի դիմաց հայ ժողովրդի՝ առաջնորդ Եղիշէ վարդապետ»։ Թաւրիզի հայ հասարակութիւն։

«Մուրճի խմբագրութիւնը ողբալով հայրենասէր բանաստեղծ գիտնական Ալիշանի մահն՝ յայտնում է ցաւակցութիւն միաբանութեանդ»։ Կրասիլնիկեան — Սարգիսեան — Լեօ։

«Արժանայարգ անձին, քահանային եւ միաբանին կսկծալի մահուան առթիւ, ընդունեցէք մեր անկեղծ ցաւակցութիւնը»։ Կարս — Հայ Համայնականք։

«Ազգագրական Հանդիսի խմբագրութիւնը ողբում է անզուգական Ալիշանի մահը»։ Թիֆլիզ. — Լալայեանց։

«Եւրոպայի Հայ Ուսանողական Միութիւնը վշտաբեկ խոնարհում է Ղեւոն Ալիշանի դագաղի առաջ, ցանկանք տեսնել թանկագին աճիւնը մի օր յաւէտ երկրում, որ նա այնքան սիրեց»։ Լիազոր Կոմիտէ։

«Մինխէնի Հայ Ուսանողութիւնը խորապէս յուզուած Նահապետի մահուան գուժէն՝ կը միանայ Միաբանութեանդ սուգին, որ ամբողջ ազգին սուգն է»։

«Խորապէս յուզուած՝ մեր անկեղծ վշտակցութեան արտայայտութիւնը կ'ուղղենք Ձեզ՝ Հայր Ալիշանի մահուան առթիւ։ Կ'ողբանք մահը Հայաստանի մեծ-

անուն ազնիւ զաւակին, որ խանդավառ ջատագովն էր հայրենիքի վերածնութեան եւ երգիչը անոր անցած փառքերու»։ Դրօշակի խմբգր.

«Վշտակցում ենք ուխտիդ. արտասւում ենք պաշտելի Նահապետի մահը»։ Բաթում Տարազը արհեստանոց

«Ազգիս անմահ երգչին մահուան առթիւ կը յայտնենք մեր խորին վշտակցութիւնը։ Թիֆլիս Քիւրքչեան Եղբարք

«Մեր մեծ Ալիշանի անմխիթարելի սուգին կը մասնակցիմ, վշտակից Անվէրս Խերեան

«Լայբցիգի Հայ ուսանողական Միութիւնը ողբում է Հայութեան պարծանք Հ. Ալիշանի կորուստը» Նախագահ Յովհաննեանց

«Գերամեծար Հօր Ալիշանի մահուան առթիւ, կը յայտնեն խորին վշտակցութիւն» Թիֆլիս Առելեան, Աղեկսանդր եւ Յովհաննէս Աղաեան, Արտաշէսեան, Տէր-Աւետ Արծրունի, Խատիսեան, Շիրվանզադէ, Ճղնաւորեան, Հարոյ, Յոհաննէսեան, Ոսկերեան Քալանթարեան, Խատիսեան, Լիսիցեան, Քարակեօզեան, Նազարեան, Սրբենտիարեան, Ոսկեղոզեան, Տիգրանեան, Թումանեան, Վանձեան, եւ այլն եւ այլն։

«Ցաւալիցք՝ մեծ մարդուն, անհամեմատ հայրենասիրին, պաշտելի բանաստեղծին մահուան համար, որ իրեն ազնուական զգացումներով, աստուածային ներշնչումներով, հոյակապ գործերով ապաքինութիւնը զօրացուց, արբնագան հուրը արծարծեց, զօրութիւն անխոնջ ըրաւ։ Մենք Պարսից Հայքս մեր ցաւակցութիւնը կը յայտնենք Վենետկոյ հայ միաբանութեան, և իրեն հետ միասին կը խնդրենք Ամենակալէն՝ փիւնիկի մոխիրներէն յարուցանելու նոր փիւնիկ մը։ Տէր Աստուած, որ ժայռէն մարդիկ առաջ կը բերէ, տա՛յ որ նոր Ալիշան մը հնոյն յաջորդէ, և առաջինը մնայ ի յաւիտենականութիւն»։ Հայք Պարսից

«Կողբանք պաշտելի Նահապետին և հայ գրականութեան փառք Ալիշանի կորուստը Բագու. Տէր Յովհաննէսեան, Օհանջանեան, Մարինեան, Առաքելեան, Սերոբեան. Մելիք Շահնազարեան. Տէր Գրիգորեան, Աբրահամեան, Տէր Մկրտչեան եւ այլն եւ այլն։

«Ողբումենք Պոլսցոյն Աւարայրի մահը Շուշա Երիտասարդներ

«Ցաւումենք Միաբանութեանդ Հ. Ալիշանի մահուան առթիւ։ Հայոց Նահապետը իր գործերով կենդանի կը մնայ մեր մէջ. խնդրումենք պսակ դնել անթառամ ծաղիկներից։ Թիֆլիսի խումբ երիտասարդների կողմից, անմոռանալի Ալիշանին ուղարկում է երեսուն ռուբլի»։ Բժիշկ Թադէոսեան

«Հաճեցէք խորին ցաւոցս արտայայտութիւնը ընդունել՝ անդարձան կորստեան առթիւ՝ զոր բոլոր ազգն կրեց յանձին հանգուցելոյ յարգոյ Հ. Ղեւոնդ Ալիշանի. մեծ հայ բանաստեղծ, պարծանք ազգին և Ձեր յարգելի Միաբանութեան։ Խնդրեմ դնել տայիք ամենէն գեղեցիկ ծաղկանց պսակ մը իրեն նուիրական գերեզմանին վրայ և կատարէիք պաշտօն հանգստեան։ Այս նպատակաւ կը ղրկեմ ֆր. 300»։ Ռոստով. Յովհաննէս Պօլեան

«Մեր սիրելի հայր Ղեւոնդ Ալիշան. քու ազգդ, թշուառ զաւակներդ՝ որուն համար տուիր կեանքդ, հոգիդ, հանճարդ, այլ եւս պիտի լսեն քու քաղցր ձայնդ, խրախուսիչ խօսքերդ։ Բայց քու յիշատակդ, քու գործերդ, քու անմահ անունդ յաւիտենական պիտի մնան մեր և և հայ սերնդոց սրտերուն մէջ ։ Քու սուրբ շիրմիդ առջև խոնարհած կ՚աղօթենք, ծեր Նահապետին՝ տո՛ւր կակուղ հողիկ որ գրեց պինդ սիրեց հայոց աշխարհիկ»։ Ռոստով Յովհաննէս Պօլեան։

« Հաճակեալ ի սուղ անմխիթար, ողբամք զհամազգեան կորուստ մեծի Նահապետին, որ ոգեաց զՊլպուլն Աւարայրի և ետ շունչ կենդանի աւերակաց Հայաստանի »: Պալախանի 90 – ինեբ- ունն ստորագրութիւններ

Կը մասնակցիմ ազգային սուգին Հ. Ալիշանի անգութ մահուան համար. մեծ մարդ, նշանաւոր բանաստեղծ, անհամեմատ հայրենասէր, միով բանիւ, իրեն ժամանակին ամենէն մեծ հայը: Տայ երկինք որ Մխիթարանութիւնը մխիթարուի՝ գտնէ յաջորդներ, որոնք արժանի ըլլան այն դիրքին՝ զոր դատարկ ձգեց Ալիշան, իրեն գեղեցիկ հոգին աւանդելով Աստուծոյ ձեռքը: Ճիններա Փիլիպոսեան

Անհուն կսկիծով կը ցաւիմ մեր գերազանց մատենագիր Ալիշանին մահուան վրայ, նա մեր պարծանքն էր. կը մաղթեմ Ուխտին որ շուտով կարենայ այս զգալի պարապը լեցնել: Աղեքսանդր Մանթաշով

## ՅՕԴՈՒԱԾՆԵՐ

Դրօշակ (1981) N. 9). — Հայաստանի բարի ոգին, Ալիշանը եւս մեռաւ, այնքան մահերէ ետքը, որոնք, 19րդ դարուն ազգային յոյսերուն ծիլը ու ծաղիկը տեսան և միանգամայն այդ յոյսերու ստեղծող հանճարները եղած էին:

Ազգովին անսահման ցաւի սարսուռը զգացինք լսելով հայրենեաց նահապետին մահուան գուժը:

Ալիշան ամբողջ ազգինն է, Հայաստանի անցեալին ու ապագային որուն նուիրած էր իր բոլոր էութիւնով: Ոչ մէկը կրցած է անոր պէս հզօր և ոլիմպեան կերպով մարմնացնել մեր ազգին տրտմող ու ազատասէր ոգին: Ոչ ոք հոգեւոր մթնոլորտի մը մէջ այնքան աշխարհական եղաւ և աւելի բանաստեղծ, և ոչ ոք պատերազմի շեփորը այնքան լայնօրէն հնչեցուց, որքան Նահապետն հայոց:

Ալիշանի մէջ նուիրական հուրը մինչև գերեզմանին դուռը անշէջ մնաց Վէսուվի մը խորանի կրակին պէս:

Կանոնի պէս իր վանական խուցէն շատ քիչ հեռացաւ որբաւաբայլ երևակայութիւնով և ազնիւ զգացումներով տոգորուած, վանքին մէջ — « որբազան քարայրը » Ս. Պենետիկոսի — ճգնաւորական կեանք մը վարեց, բայց շարժուն, արգասաւոր և պաշտելի:

Ալիշան կրկին Մխիթարանութիւններուն մէջ անզուգական կը մնայ իր ազգային հոգին վրայ գիտնական հետազօտութիւններով ու աքնութիւնով իր հմտալից և համբերատար աշխատանքով երկասիրած հոյակապ հատորներով:

Իր խանդավառ և հոյակապ գործերը անմահ կոթողները պիտի ըլլան իր կեանքին և իր սիրած հայրենիքին, այնպէս որ Նահապետը, վերջին բողէին — երբ հայրենիքի կարօտովը կը մեռնէր — կրնար ըսել Թերացի զօրավարին պէս. « երեք արժանաւոր զաւակներ կը ձգեմ ազգիս Այրարատ, Սիսուան և Սիսական »:

Աշխարհային աղմուկներէ և փառքերէ առանձնացած, որուն խոշոր ու պարկեշտ աչքերը կ'ուզէին ըսել.

,, Ո՜ տայր ինձ զծուխ ծխանի և
զառաւօտն նաւասարդի ,,

« Հրեշտակային » վարդապետը համեստ և սաքրինի կեանքով մը կնքեց իր թանկագին օրերը վանքի խաղաղ և խընկաւէտ լռութիւններին մէջ, ազօթելով և հայրենի կորուած փառքը դիւցազներգելով:

Այժմ կը հանգչի ամէնուս սիրած Նահապետին մարմինը Վենետիկի Ս. Ղազարի կղզիին մէջ, ուր ծովը զինովութիւն չունի, ուր կոհակները կը սահին երգերու շունչով, ուր Պայրըն իր փրփրուն երազներուն ստուերները ման ածեց և ուր աստղերը կը պայծառափայ-

լին անփիչար։ Այդ կղզեակին մէջէն, որուն Միրարանութեան համար Չայլտ Հարօլտի հեղինակը՝ կ'ըսէր․ ‘‘Այս մարդիկը ճնշուած և ազնուական ազգի մը քաղաքաններն են’’․ Ալիշան երկար դարձուցած է Հայաստանին, Աւագ Մասիսին, ուրկէ արշալոյսը կը ծագի և կարծես կը լսենք գեռ իր աղուոր արտասուչ ձայնին արձագանքը․

‘‘Շարժիր հա՛ շարժիր դուն այլ Նահապետ,
Մասեաց սարերուն չնչին ա՛ռ մէկ հետ։
Ահա շարժեցաւ ծեր Նահապետն այլ․
Ո՛վ դէպի Մասիս իւր հետ կառնու քայլ’’։

Անոր գերեզմանը պէտք էր ըլլար Հայոց հայրապետներու շիրիմներուն քովիկը, Հայաստանի մէջ, ուր ծիրանին կը ծաղկի և աղբրանց արիւնը կը բուսնի։

Ս․ Ղազարի կղզին — որուն համար չվարանէր ըսել թուցէ Պայրըն The isl-nd of the blest — ուխտատեղի մը պիտի ըլլայ, ուր հոն կը հանգչի, գեղեցիկ լուսնակի — «լուսնկայն գերեզմանաց հայոց» — շողքերուն տակ Մեծ Ալիշանը...։

Մշակ (1901) N. 252․ — Հայր Ալիշան վախճանվեց...

Պակասեց մի սիրելի անձ էլ։ Մեր համազգային բոլոր սիրելի անունները այսօր գերեզմանի մէջ են։ Պակասում էր հայր Ալիշանը, — ահա նա էլ գնաց։

Մահը, կտրելով մի ութսունամեայ ծերունու կեանքի թելը, անգթութիւն արաւ, անգթութիւն մի ամբողջ ազգի վերաբերմամբ։ Որովհետեւ հայր Ալիշանը ամբողջ ազգին է պատկանում, որովհետեւ նրան սիրելու համար չը պէտք է լինել լուսաւորչական, կաթոլիկ կամ բողոքական, այլ միայն հայ։ Ով հայ չէ—թող լինի այդպիսին թէկուզ ամենաջերմեռանդ կաթոլիկ—նա՛ չէ՛ կարող հասկանալ հայր Ալիշանին, չէ կարող ըմբռնել, թէ կորուստ է Ալիշանին մահը մեզ համար։

Հայ ազգի միակ հուշակաւոր ծերունին այսօր չը կայ։ Եւ հասկանալի՞ չէ, թէ ինչու մենք դժուարութեամբ ենք հաշտվում այդ ցաւալի, կսկծեցնող փաստի հետ։

Սովորութիւն է նշանաւոր անձերի մահացուցակի հետ դնել եւ նրանց կենսագրութիւնը։ Բայց մեր մեծ ծերունին ինչ կենսագրութիւն ունի։ Երկու բառով կարելի է պատմել այդ կեանքը։

Ծնվել է Կ․ Պոլսում 1820 թւականի յուլիսի 18ին, ուսում է ստացել Ս․ Ղազարի վանքում, քահանայացել է մօտ 20 տարեկան հասակում, 1840ի յունիսի 7ին։ Եղել է Մուրադեան վարժարանի տեսուչ․ գուցէ կատարել է եւ մի քանի այլ վանական պաշտօններ, հրաժարվել է արքահայր ընտրվելու առաջարկութիւնից, մնացել է մինչեւ վերջը պարզ վարդապետ։

Այսքանը կամ սրանից քիչ աւել կարելի է պատմել հայր Ալիշանի կեանքից։ Դա հետաքրքրական էլ չէ։

Գիտական աշխարհում Հայր Ալիշանը յայտնի էր իբրեւ աշխարհագրագէտ, բուսագէտ, հնագէտ։ Բայց դրանք ճիւղեր են, որոնք գիտական հռչակ են տալիս մեկին եւ ոչ ժողովրդական։ Հայր Ալիշանը ժողովրդական հռչակ էլ ունի իբրեւ բանաստեղծ։ Նրա «Նուագները», «Յուշիկները» ստեղծել են նրա համար մի անուն, որ մեր յայտնի բանաստեղծների թւում իր պատուաւոր տեղն ունի։ Բանաստեղծութիւններով սկսեց նա իր գրական գործունէութիւնը, բանաստեղծ էլ մեռաւ։ Կարդում էք նրա աշխարհագրական եւ հնագիտական աշխատութիւնները եւ համարեա ամեն քայլում հանդիպում էք ոչ թէ մի սառն ու անտարբեր գիտնականի, այլ նոյն Նահապետի, որ երգել է «Պլպուլն Աւարայրի»։ Հայրենիքի յիշատակները միշտ եւ ամեն տեղ մի սրբազան ոգեւորութիւն են ներշնչում նրան, նոյն իսկ երբ խօսքը վերաբերում է մի բոյսի, մի քարի, մի կենդանու կամ արձանագրութեան։

Ալիշան հենց սրանով է Ալիշան։ Իւրաքանչիւր գործի մէջ, որ դուրս էր գալիս նրա գրչի տակից, մենք ամենքից առաջ որոնում էինք այդ Ալիշանին,

բանաստեղծ, հայրենասէր հայրն, «Հայոց Խօսնակին»։ Պէտք է կարդալ Նրա «Յուշիկների» նախաբանը. այնտեղ ենք մենք տեսնում թէ ինչ է Հայր Ալիշանը, ինչ՚ն է որ նա այնքան սիրելի է իւրաքանչիւր հայի համար։

Կրկնում ենք—հայի։

Հայ էր նա, լաւագոյն հայերից մեկը։ Ի՜նչ սիրտ, ի՜նչ զգացմունք այդ կրծքի տակ երիտասարդութեան օրերից մինչեւ գերեզմանի ափը։ Հնագէտներ, բանաստեղծներ շատ կարող են ծնվել, բայց Ալիշանները բացառիկ երեւոյթներ են։

Այս է ահա, որ ցոյց է տալիս կորուստի մեծութիւնը։

Ձայն Հայրենեաց (1901) N. 112). — Մխիթարեան միաբանութեան պարծանքը, Հայ ազգին նահապետ–բանաստեղծը. գրչի ութսուն ու մէկ տարեկան անխոնջ մշակը, ալեզարդ ծերունի Ալիշանը ոչ եւս է։

Պաշտելի դէմք մ՚ալ կը պակսի մեր գրական աղքատ կեանքէն. ոսկի քնար մ՚ալ կը փշրի. Հայաստանի սիրով խանդավառ սիրտ մ՚ալ կը դադրի բաբախելէ։

Հիմա Վենետիկ թաղեցին զինքը Ադրիականի ափին, հեռու իր սիրած Արարատէն, հեռու իր երգած Նշմի Լուսնակէն։ Կէս դարէն աւելի պատմութեան եւ աշխարհագրութեան համար աշխատող գլուխ մը Հայ հողի վրայ հանգչելու բաղդը չունեցաւ…։

Սակայն հոն մինակ չէ Նահապետը, իր քով կը ննջէ Բագրատունին, հոն կը ննջեն Մխիթարեան մշակները, հեռաւոր հայրենիքի մը նժդեհ զաւակները։

Մի օր այդ հայրենիքը՝ աւելի երջանիկ օրերու մէջ՝ պիտի յիշէ իր յոգնավաստակ զաւակներու անունները…։

Նոր Կեանք (1901) N. 21) — Ալիշանի մահը ազգային սուգի մը համեմատութիւններն առաւ, ու պէտք էր որ այդպէս ըլլար։ Հայութեան կորած ու ցաւոտ սիրտն իսկ էր որ թունդ հանեց Ս. Ղազարի մենաստանէն հասնող գոյժը։

Ալիշան...։ Ի՜նչ յուզումներ, ի՜նչ պատանի արցունքներ, ի՜նչ երախտապարտ խանդավառութիւններ չյիշեցներ մեզ ամէն մեկուն այս պաշտելի անունը։

Իր ձայնը՝ հեռուներէն միշտ հասած ու մշտական կարօտին գեղեցկութեամբը կրկնապէս օրօրուած՝ մինչեւ վերջը անուշ եկաւ ամենուն ու արցունք բերաւ ամենուն աչքը։ Իր դէմքը՝ հեռուներէն, օտար ափերէ, նժդեհ ու անծանօթ հորիզոններէ սպասուած, երազուած, հոգետեսուած՝ անպատում մաքրութեան ու աղեխարշ քաղցրութեան խորունկ ու անդիմադրելի հրապոյր մը պահեց, տարիներու բարդած մշուշին մէջէն ու ազգային սուգերու սեւ վարագոյրին ետեւէն ընդնշմարուելով միշտ աւելի մաքուր, աւելի պայծառ, ա՛լ գրեթէ աննիւթական տեսիլի մը հանգոյն։

Ու Նահապետին անզուգական պատկերը անբիծ ու անստուեր մնաց մինչեւ վերջը, որովհետեւ հոյակապ Հայը, իր երկար ու արգասաւոր կեանքին մէջ, չունեցաւ ո՛չ մէկ փառասիրութիւն, չճանաչեց ո՛չ մէկ պաշտօնի ու փայլուն դիրքի, այլ՝ արծիւի պէս հպարտ ու արհամարհոտ՝ թառած մնաց այն սիրալի բարձունքին վրայ ուր Հայութեան սէրն ու հիացումը դրեր էր զինքը։ Հոնկէ երգեց, հոնկէ երկնեց անընդհատ թանկագին գործեր, մինչդեռ ուրիշներ՝ իրեն չափ ու թերեւս իրմէ աւելի ժողովուրդին սրտին մօտիկ՝ յաճախ շեղելով իրենց բուն կոչումէն ու ճշգրիտ դերէն՝ յուսախաբ ու հիասթափ կ՚ընէին զայն։

Ալիշան Ս. Ղազարի իր համեստ խուցը պահեց, վանական մնաց ու մնաց միանգամայն ժողովուրդէն հեռաւոր, այլ պաշտելի կուռքը, որ օր մը օրանց չխախտեցաւ իր պատուանդանին վրայ եւ որուն, մինչեւ վերջը հաւատարիմ մնաց ազգին սիրտը։

Շարժում (1901) N. 369) — Այլեւս գոյութիւն չունի այն մարդը, որը կէս դար շարունակ ոգեւորեց հայ ժողովրդին, վերակենդանացրեց հայկական հնութիւն-

ները իր ճկուն գրիչով, հայրենասէր սրտով ու Նուրբ մտքով։

Ալիշան, Նահապետ, Բարկէն անունները ո՞ր հարազատ հային չեն ծանօթ։

Իրաւունք (1901) N. 86. — Վենետիկի Մխիթարեան Միաբանութեան այս էն շողշողուն աստղն ալ մարեցաւ վերջապէս։ 81 գարուններ ողջունող այդ վեհ ճակատը իր աբեղայական համեստութեան մէջ շատ աւելի բարձր փայլեցաւ քան ո՛ եւ է հայ եկեղեցական։ Նախ երգեց նա իր հայրենանուէր Նուագները որչափ թրթռուն այնչափ գեղեցիկ. յուզեց աւելի քան չորս միլիոն իր հայրենակիցներուն սիրտը հայրենի ողբերով. վառեց անոնց ոգին։

ԺԹ գարու այս եզական մշակի անմոռանալի յիշատակին երախտագիտական յարգանք մը մատուցանելու համար, ջերմապէս կը յանձնարարենք բոլոր արտասահմանի հայ եկեղեցիներուն հոգեհանգստի պաշտօն կատարել հանդիսաւորապէս։

Տարազ (1901) N. 44 — Աւարայրի Պլպուլը, հայրենիքի սիրահար երգիչը, հայ գրականութեան թագ ու պարծանք Հ. Ղեւոնդ Ալիշան սլացաւ, թռաւ երկինք նոյեմբերի 9–ին։

Որքան հեշտ է ասել՝ թռաւ, սլացաւ երկինք։

Կարծէք դեռ երէկ լինէր, որ ալեզարդ Նահապետը առաջնորդում էր ինձ ս. Ղազարում թանգարանից մատենադարան, այնտեղից գիտութեան դահլիճը, տպարան եւ ապա Լորդ Բայրոնի ձիթենիների տակ իր անտառ, հզօր եւ սուրբ ձեռներով, վանքի խաղողից քամած գինիով, խմում հայրենիքի, թշուառ, ոտնակոխ եղած Հայաստանի կենացը, վանքի բուրաստանից քաղած վարդի քաղցրաւենիով համեմում այդ պանծալի թասը։ Որքան խորհրդաւորութիւն. ինչ իղձեր։ Հայրենիքի սիրահարին չըյաջողեց իր կարօտն առնել, այցելել Մայր–Հայաստանը, բայց նա հոգւով շաղկապուած էր իր կարօտակէզ սիրուհուն, նրա բեկոր բեկոր եղած մանուկները իսկապէս ամփոփած էր իր անձում, ջերմ սիրող սուրբ սրտում։ Խոստացայ մեր Նահապետին հետեւեալ այցին տանել նրան Մայր Հայաստանից, Արարատի լանջերից քաղած համասփիւռ, շուշան, անթառամ ծաղիկներ, Արագածի հովիտների զեփիւռներով օրօրուած մանուշակ ու մեխակ, Երասխի արտասուքներով ցօղուած հայրենի բեկորներից մասունքներով։ Բայց աւա՜ղ, իղձս չըկատարած, անգութ մահը խլեց այդ հսկային մեզանից։

Ընդունիր սուրբ Մարդ, հայ Մարդ իմ այդ պսակը, որ այսօր ողողուած դառն արտասուքներով, խոցոտուած սրտով, ալեկոծուած հոգով առաքում եմ անմոռաց շիրիմից։ Տ. Նազ.

Փարոս (1901) N. 35. — «Պուլպուլն Աւարայրի»ի ծերունի բանաստեղծը իր երեք քառորդ դարը լրացնելէ յետոյ կը մեռնի իր սպիտակ սենեակին մէջ պլպուլի մը նման։ Հ. Ղեւոնդ Մ. Ալիշան ոչ միայն Մխիթարեաններու այլ եւ ամբողջ հայութեան պարծանքը՝ իր մահով մեծ բաց մը կը ձգէ գիտնականներու եւ մանաւանդ ճշմարիտ Հայ–Հայրենասէրներու շարքին մէջ։

Այդ մեծ հնախօսը, այդ գերազանցապէս համբաւաւոր Հայ–աշխարհագէտը Ալիշան՝ ճշմարիտ Հայ մ՚էր որին գագաղին առջեւ ամբողջ հայութիւնը յարգանքով կը խոնարհի. կը գոցուի գերեզմանը, նախնական հողը կրկին հող կը դառնայ, սակայն Նահապետին անմահ յիշատակը եւ համբաւը դարերու շըրջաններէն իսկ անդին կը մնայ անշէջ. մինչ կ՚ապրի եւ յաւէտ պիտի ապրի Հայ ազգին փառքը Հ. Ղեւոնդ Վ. Մ. Ալիշան։

Արմենիա (1901) N, 27). — Հայութիւնը իր ժամանակակից մեծ դէմքերէն մէկը կը կորսնցնէ եւ Վենետիկի Մխի-

թարեան Մխարանութիւնը իր կենդանի փառքի ամենէն զօրաւոր հաստատագիրը։ Այն ընդհանուր ցաւի զգացումը որ վաղը պիտի համակէ ամեն Հայու սիրտը, արտասահմանի իւրաքանչիւր անկիւնէն մինչև Հայաստանի հեռաւոր գաւառներուն խորքը, պիտի թուի, ասբոյթեակ հակասութեամբ մը, շարունակութիւնն ըլլալ յոբելեանի հանդէսներուն որոնք այս ամառ տօնուեցան։

Հայրենիք (1901) N. 128). — Հ. Ղևոնդ Ալիշան ոչ ևս է, Հայկական հին մատենագրութեան վերածնութեան շրջանին վերջին շառաւիղն է որ մորմռով կ'անհետանայ, սակայն իր հոգւով, սրտով ու գործերով մինչև մեր մէջն է ու պիտի մնայ։

Հայկական մատենագրութեան Ոսկեդարէն (Ե. դար) ետք Արծաթի դար՝ (Ն. Շնորհալիի դարը) և անկէ ետք վերածնութեան կամ Մխիթարեան շըրջանը եկաւ։

Հ. Ալիշան վերջին շառաւիղն է ըսինք վասնզի անով կը վերջանայ այդ շրջանը, և արդէն մտած ենք նոր շրջանի մը մէջ, որը կրնանք կոչել «Քննադատական շրջան» և որ Մխիթարեաններէն (Վենետիկի Վիեննայի) սկսած տարածուեցաւ ամբողջ հայ գրական աշխարհին մէջ։

Սակայն Հ. Ալիշանի անմահ ժողովրդականութիւնը առով չի սահմանափակուիր։

Ղևոնդ Ալիշան «Հայաստան Աշխարհի Սոխակ» պատուանունը կրելու արժանի ասպարէզ մը ունեցաւ։ Երգեց, ահա իր ամենէն մեծ գործը, և անոր երգերը գունագեղ և այլազան, ազդեցին և մինչ կ'ազդեն մեր սրտերու վրայ, ինչպէս կ'ազդեն տխուր և սգաւոր սրտերուն վրայ սոխակին գիշերային գեղգեղները։

Աշխարհական թէ կրօնաւոր, ամէն հայ մինչ յարգանք և գորով զգացած է Հ. Ալիշանի նկատմամբ։ Հ. Ալիշան տեսակ մը.... ուխտագնացութեան առարկայ եղած էր Վենետիկ այցելողներուն համար. «Երթանք Հայր Ալիշանը տեսնենք», ահա հոն այցելողներու առաջին փափաքը։ Օտար մեծամեծ մարդիկ Ս. Ղազար այցելած ատեննին Հ. Ալիշանին յարգանք մը ընծայել պարտք մը նկատած են մինչ։